ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏԿՈՄԻ
ՏԵՍԱԿԱՆ—ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ЛЕНИНЯН УГИОВ—ТЕОРЕТИЧЕСКИЙ
ПОЛИТИЧЕСКИЙ ЖУРНАЛ ЦК КП АРМЕНИИ

№ 8
ՕԳՈՍՏՈՍ
1960 Թ.

★

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
XXXVII
ՏԱՐԻ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

## СОДЕРЖАНИЕ





# Տ՛ՆՏԵՍԱԿԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ԳՐԱՎԱԿԱՆԸ

Կենսագործելով ՍՄԿՊ XX և XXI համագումարների պատմական որոշումները, սովետական ժողովուրդը խոշոր նվաճումների հասավ։ Անցած մեկ ու կես տարում շարունակվեց մեր երկրի հաղթական երթը կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի կառուցման ուղով։ Տնտեսության և կուլտուրայի բոլոր բնագավառներում ձեռք բերած փայլուն հաջողությունները խոր իմաստ և հմայք են հաղորդում կոմունիզմի կառուցման ամենուր ծավալվող համաժողովրդական ստեղծարար պաթոսին։

Տնտեսական արագ բարգավաճման անմիջական հետևանքով աննախընթաց բարձրանում է և սովետական ժողովրդի կենսամակարդակը, մի հանգամանք, որի լիակատար ծաղկմանն են ուղղված պարտիայի ու կառավարության կիրառած և կիրառվելիք բոլոր միջոցառումները։

Կոմունիստական շինարարության գործում ձեռք բերած մեր ժողովրդի պատմական հաջողություններում խոշոր դեր խաղաց և շարունակում է խաղալ սովետական գիտությունը, որը նոր դարագլուխ բացելով մարդկային մտքի հազարամյա պատմության մեջ՝ մեր Հայրենիքին ապահովեց առաջատար դեր ամբողջ աշխարհում։ Սովետական տնտեսության աննախընթաց վերելքն ավելի քան ամրացրեց սոցիալիստական համաշխարհային լագերի պաշտպանական հզորությունը։ Խաղաղության համար մղվող Սովետական Միության անդուլ պայքարը մեծապես բարձրացրեց մեր երկրի միջազգային հեղինակությունը։

Մեր պարտիայի և սովետական ժողովրդի կյանքում լուրջ իրադարձություն հանդիսացավ ՍՄԿՊ Կենտկոմի վերջերս ավարտված Հուլիսյան պլենումը, որը քննարկեց արդյունաբերության և տրանսպորտի զարգացման, արտադրության մեջ գիտության նորագույն նվաճումների ու տեխնիկայի կիրառման վերաբերյալ պարտիայի XXI համագումարի ընդունած որոշումների կենսագործման ընթացքը։ Պլենումը միաժամանակ քննարկեց եղբայրական պարտիաների ներկայացուցիչների՝ Բուխարեստում կայացած խորհրդակցության արդյունքները ու լիովին հավանություն տվեց Ն. Ս. Խրուշչովի գլխավորած ՍՄԿՊ պատգամավորության այդ խորհրդակցությունում վարած քաղաքական գծին, ինչպես և այդ խորհրդակցության Կոմյունիկեին։

Օգոստոսի 1-ին կայացած ՀԿՊ Կենտկոմի ընդլայնված պլենումը քննության առնելով «ՍՄԿՊ Կենտկոմի Հուլիսյան պլենումի արդյունքները և ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպության խնդիրները», միահամուռ հավանություն տվեց նրա ընդունած որոշումներին։

Յոթնամյա պլանի կատարման ու գերակատարման ասպարեզում խոշոր են և Հայաստանի աշխատավորների ձեռք բերած ոգևորիչ հաջողությունները։ Բավական է նշել, որ միայն անցյալ տարի արդյունաբերական արտադրանքի

թողարկման աճը, պլանով նախատեսված 6,8 տոկոսի դիմաց, կազմեց 12 տոկոս: Իսկ այս տարվա առաջին կիսամյակի արդյունաբերական արտադրանքի թողարկումը 14 տոկոսով գերազանցեց անցյալ տարվա նույն այդ ժամանակամիջոցի տվյալները: Ռեսպուբլիկան նշանակալի հաջողություններ է ձեռք բերել տրանսպորտի ու կապի ասպարեզներում:

Անցած մեկ ու կես տարվա ընթացքում ՍՍՌՄ-ում գործարկվել են 1400 նոր արդյունաբերական ձեռնարկություններ, իսկ Սովետական Հայաստանում այդ ժամանակամիջոցում շահագործման են հանձնվել նոր տեխնիկայով հագեցված 40 ձեռնարկություններ ու ցեխեր: Ռեսպուբլիկայի աշխատավորները պարտիայի Կենտկոմի Հուլիսյան պլենումը նշանավորեցին արդյունաբերական արտադրանքի թողարկման բազմաթիվ ճյուղերի համար սահմանված պլանների զգալի գերակատարումով: Վերջին ժամանակներս զգալի չափերով զարգանում է ռեսպուբլիկայի շինարարության ինդուստրիալ հիմքը:

ՀԿՊ Կենտկոմի Օգոստոսյան պլենումն ընդգծեց, որ ՍՄԿՊ XXI համագումարի որոշումների կիրառման ուղղությամբ ռեսպուբլիկան ձեռք է բերել նշանակալի հաջողություններ. արագորեն առաջ է ընթանում արդյունաբերության տարբեր ճյուղերի ավտոմատիզացիան և մեխանիզացիան, նորագույն տեխնիկայի ու տեխնոլոգիայի հաջող կիրառումը: Արտադրության նորմալ զարգացումն ապահովեց նաև թողարկվող արտադրանքի որակի բարձրացումը: Անցյալ տարի արդյունաբերության մեջ աշխատանքի արտադրողականությունը բարձրացավ 7,7 տոկոսով, իսկ այս տարվա առաջին կիսամյակում՝ 7,4 տոկոսով: Ուշագրավ է, որ արտադրության աճի կեսից ավելին կատարվել է ի հաշիվ աշխատանքի արտադրողականության բարձրացման: Պայքարելով տեխնիկական պրոգրեսի համար, ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունները կուտակել են նշանակալի դրական փորձ, որը նրանց հնարավորություն տվեց զգալիորեն բարելավելու և կատարելագործելու տնտեսության ղեկավարությունը:

Պլենումը միաժամանակ շեշտեց, որ արդյունաբերության և տրանսպորտի բոլոր ճյուղերում ձեռք բերված հաջողություններով հանդերձ, տեխնիկական պրոգրեսի առումով ռեսպուբլիկան ունի խոշոր թերություններ: Հազվագյուտ չեն դեպքերը, երբ ժողտնտխորհը, մինիստրությունները և գերատեսչությունները նոր տեխնիկայի ներդրման պլանները կազմում են ընդհանուր արտադրական պլաններից կտրված, առանց հաշվի առնելու դրանց իրագործման նյութա-տեխնիկական ու մատակարարման հնարավորությունները: Թեթև արդյունաբերության և փայտամշակման արդյունաբերության կոնստրուկցիաները և փորձնական բազաները զգալիորեն ետ են մնում նորագույն տեխնիկայի արդի մակարդակից: Աշխատանքի և արտադրության կազմակերպման բազմաթիվ ձևեր չեն համապատասխանում նոր տեխնիկայի և տեխնոլոգիայի առաջավոր պահանջներին: Մի շարք գերատեսչություններում ձգձգվում են արտադրության հետագա մեխանիզացիայի ու ավտոմատիզացիայի ընդհանուր ռեսպուբլիկական հեռանկարային պլանների կազմումն ու մշակումները:

ՀԿՊ Կենտկոմի վերջին պլենումը պարտավորեցրեց պարտիական, սովետական, տնտեսական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպություններին տնտեսության հետագա զարգացման և նրա տեխնիկական պրոգրեսի հիմքում դնել ՍՄԿՊ Կենտկոմի Հուլիսյան պլենումի որոշումները: Անհրաժեշտ է ընդգծել, որ ռեսպուբլիկայի արդյունաբերության ղեկավարության



էական թերությունների մասին է վկայում այն փաստը, երբ անցյալ տարի, նմանապես և ընթացիկ տարվա առաջին կիսամյակում թերակատարվեցին նոր տեխնիկայի ներդրման պետական առաջադրանքները: Տնտեսական զարգացման վճռական գրավականը համարելով տեխնիկական պրոգրեսը, պլենումը պահանջեց պարտիական քաղկոմներից, շրջկոմներից, ժողտնտխորհից, մինիստրություններից, սկզբնական պարտիական կազմակերպություններից և ձեռնարկությունների ղեկավարներից՝ ձեռք առնել այնպիսի միջոցներ, որոնք ապահովեն տեխնիկական պրոգրեսի զարգացումը տնտեսության բոլոր ճյուղերում:

Այժմ հրամայական պահանջ է հասնել այն բանին, որպեսզի ամենուր արագորեն վերացվի ձեռքի աշխատանքը տնտեսության կարևոր բնագավառներում, կիրառվեն արդյունաբերական նոր նյութերի մշակման նորագույն մեթոդներ, ավելի լայն կերպով ծավալվի գյուտարարությունն ու ռացիոնալիզատորությունը գործարաններում, ֆաբրիկաներում, տրանսպորտում, սովխոզներում և կոլտնտեսություններում:

Տեխնիկական պրոգրեսի գլխավոր միջոցը համարելով գիտականորեն հիմնավորված և համարձակ գիտա-տեխնիկական առաջարկների ներդրումը արտադրության տարբեր ոլորտներում, ՀԿՊ Կենտկոմի պլենումը պարտավորեցրեց քաղկոմներին, շրջկոմներին, արդյունաբերական և տրանսպորտի ձեռնարկությունների սկզբնական պարտկազմակերպություններին ամեն կերպ նպաստել մեզ մոտ լայնորեն կիրառելու Նովո-Կրամատորսկի գործարանի, Մոսկվայի քաղաքային ժողտնտխորհի և Օմսկի երկաթուղու փորձը ու դրանով իսկ արագացնելու ձեռնարկությունների արտադրամիջոցների մոդեռնացումը և տեխնիկական վերակառուցումը:

Աննորմալ և անթույլատրելի համարելով այն իրողությունը, երբ ինչպես անցյալ տարում, նույնպես և ընթացիկ տարվա կիսամյակին 60 արտադրական ձեռնարկություններ թերակատարեցին պետական պլանները, պլենումը պարտիական կազմակերպությունների և տնտեսվարների ուշադրությունը բևեռեց նաև այն փաստի վրա, որ մի շարք ձեռնարկություններ չեն կատարել պետական պլանները ինքնարժեքի իջեցման և ներքին կուտակումների գծով: Որոշ ձեռնարկություններում դեռևս շատ են աշխատանքի աննպատակ ծախսումները, աշխատանքի արտադրողականությունը ետ է մնում աշխատավարձից. հումքի, էլեկտրաէներգիայի ու վառելիքի աննպատակ վատնումները մտահոգություն չեն պատճառում որոշ տնտեսվարների: Որակական ցածր ցուցանիշների գլխավոր պատճառը պլենումը համարում է այն, որ ձեռնարկությունների մի շարք ղեկավարներ դեռևս ձգտում են արտադրական պլանները կատարել միայն համախառն արդյունքով, հաշվի չառնելով աշխատանքային և նյութական միջոցների չարդարացված ծախսումները և այլն:

Արդյունաբերության և տրանսպորտի զարգացման կարևոր նախապայմանը համարելով մատնանշված թերությունների վերացումը և աշխատանքի արտադրողականության անշեղ բարձրացումը, պլենումն ընդգծեց, որ ձեռնարկությունների պարտիական կազմակերպությունները, ինչպես և արտադրությունը վարող բոլոր օրգանները կոչված են տնտեսական ցուցանիշները հասցնելու այնպիսի մակարդակի, որն ապահովի կապիտալ ներդրումների, աշխատանքային ու նյութական միջոցների ծախսման արդյունավետությունը և տվյալ արդյունքի միավորի վրա կատարած ծախսերի նվազեցումը:

Մեր ժողովրդական տնտեսության զարգացման ընթացքը կենսականորեն թելադրում է պարտիական կազմակերպություններին, տնտեսվարներին և նախագծային-կոնստրուկտորական կազմակերպությունների ղեկավարներին՝ տնտեսության մեջ զբաղված կադրերը դաստիարակել այնպիսի ոգով, որպեսզի վերջիններս բարձր պատասխանատվության զգացումով մոտենան արտադրության կուլտուրայի զարգացման, ասորտիմենտի ընդլայնման, արտադրանքի որակի բարձրացման և նախագծերի ու կոնստրուկցիաների ժամանակին ավարտման կարևորագույն գործին: Ժամանակն է խորապես ըմբռնելու, որ տվյալ ձեռնարկության գործունեության կարևոր չափանիշը մեր օրերում եղել է և մնում է առաջադրանքի կատարումը ըստ որակի և ըստ ասորտիմենտի: Ո՛չ մի զիջում այս չափանիշից և ո՛չ ոքի:

Պլենումն արձանագրեց, որ սոցիալիստական տնտեսվարության սկզբունքներին հակասում է այն վիճակը, երբ ռեսպուբլիկայի շատ ձեռնարկություններում ծայրահեղորեն ցածր է արտադրության ընդհանուր մակարդակը և արտադրանքը չի համապատասխանում պետական ստանդարտին ու հաստատված տեխնիկական պայմաններին: Ահա թե ինչու անհրաժեշտ է, որպեսզի առաջիկայում տնտեսություն վարող կազմակերպությունների և օրգանների ուշադրության կենտրոնում լինեն արտադրության ընդհանուր կուլտուրայի և արտադրանքի որակի բարձրացման կենսական հարցերը:

Երկրի զարգացման ներկա աստիճանում դեռևս չի նկատվում անհրաժեշտ բեկում՝ Տեղական տնտեսության մինիստրության և շրջանային ու քաղաքային Սովետների կենցաղային սպասարկման ձեռնարկությունների աշխատանքում: Չի կարելի նորմալ համարել այն խոշոր թերությունը, երբ այս տարվա կիսամյակի կենցաղային սպասարկման գծով պետական պլանը կատարված է միայն 72,6 տոկոսով: Անհրաժեշտ է կենցաղային սպասարկման ձեռնարկությունների գործունեությունը բարձրացնել նրանց ներկայացվող աշխատավորների բարձր պահանջների մակարդակին:

Արդյունաբերության և տրանսպորտի անկանգ զարգացման ապարեզում պարտիական կազմակերպությունների գլխավոր խնդիրը համարելով յոթնամյակի պլանների գծով վերցված պարտավորությունների անթերի կատարումը՝ Կենտկոմի պլենումը նաև նշեց, որ անհրաժեշտ է ավելի բարձր մակարդակի վրա դնել արտադրական օբյեկտների հետ առնչվող գիտա-հետազոտական աշխատանքը, նախագծերի և կոնստրուկցիաների որակը և գիտության նորագույն նվաճումների համարձակ ներդրումը տնտեսության տարբեր ճյուղերում: Այս առումով խոշոր են պարտիական կազմակերպությունների անելիքները, կազմակերպություններ՝ որոնց լավ գործունեությունից է կախված այդ խնդիրների ճիշտ և արագ լուծումը:

Տեխնիկական պրոգրեսի կապակցությամբ մեր առջև ծառացած մեծ խնդիրների լուծման կարևոր նախադրյալներից մեկն էլ որակյալ մասնագետների և գրագետ բանվորական կադրերի ուսուցման ու պատրաստման գործի բարելավումն է: Ահա թե ինչու պլենումը պարտավորեցրեց Պետպլանին և այլ օրգանների լայն միջոցառումներ մշակել ռեսպուբլիկայում ապահովելու մասնագետ կադրերի պատրաստման գործն այնպես, որ լիովի բավարարվեն արագ զարգացող տնտեսության բոլոր պահանջները:

Տեխնիկական պրոգրեսի հարցը սերտորեն առնչվում է և ռեսպուբլիկայի թեթև ու սննդի արդյունաբերության ճյուղերի հետագա զարգացման, դրանց



հատկացված միջոցների ռացիոնալ օգտագործման հետ: Այս նկատառումով անհրաժեշտ է առաջին հերթին ընդգծել, որ ժողտնտխորհը և նախագծային կազմակերպությունները պարտավոր են հատուկ ուշադրություն դարձնել վերոհիշյալ ճյուղերի գործող ձեռնարկությունների վերակառուցմանը և թողարկվող արտադրանքի ընդլայնմանը:

Առևտրի և Տեղական տնտեսության մինիստրությունները, Հայկոոպը. շրջանային և քաղաքային Սովետները կոչված են ավելի բարձրացնելու ու բարելավելու աշխատավորական զանգվածների կենցաղային սպասարկման գործի դրվածքը թե՛ քաղաքներում և թե՛ գյուղերում: Ընդ որում խոսքը վերաբերում է ոչ թե մի կերպ «յոլա տանելուն», այլ առաջավոր, սպասարկման նոր մեթոդներով աշխատավորների կենցաղային պահանջները բավարարելուն:

Տեխնիկական պրոգրեսի անընդհատ զարգացմանը մեծապես կնպաստի ձեռնարկությունների տնտեսական խրախուսանքի և աշխատողների շահագրգռվածության ապահովման վերաբերյալ պարտիայի դրույթի ճիշտ իրագործումը: Այդ մասին ՍՄԿՊ Կենտկոմի ընդունած որոշման անշեղ իրագործումը խոշոր լծակ կհանդիսանա տեխնիկական պրոգրեսի զարգացման համար:

Ինչպես ՍՄԿՊ Կենտկոմի Հուլիսյան, այնպես էլ ՀԿՊ Կենտկոմի Օգոստոսյան պլենումները նշեցին, որ այժմ, երբ սովետական ժողովուրդը ստեղծագործական վիթխարի աշխատանքով գերակատարում է սոցմրցմամբ ստանձնած բարձր պարտավորությունները, երբ կոմունիստական աշխատանքի մասնակիցների բանակը գնալով ստվարանում է՝ ավելի պատասխանատու է դարձել պարտիական կազմակերպությունների և օրգանների դերը տնտեսական ղեկավարության գործում: Համառորեն պայքարելով տնտեսական-տեխնիկական կոնսերվատիզմի դեմ, նրանք կոչված են որակյալ, կոնկրետ և բանիմաց ղեկավարություն ցույց տալու բոլոր ձեռնարկությունների գործունեությանը, աջակցելու առաջավորներին և օգնելու որպեսզի անհապաղ կիրառվի նրանց արժեքավոր փորձը: Այժմ պարտիական կազմակերպություններից պահանջվում է առավել գործնականություն, ավելի շատ կոնկրետություն, եղած որոշումների ստուգում, մասսաների հետ ունեցած կապերի ամրապնդում:

Տնտեսության բուռն վերելքը պահանջում է պարտիական կազմակերպություններից և արդյունաբերական ձեռնարկությունների ղեկավարներից, առանձնահատուկ ուշադրություն դարձնել կադրերի տնտեսագիտական կրթության վրա, հասնել այն բանին, որպեսզի արտադրության ակտիվ աշխատողները կարողանան բազմակողմանիորեն վերլուծել ձեռնարկության տնտեսական-ֆինանսական գործունեությունը, ճիշտ հասկանան և օգտագործեն տնտհաշվարկը, շահութաբերությունը, գինը և մյուս տնտեսական կարևոր լծակները:

Տնտեսական մեծ պլանները պահանջում են նաև կազմակերպական և քաղաքական մեծ աշխատանք մասսաների շրջանում: Վերջիններիս աշխատանքային և ստեղծագործական աճող նախաձեռնությունը պահանջում է պարտիական ղեկավարության առավել կատարելագործում: Օգտագործելով քաղաքական ներգործության բոլոր ձևերը, պարտիական կազմակերպությունները պետք է ավելի բարելավեն տնտեսության բոլոր տեղամասերում կադրերի տեղադրման վճռական գործը:

Ամեն կերպ իրագործելով պարտիական ղեկավարության լենինյան ոճը, պարտիական կազմակերպությունները պետք է հոգան տնտեսավարների և ս-

վետական աշխատողների ֆունկցիաների շիտակ կիրառման մասին, թույլ չտալով վերջիններիս նկատմամբ մանր հոգատարություն: Կատարելագործել պարտիական ղեկավարության ոճը տնտեսության ոլորտում, դա նշանակում է ոչ միայն տնտեսության վարման օրենքների ու տեխնոլոգիայի կատարյալ իմացություն, այլև մարդկանց ուժերի առավել նպատակահարմար ծախսում, սոցիալիստական մրցության գործնական ծավալում, տեխնիկական պրոգրեսի առաջավորների, կոմունիստական աշխատանքի բրիգադաների ձեռք բերած արժեքավոր փորձի խելոք օգտագործում: Կատարելագործել տնտեսության պարտիական ղեկավարությունը, դա նշանակում է այնպես վարել գործը, որպեսզի կոմունիզմի դպրոց հանդիսացող արհմիությունները և կոմերիտմիությունն իրենց հարյուր հազարավոր անդամների անսպառ եռանդով լծվեն յոթնամյա պլանի գերակատարման պատվավոր գործին: Պարտիական կազմակերպությունների պարտքն է ամեն կերպ օգնել արհմիություններին և կոմերիտմիությանը, լայնորեն և խորությամբ ծավալելու սոցիալիստական մրցությունը մեր կյանքի բոլոր ասպարեզներում:

ՍՄԿՊ Կենտկոմի Հուլիսյան և ՀԿՊ Կենտկոմի Օգոստոսյան պլենումների որոշումները պետք է լայնորեն պարզաբանվեն բոլոր աշխատավորներին՝ որպես մեր հետագա առաջխաղացման գործնական ծրագիր: Խոսքը վերաբերում է ոչ միայն արդյունաբերության և տրանսպորտի ասպարեզում տեխնիկական պրոգրեսի զարգացման վերաբերյալ ընդունված որոշմանը, այլև այն ԲԱՆԱՁԵՎԻՆ, որն ընդունվեց ՍՄԿՊ Կենտկոմի պլենումի կողմից՝ Բուխարեստում կայացած կոմունիստական և բանվորական պարտիաների Խորհրդակցության արդյունքների վերաբերյալ: Հսկայական սկզբունքային նշանակություն ունեցող այդ բանաձևում մի անգամ ևս ընդգծված է, որ «Արդի իրադրության կարևորագույն հարցերում կոմունիստական ու բանվորական պարտիաների միահամուռ դիրքավորումը հանդիսանում է մարքսիզմ-լենինիզմին միջազգային կոմունիստական շարժման հավատարմության, համաշխարհային սոցիալիստական լագերի համախմբվածությունը այսուհետև ևս ամրապնդելու, միջազգային կոմունիստական շարժման միասնությունն աչքի լույսի պես պահպանելու՝ բոլոր եղբայրական պարտիաների պատրաստակամության նոր վկայությունը: Կոմունիստական և բանվորական պարտիաները հավաստիացրին իրենց վճռականությունը՝ հակահարված տալու մարքս-լենինյան ուսմունքից ռևիզիոնիստական, դոգմատիկ և ձախ-աղանդավորական նահանջներին, նեղնացիոնալիստական տենդենցների դրսևորումներին, ստեղծագործաբար զարգացնելու մարքսիզմ-լենինիզմը և այն հմտորեն կիրառելու պրակտիկայում»:

ՀԿՊ Կենտկոմի Օգոստոսյան պլենումը լիովին և միահամուռ հավանություն տվեց մեր պարտիայի լենինյան շտաբի միաձայն ընդունած վերոհիշյալ բանաձևին: Հանդիսանալով ՍՄԿՊ հավատարիմ և մարտական ջոկատներից մեկը, Հայաստանի Կոմունիստական պարտիան ի դեմս իր Կենտրոնական Կոմիտեի՝ կոչ արեց բոլոր պարտիական կազմակերպություններին աշխատանքային նոր սխրագործություններով և կուռ շարքերով դիմավորելու Հայաստանում Սովետական իշխանության հաստատման 40-ամյակի փառավոր տոնը:

# ՀՈԴՎԱԾՆԵՐ

## ՔԱՂԱՔԻ ԵՎ ԳՅՈՒՂԻ ՄԻՋԵՎ ԵՂԱԾ ԷԱԿԱՆ ՏԱՐԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՎԵՐԱՑՄԱՆ ՃԱՆԱՊԱՐՀԻՆ

*Ս. ԲԱԴԱԼՅԱՆ*

*ՍՄԿՊ XXI համագումարը մշակեց մեր երկրում կոմունիզմի ծավալուն կառուցման հոյակապ ծրագիրը, որի կենսագործումը պահանջում է լուծել տեխնիկա-տնտեսական, սոցիալական ու կուլտուրական մի շարք լուրջ պրոբլեմներ, մասնավորապես քաղաքի և գյուղի միջև գոյություն ունեցող էական տարբերության հաղթահարման պրոբլեմը:*

*Քաղաքի և գյուղի միջև գոյություն ունեցող էական տարբերության հաղթահարումը սոցիալիզմը կոմունիզմի վերաճելու օրինաչափ պրոցեսի կարևորագույն կողմերից մեկն է, որը սերտորեն կապված է կոմունիստական հասարակարգի նյութա-տեխնիկական բազայի ստեղծման և սոցիալիստական արտադրական հարաբերությունների հետագա կատարելագործման հետ: ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանի կատարումը և կոլտնտեսային կարգի հետագա ամրապնդումը լուրջ միջոց են քաղաքի ու գյուղի միջև եղած էական տարբերության հաղթահարման համար:*

***

*Դարեր շարունակ քաղաքի և գյուղի միջև եղած հակադրությունը հանդիսացել է մարդկային հասարակության պատմության բնորոշ գծերից մեկը: Դրա ծագումը կապված է արտադրության միջոցների մասնավոր սեփականության, հասարակությունը հակամարտ դասակարգերի տրոհման և պետության առաջացման հետ: «Կարելի է ասել, որ հասարակության ամբողջ տնտեսական պատմությունը,— գրում է Մարքսը,— ամփոփվում է այդ հակադրության շարժման մեջ» (Կապիտալ, հատ. 1, էջ 371):*

*Քաղաքի և գյուղի միջև հակադրության ոչնչացման սկիզբը դրեց Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան: Վ. Ի. Լենինը 1919 թվականին ՌԿ(բ)Պ ծրագրի նախագիծը կազմելիս գրում էր. «Նկատի ունենալով այն, որ քաղաքի և գյուղի հակադրությունը գյուղի տնտեսական և կուլտուրական հետամնացության ամենախոր հիմքերից մեկն է հանդիսանում... ՌԿՊ-ն այս հակադրության ոչնչացման մեջ է տեսնում կոմունիստական շինարարության արմատական խնդիրներից մեկը...» (Երկեր, հ. 29, էջ 154—155):*

*Կոմունիստական պարտիան Սովետական իշխանության առաջին իսկ օրերից ձեռնամուխ եղավ լենինյան այդ ցուցումի կենսագործմանը:*

Քաղաքի և գյուղի միջև հակադրության պրոբլեմի լուծումը հանդիսացավ մեր երկրում սոցիալիզմի կառուցման կարևորագույն նախադրյալներից մեկը։ Այդ հակադրության ոչնչացումը տեղի ունեցավ մեր երկրի սոցիալիստական ինդուստրացման, գյուղատնտեսության կոլեկտիվացման, կուլտուրական ռևոլյուցիայի պրոցեսում, բանվոր դասակարգի և գյուղացիության եղբայրական դաշինքի ամրապնդման ուղղությամբ պարտիայի ձեռնարկած վիթխարի միջոցառումների կենսագործման շնորհիվ։

Քաղաքի և գյուղի միջև հակադրության ոչնչացման վճռական էտապը հանդիսացավ գյուղում կոլտնտեսային կարգի հաղթանակը, որի շնորհիվ սովետական գյուղը սկսեց զարգանալ քաղաքի հետ միատիպ տնտեսական հիմքի՝ արտադրության միջոցների սոցիալիստական սեփականության հիմքի վրա։ Քաղաքում և գյուղում միատիպ սոցիալիստական արտադրական հարաբերությունների հաստատումը, շահագործող վերջին դասակարգի — կուլակության վերացումը, գյուղի տեխնիկա-տնտեսական ու կուլտուրական հետամնացության հաղթահարման տնտեսական բազայի ստեղծումը պայմանավորեցին քաղաքի և գյուղի միջև եղած դարավոր հակադրության պրոբլեմի լուծումը՝ հօգուտ սոցիալիզմի։

Տնտեսական ու կուլտուրական խոր վերափոխումների շնորհիվ սովետական ժողովուրդը հասավ համաշխարհային պատմական հաղթանակի, կառուցեց նոր, սոցիալիստական հասարակարգ, որի հիմքի վրա ընդմիշտ անհետացավ քաղաքի և գյուղի միջև եղած հակադրությունը։ Եթե բուրժուական կարգի համար բնորոշը կապիտալիստական քաղաքի կողմից գյուղի շահագործումն է, որի հետ կապված է քաղաքի ու գյուղի դասակարգային շահերի հակադրությունը, ապա սոցիալիզմի պայմաններում, որտեղ քաղաքը և գյուղը զարգանում են սոցիալիստական հիմքի վրա, գոյություն ունի բանվոր դասակարգի և գյուղացիության արմատական շահերի միասնություն։ «Քաղաքը կապիտալիզմի օրոք,— նշում է Վ. Ի. Լենինը,— գյուղին տալիս է այն, ինչ որ այլասերում էր գյուղը քաղաքականապես, տնտեսապես, բարոյապես, ֆիզիկապես և այլն։ Մեզանում քաղաքն ինքն իրեն սկսում է գյուղին տալ ուղղակի հակառակը» (Երկեր, հ. 33, էջ 554)։

Սոցիալիզմի պայմաններում, որտեղ տիրապետում է արտադրության միջոցների հասարակական սեփականությունը և բացակայում են շահագործող դասակարգերը, քաղաքի և գյուղի միջև գոյություն ունեն միանգամայն այլ բնույթի հարաբերություններ։ Այդ հարաբերությունները կառուցվում են սոցիալիստական հասարակարգի բարեկամական երկու դասակարգերի՝ բանվոր դասակարգի և կոլտնտեսային գյուղացիության ընկերական համագործակցության ու փոխադարձ օգնության, նրանց արտադրական գործունեության, փոխադարձաբար ձեռնտու փոխանակման և քաղաքական ու տնտեսական անխախտ դաշինքի բազայի վրա։ Այդ հարաբերություններում առաջատար դերը պատկանում է քաղաքին, բանվոր դասակարգին։ Քաղաքի ու գյուղի միջև այդ նոր հարաբերություններում գլխավորը բանվոր դասակարգի և կոլտնտեսային գյուղացիության շահերի ընդհանրությունն է, որը ենթարկված է սոցիալիստական հասարակարգի զարգացման և կոմունիզմի կառուցման նպատակին։

Սոցիալիզմի հաղթանակը հասցրեց մեր երկրում քաղաքի և գյուղի միջև հակադրության ոչնչացմանը։ Սակայն, հակադրության ոչնչացումը չվերացրեց և չէր կարող միանգամից վերացնել նրանց միջև եղած էական տարբե-



րությունը ինչպես տեխնիկա-տնտեսական, այնպես էլ կուլտուրական տեսակետից։ Քաղաքի և գյուղի միջև էական տարբերության հաղթահարման պրոցեսը պահանջում է գյուղի արտադրողական ուժերի զգալի զարգացում, հետևաբար, երկար ժամանակ։ Եթե քաղաքի և գյուղի միջև հակադրության ոչնչացումը պահանջեց համարյա թե սոցիալիզմի կառուցման ամբողջ ժամանակաշրջանը, ապա նրանց միջև էական տարբերության հաղթահարումը տեղի կունենա կոմունիստական հասարակարգի կառուցման շնորհիվ։

Քաղաքի և գյուղի միջև դեռևս գոյություն ունեցող էական տարբերությունը դա մի այնպիսի հասկացողություն է, որն արտահայտում է նրանց միջև գոյություն ունեցող որոշակի հասարակական հարաբերությունների բնույթը, քաղաքում ու գյուղում արտադրողական ուժերի և արտադրական հարաբերությունների, տեխնիկայի ու կուլտուրայի զարգացման մակարդակը։ Սոցիալիզմի պայմաններում քաղաքի և գյուղի միջև կազմավորված նոր տնտեսական ու քաղաքական հարաբերությունները, ամբողջությամբ վերցրած, արտահայտելով սովետական հասարակության զարգացման պրոցեսի սոցիալիստական բովանդակության միասնությունը, դրա հետ միասին պայմանավորում են քաղաքում ու գյուղում տնտեսական ու քաղաքական խնդիրների լուծման ժամանակի, ուղիների և ձևերի տարբերությունը։ Դա բխում է նրանից, որ չնայած քաղաքի և գյուղի միջև գոյություն ունեն սոցիալիստական հասարակական հարաբերություններ, բայց դեռևս տարբեր է նրանց զարգացման մակարդակը։ Գյուղը դեռևս տեխնիկա-տնտեսական ու կուլտուրական տեսակետից ետ է մնում քաղաքից։ Սակայն քաղաքի և գյուղի սոցիալիստական զարգացման հիմքում ընկած քաղաքական ու տնտեսական շահերի միասնությունը և ընդհանրությունը հնարավորություն է ընձեռում հաղթահարելու գյուղի ետ մնալը քաղաքից։ Չպետք է մոռանալ, որ քաղաքի ու գյուղի միջև եղած տարբերության մեջ էականը ամենից առաջ տնտեսական տարբերությունն է։ Այդ նշանակում է, որ քաղաքի ու գյուղի միջև գոյություն ունեցող էական տարբերությունը հիմնականում հանգում է սոցիալիստական սեփականության երկու ձևերի՝ պետական համաժողովրդական և կոոպերատիվ-կոլտնտեսային սեփականության միջև գոյություն ունեցող տարբերությանը։ Դրա հաղթահարումն ամենից առաջ պահանջում է, որպեսզի կոլտնտեսային սեփականությունն աստիճանաբար վերաճի համաժողովրդական սեփականության և ապագայում տեղի ունենա սեփականության երկու ձևերի միաձուլում մեկ միասնական, կոմունիստական սեփականության մեջ։ «Մեկ համաժողովրդական սեփականության մեջ պետական սեփականության հետ կոլտնտեսային-կոոպերատիվ սեփականության միաձուլումը,— նշել է ընկեր Ն. Ս. Խրուշչովը ՍՄԿԿ XXI համագումարում,—կազմակերպական-տնտեսական հասարակ միջոցառում չէ, այլ քաղաքի ու գյուղի միջև գոյություն ունեցող էական տարբերությունը հաղթահարելու խոր պրոբլեմի լուծում»։

Հետևաբար, կոմունիստական հասարակարգի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում քաղաքի և գյուղի միջև գոյություն ունեցող էական տարբերության հաղթահարման գլխավոր ուղղությունը կոլտնտեսային կարգի հետագա ամրապնդումը և կոլտնտեսային սեփականության հանրայնացման մակարդակի բարձրացումն է։ Կոմունիստական շինարարության ընթացքում կբարձրանա կոլտնտեսային սեփականության հանրայնացման մակարդակը, այն կհասցվի համաժողովրդական սեփականության մակարդակին։ Սոցիա-

լիստական սեփականության երկու ձևերի անխուսափելի մերձեցումն ու միաձուլումը տեղի կունենա պետական համաժողովրդական սեփականության առաջատար դերի, քաղաքի և բանվոր դասակարգի օգնության պայմաններում:

Կոլտնտեսային արտադրության հետագա զարգացման և նրա հանրայնացման մակարդակի բարձրացման, կոլտնտեսային ու համաժողովրդական սեփականության մերձեցման տնտեսական հիմքը անբաժանելի ֆոնդերն են: Կոլտնտեսությունների անբաժանելի ֆոնդերի այդպիսի նշանակությունը բացատրվում է նրանով, որ դրանք ավելի լրիվ են արտահայտում կոլտնտեսային արտադրության սոցիալիստական հանրայնացման բնույթը և հանդիսանում են գյուղում խոշոր արտադրության սոցիալիստական տարրերի զարգացման հիմքը:

Անբաժանելի ֆոնդերի աճն իրենով արտահայտում է կոլտնտեսային սեփականության կառուցվածքում տեղի ունեցող որակական խոր փոփոխությունը: Կոլտնտեսային կարգի գոյության ու զարգացման ընթացքում այդ ֆոնդերն անշեղորեն աճել են: Այսպես. 1932 թվականին դրանք Սովետական Միության մեջ կազմում էին 4,7, իսկ 1958 թվականին՝ 102 միլիարդ ռուբլի: Հայկական ՍՍՌ-ի կոլտնտեսությունների անբաժանելի ֆոնդերը 1940 թվականին կազմում էին 269,2 միլիոն ռուբլի, իսկ 1958 թվականին՝ արդեն 1 միլիարդ 720 միլիոն ռուբլի:

Անբաժանելի ֆոնդերի աճի շնորհիվ կբարձրանա կոլտնտեսային արտադրության հանրայնացման մակարդակը և կզարգանա նրանց հանրային տնտեսությունը: Դրա շնորհիվ կփոխվի կոլտնտեսությունների հանրային տնտեսության և կոլտնտեսականների անձնական օժանդակ տնտեսության հարաբերակցությունը հօգուտ առաջինի: Կոլտնտեսականների անձնական օժանդակ տնտեսությունն աստիճանաբար կկորցնի իր նշանակությունը, իսկ կոլտնտեսությունների հանրային տնտեսությունը գյուղում կդառնա տնտեսության միակ ձևը: Անբաժանելի ֆոնդերի անշեղ աճը հնարավորություն կտա ընդլայնել ու զարգացնել միջկոլտնտեսային արտադրական կապերը և կոլտնտեսությունների համագործակցության զանազան ձևերը ինչպես արտադրական, այնպես էլ կուլտուր-կենցաղային օբյեկտների համատեղ շինարարության և օգտագործման ասպարեզում: Միջկոլտնտեսային արտադրական կապերի և կոլտնտեսությունների համագործակցության զանազան ձևերի ընդլայնումը, որ բխում է ժամանակակից արտադրողական ուժերի զարգացման և գյուղատնտեսության մեջ արտադրության համակենտրոնացման պահանջից, կոլտնտեսային սեփականությունն ավելի սերտորեն կկապի համաժողովրդական սեփականության հետ, հնարավորություն կտա լուծելու կոմունիստական շինարարության կարևորագույն խնդիրներից մեկը՝ կոլտնտեսային սեփականությունը համաժողովրդական սեփականության վերածելու խնդիրը: Այդ պահանջում է, որ կոլտնտեսությունների անբաժանելի ֆոնդերի դրամական միջոցները առաջին հերթին պետք է օգտագործել գյուղատնտեսական մեքենաներ ձեռք բերելու, արտադրական շենքեր, իռիգացիոն-մելիորատիվ շինարարության, ճանապարհներ կառուցելու, ինչպես նաև գյուղատնտեսական հումքի վերամշակման ձեռնարկությունների, գիշերօթիկ դպրոցների, հիվանդանոցների, կուլտուրայի տների և միջկոլտնտեսային այլ օբյեկտների կառուցման և միջկոլտնտեսային ֆոնդերի ստեղծման համար: Կոլտնտեսային



սեփականության և գյուղում սոցիալիստական արտադրական հարաբերությունների զարգացման ու կատարելագործման այդ նոր պրոցեսները կնպաստեն սեփականության համաժողովրդական ու կոլտնտեսային ձևերի մերձեցմանը, քաղաքի և գյուղի միջև էական տարբերության հաղթահարմանը:

Քաղաքի և գյուղի միջև էական տարբերության պրոբլեմի լուծման կարևորագույն օղակը գյուղատնտեսական արտադրության պրոցեսների կոմպլեքսային մեքենայացումը, ավտոմատացումը, էլեկտրիֆիկացումը և քիմիացումն է: Կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծումն իր մեջ ընդգրկում է գյուղատնտեսական աշխատանքն աստիճանաբար ինդուստրիալ աշխատանքի տարատեսակ դարձնելու պրոցեսը: Այդ նշանակում է, որ ոչ միայն արդյունաբերության, այլև գյուղատնտեսության մեջ պետք է լրիվ չափով իրականացվեն արտադրության կոմպլեքսային մեքենայացումը, էլեկտրիֆիկացումը և քիմիացումը: Գյուղատնտեսական արտադրության մեջ ավելի կատարելագործված մեքենաների ներդրումը կապահովի գյուղատնտեսության բոլոր ճյուղերի կոմպլեքսային մեքենայացումը, արտադրության մեջ ավտոմատացման լայն չափերով կիրառումը: Միայն այդ հիմքի վրա գյուղատնտեսական մթերքների արտադրության պրոցեսը կդառնա մեքենայական—ինդուստրիալ պրոցես և գյուղատնտեսական աշխատանքն աստիճանաբար կդառնա ինդուստրիալ աշխատանքի տարատեսակը:

Գյուղատնտեսական արտադրության կոմպլեքսային մեքենայացման և ավտոմատացման համար խոշոր նշանակություն կունենա յոթնամյակի ընթացքում նրա տեխնիկական հագեցվածության բարձրացումը: Յոթնամյակում գյուղատնտեսությունը սոցիալիստական արդյունաբերությունից կստանա մեկ միլիոն 400 հազար տրակտոր և հացահատիկային կոմբայն ու մեծ քանակությամբ այլ մեքենաներ ու սարքավորում: 1965 թվականին հիմնականում կավարտվի երկրի բոլոր կոլտնտեսությունների էլեկտրիֆիկացումը: Մեր ռեսպուբլիկայում այն կավարտվի ավելի շուտ՝ 1960 թվականին, որը հնարավորություն կտա էլեկտրաէներգիան ավելի մեծ չափերով օգտագործելու ինչպես գյուղատնտեսական արտադրության մեջ, այնպես էլ կոլտնտեսային գյուղի կենցաղում: Կոլտնտեսությունների էլեկտրիֆիկացման՝ յոթնամյակի համար նախատեսված աշխատանքների ծավալը 2,5 անգամ կգերազանցի 1952—1958 թվականների այդ աշխատանքների ծավալից, որի շնորհիվ գյուղատնտեսության մեջ էլեկտրաէներգիայի սպառումը 1959—1965 թվականներին կաճի մոտավորապես 4 անգամ:

Գյուղի էլեկտրիֆիկացումը, գյուղատնտեսական արտադրության մեքենայացումը և ավտոմատացումը կուղեկցվեն կոլտնտեսային ու համաժողովրդական արտադրության միջոցների աստիճանաբար միացման և յուրօրինակ միաձուլման հետ: Այդ պրոցեսը կարտահայտվի նրանում, որ հանդես կգան պետական-կոոպերատիվ համատեղ ձեռնարկություններ, որոնք ստեղծվում են պետական ու կոլտնտեսային միջոցների հաշվին. այսպես, օրինակ, էլեկտրակայանները, ոռոգիչ սիստեմները: Տնտեսական այդ նոր պրոցեսը նույնպես մեծ չափով կնպաստի քաղաքի և գյուղի միջև էական տարբերության հաղթահարմանը:

Քաղաքի և գյուղի միջև էական տարբերության հաղթահարման պրոցեսում կարևոր նշանակություն կունենա քաղաքների հետագա վերակառուցումը և նոր քաղաքների զարգացումը: Կոմունիզմի ծավալուն կառուցման ժամա-

նակաշրջանում ոչ միայն գյուղը կհաղթահարի իր տնտեսա-տեխնիկական ու կուլտուրական հետ մնալը քաղաքից, այլև դրա հետ միասին ժամանակակից քաղաքը կփոխի իր տեսքը: Կոմունիզմի պայմաններում արդյունաբերությունը, գիտության, արվեստի, կուլտուրայի օջախները չեն կենտրոնանա միայն մեծ քաղաքներում, քանի որ այդ կսահմանափակի բնակչության բոլոր խավերի կուլտուրայի և արվեստի նվաճումներից օգտվելու հնարավորությունը:

Արդյունաբերության պլանաչափ տեղաբաշխումն ամբողջ երկրում, արդյունաբերական ձեռնարկությունների մոտեցումը հումքի աղբյուրներին և սպառման շրջաններին կուղեկցվի նոր քաղաքների շինարարությամբ: Քաղաքը որպես նյութական ու հոգևոր կուլտուրայի բարձր զարգացման օջախ, որպես խոշոր արդյունաբերական կենտրոն, կնպաստի գյուղի կուլտուրական մակարդակի բարձրացմանը: Քաղաքն իր այդ պատմական դերը կկատարի, քանի որ ինքը նույնպես կվերափոխվի ու կվերակառուցվի կոմունիստական ապրելակերպի պահանջների սկզբունքով:

Քաղաքային և գյուղական բնակչության աշխատանքի և կենցաղի պայմանների տարբերության վերացումն անմիջականորեն կապված է քաղաքի ու գյուղի բնակչության ռացիոնալ տեղաբաշխման հետ: Պետք է նշել, որ մեր տնտեսագիտական գրականության մեջ այդ կապակցությամբ արտահայտվել են հակասական կարծիքներ: Օրինակ, կար այն սխալ տեսակետը, որ քաղաքի և գյուղի միջև էական տարբերության վերացումը ենթադրում է մեծ քաղաքների ոչնչացում, իսկ մյուս տեսակետն այն էր, ըստ որի մեծ քաղաքների աճը հանդիսանում է այդ պրոբլեմի լուծման ուղիներից մեկը: Կոմունիստական շինարարության փորձը ցույց է տալիս, որ մեծ քաղաքները, որպես քաղաքակրթության կենտրոններ, կպահպանվեն և նրանց գոյությունը ոչ թե արգելակում, այլ օգնում է քաղաքի և գյուղի միջև էական տարբերության հաղթահարմանը: Սակայն, ներկայումս զարգացման ընդհանուր ուղղությունն այն է, որպեսզի բնակչությունը ռացիոնալ տեղաբաշխվի երկրի ամբողջ տերիտորիայում: Զարգացման այդպիսի ուղղությունը բացառում է հետագայում բնակչության չափից դուրս համակենտրոնացումը մեծ քաղաքներում:

Բնակչության շարժումը և նրա տեղաբաշխումը պայմանավորվում են արտադրության զարգացմամբ և նրա տեղաբաշխմամբ: Տեխնիկայի, գիտության և տրանսպորտի զարգացման արդի մակարդակը թույլ է տալիս ավելի համաչափ և ռացիոնալ տեղաբաշխել արտադրությունը և բնակչությունը:

Ակներև է, որ ապագայում գյուղատնտեսական աշխատանքի արտադրողականության բարձրացման հետ մեկտեղ ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերի պահանջները աշխատանքով բավարարելու համար տեղի կունենա գյուղական բնակչության մի մասի հոսք, բայց այդ չպետք է առաջացնի մեծ քաղաքների անսահման աճ: Այժմ գլխավոր խնդիրն այն է, որ ինդուստրիալ կենտրոններն ավելի ռացիոնալ տեղաբաշխվեն երկրի ամբողջ տերիտորիայում, իսկ նրանց շուրջը հանդես գան համեմատաբար ոչ խոշոր, բայց մեծ թվով քաղաք-արբանյակներ, որոնք կունենան մարդկանց առողջության և կուլտուրայի էլ ավելի նպաստավոր պայմաններ: Այդ պրոցեսը կհասցնի քաղաքի և գյուղի բնակչության կենցաղի ու կուլտուրայի միջև եղած սահմանագծերի վերացման:

Քաղաքում և գյուղում բնակարանային բուռն շինարարությունը, որն այժմ մեծ թափ է ստացել մեր երկրում, կարևոր նշանակություն ունի քաղաքի և



գյուղի միջև էական տարբերության հաղթահարման գործում: Երկրում բնակարանային պակասը վերացնելու համար նախատեսվում է 1959—1965 թվականներին պետական կապիտալ ներդրումների և բնակչության միջոցների հաշվին պետական վարկի օգնությամբ կառուցել 650—660 միլիոն քառակուսի մետր ընդհանուր տարածությամբ բնակելի նոր տներ, կամ մոտ 15 միլիոն բնակարան, որը 2,3 անգամ ավելի է, քան կառուցվել է նախորդ յոթնամյակում: Գյուղական վայրերում կոլտնտեսականների և գյուղական ինտելիգենցիայի ուժերով կկառուցվի մոտ 7 միլիոն բնակելի տուն: Բանավաններում բնակարանային ֆոնդը կմեծանա 1,6 անգամ:

Բնակարանային շինարարությունը մեծ չափերի է հասնելու նաև Հայկական ՍՍՌ-ում: Յոթնամյակում այդ նպատակի համար ծախսվելու է ավելի քան 3 միլիարդ ռուբլի: 1958—1959 թվականներին ռեսպուբլիկայի քաղաքներում ու բանվորական ավաններում կառուցվել են 360 հազար քառակուսի մետր բնակելի տներ, իսկ գյուղերում՝ 20 հազար տուն: Յոթնամյակում միայն պետական ներդրումների հաշվին կառուցվելու և շահագործման է հանձնվելու 2 միլիոն 328 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն: Բացի այդ, պետական և կոլտնտեսային վարկի օգնությամբ ու իրենց անձնական խնայողությունների հաշվին քաղաքային բնակչությունը, կոլտնտեսականներն ու գյուղական ինտելիգենցիան կկառուցեն 85 հազար անհատական տներ:

Քաղաքի և գյուղի միջև էական տարբերության հաղթահարման կարևորագույն նախադրյալներից մեկը գյուղական բնակչության կուլտուր-կենցաղային պայմանների արմատական բարելավումն է: Կոլտնտեսային գյուղի արտադրողական ուժերի աճի, կոլտնտեսային սոցիալիստական սեփականության զարգացման ու ամրապնդման հետ միասին կփոխվեն գյուղական կյանքի ոչ միայն արտադրական, այլև կուլտուր-կենցաղային պայմանները: Ապագայում կոլտնտեսային գյուղերը կդառնան քաղաքատիպ, բարեկարգ բնակավայրեր, որտեղ կօգտագործվեն ժամանակակից կոմունալ ու կուլտուր-կենցաղային սպասարկման բոլոր նվաճումները: Այդ բոլորը կարտահայտվի նրանում, որ ոչ հեռավոր ապագայում կոլտնտեսային գյուղերը կդառնան լավ արտադրական շենքեր, բարեկարգ բնակելի տներ, ակումբներ, դպրոցներ և գիշերօթիկ դպրոցներ, գրադարաններ, կենցաղային սպասարկման ձեռնարկություններ, բարեկարգ ճանապարհներ, էլեկտրականություն, ռադիո, հեռուստատեսություն և կինո ունեցող քաղաքային տիպի բնակավայրեր:

Հասարակական արտադրության պրոցեսում քաղաքը և գյուղը կմերձենան մինչև այն աստիճան, որ կյանքի պայմանները գյուղում քիչ բանով կտարբերվեն քաղաքի պայմաններից: Ներկայիս գյուղերի փոխարեն, որոնք ծագել են մասնավոր սեփականության և մանր գյուղացիական անհատական տնտեսությունների բազայի վրա, կաճեն նոր ագրոքաղաքներ, որոնք կհամապատասխանեն կոմունիստական հասարակարգի խոշոր մեքենայացված հողագործությանը: Ապագայում քաղաքը և գյուղը կարելի կլինի տարբերել միայն աշխատանքի բնական պայմաններով, արդյունաբերական ու գյուղատնտեսական մթերքների արտադրության բնույթով:

Ահա թե ինչու ժամանակակից պայմաններում կարևորագույն նշանակություն ունի կոլտնտեսային գյուղի վերակառուցումը: «Ի՞նչ է նշանակում վերակառուցել գյուղը: Դա պարզապես հին տների փոխարեն նոր տներ կառու-

ցելը չէ,— ասում է ընկ. Ն. Ս. Խրուշչովը,— բանը վերաբերում է նրան, որ գյուղացիական անհատական տնտեսության պայմաններում գոյացած հին գյուղի փոխարեն կառուցվի նոր, սոցիալիստական գյուղ»։

Կոլտնտեսությունների գյուղատնտեսական արտադրության աճը, հանրային եկամուտների ավելացումը և կոլտնտեսականների բարեկեցության բարելավումը զուգակցվում են գյուղում շինարարության մեծ թափով։ Այդ պահանջում է, որ կոլտնտեսային գյուղի վերակառուցման հատակագծման սխեմաներում պետք է նախատեսվեն գյուղատնտեսական արտադրության զարգացման ու մասնագիտացման հեռանկարները, արտադրական և հասարակական շենքերի, բնակելի մասսիվների ռացիոնալ տեղաբաշխումը, էլեկտրիֆիկացումը, ջրամատակարարումը, ճանապարհաշինարարությունն ու կապը, կոլտնտեսությունների բնակավայրերի հետագա զարգացումը։ Այս կապակցությամբ պետք է նշել, որ մեր ռեսպուբլիկայում կան ոչ քիչ թվով մանր գյուղեր, որոնք հետագա զարգացման հեռանկար չունեն։ Հետևաբար, այդ պահանջում է, որ պետք է ռեսպուբլիկայի գյուղերում շինարարության աշխատանքները ծավալել այն ուղղությամբ, որ տնտեսական ու կուլտուր-կենցաղային զարգացման տեսակետից այդպիսի անհեռանկար գյուղերի բնակչությունը, ինչպես նշեց Հայաստանի Կոմունիստական պարտիայի XXI համագումարը, աստիճանաբար վերաբնակեցվի ուրիշ կոլտնտեսություններում կամ սովխոզներում։ Դա ոչ միայն նյութական հսկայական միջոցներ կխնայի, այլև հնարավորություն կընձեռի կառուցելու նոր, սոցիալիստական գյուղ։

Քաղաքի և գյուղի միջև էական տարբերության հաղթահարման կարևոր նախադրյալներից մեկը գյուղում կուլտուրական օջախների և գիտական հիմնարկների աճը և կոլտնտեսային գյուղացիության կուլտուր-տեխնիկական մակարդակի հետագա բարձրացումն է։ Գյուղում աճել է բազմաքանակ ինտելիգենցիա։ Բավական է հիշատակել, որ միայն վերջին յոթ տարիների ընթացքում պատրաստվել է 4 միլիոն 274 հազար մեխանիզատոր։ Մասնագիտական կադրերով ամրապնդվել են նաև Հայկական ՍՍՌ կոլտնտեսությունները և սովխոզները, ուր աշխատում են բարձրագույն ու միջնակարգ գյուղատնտեսական կրթությամբ մոտ 5 հազար մասնագետ։

Գյուղատնտեսության համար որակյալ մասնագիտական կադրերի պատրաստման համար անփոխարինելի նշանակություն կունենա «Կյանքի հետ դպրոցի կապի ամրապնդման և ՍՍՌՄ-ում ժողովրդական կրթության սիստեմի հետագա զարգացման մասին» ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընդունած օրենքի կենսագործումը։ Գյուղում կընդլայնվի միջնակարգ այնպիսի դպրոցների ցանցը, որոնք կրթություն են տալիս արտադրությունից չկտրված։ Միջնակարգ հանրակրթական և բարձրագույն դպրոցները կհանդիսանան գյուղը մասնագիտական որակյալ կադրերով ապահովելու, կոլտնտեսային գյուղացիության կուլտուր-տեխնիկական մակարդակի բարձրացման գլխավոր աղբյուրները, որոնք խոշոր դեր կկատարեն քաղաքի և գյուղի միջև եղած էական տարբերության հաղթահարման պրոբլեմի գործնական լուծման պրոցեսում։

Քաղաքի և գյուղի միջև էական տարբերության հաղթահարման պրոցեսը կուղեկցվի գյուղում սոցիալիստական արտադրական հարաբերությունների հետագա զարգացման ու կատարելագործման հետ։ Այդ կարտահայտվի ոչ միայն միջկոլտնտեսային սեփականության զարգացման և միջկոլտնտեսային արտադրական կապերի ընդլայնման, այլև բաշխման հարաբերությունների



բնագավառում։ Կոլտնտեսությունների հանրային տնտեսության զարգացումը և դրամական եկամուտների ավելացումը նոր պայմաններ են ստեղծում, ելնելով յուրաքանչյուր կոլտնտեսության հանրային տնտեսության զարգացման ձեռք բերված մակարդակից, անցնել աշխատանքի կայուն, երաշխավորված դրամական վարձատրության։ Սակայն աշխօրի դիմաց տրվող վարձատրությունը չպետք է գերազանցի բանվորի վաստակից։ ՍՄԿՊ Կենտկոմի Դեկտեմբերյան պլենումի որոշման մեջ նշված է, որ կոլտնտեսությունների աշխատանքի վարձատրությունը չպետք է առաջ անցնի տվյալ շրջանի կամ մարզի բանվորի աշխատավարձի մակարդակից։ Եվ դա հասկանալի է։ Բանվոր դասակարգը և կոլտնտեսային գյուղացիությունը, որոնք համատեղ ստեղծում են երկրի նյութական հարստությունները և կառուցում կոմունիստական հասարակարգ, պետք է համաչափ ընթանան իրենց բարեկեցության բարձրացման գործում։

Կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում կոլտնտեսային սեփականությունը համաժողովրդական սեփականության վերաճելու հիման վրա կվերանան բանվոր դասակարգի և կոլտնտեսային գյուղացիության միջև դեռևս գոյություն ունեցող դասակարգային տարբերությունները, նրանք կդառնան կոմունիստական հասարակարգի միասնական կոլեկտիվի աշխատողներ, նրանց միջև այլևս չի լինի սոցիալ-տնտեսական որևէ տարբերություն։ Կոլտնտեսություններում աշխատանքի վարձատրության դրամական սիստեմի կիրառումը, կոլտնտեսականների և բանվորների վաստակների տարբերության աստիճանաբար վերացումը կհանդիսանա քաղաքի և գյուղի միջև էական տարբերության հաղթահարման պրոցեսի կարևոր նախադրյալներից մեկը։

Քաղաքի և գյուղի միջև էական տարբերության հաղթահարումը չի վերացնի նրանց միջև ամեն մի տարբերություն։ Վ. Ի. Լենինը նկատի ունենալով հողագործության մեջ կատարվող աշխատանքի առանձնահատկությունները, գրում է, որ «...Կան հողագործության առանձնահատկություններ, որոնք բացարձակապես անվերացնելի են...» (Երկեր, հ. 5, էջ 183)։ Կոմունիզմի ժամանակ ոչ էական տարբերությունները կմնան, քանի որ դրանք բխում են արդյունաբերական ու գյուղատնտեսական աշխատանքների բնույթից և բնական պայմաններից։ Սակայն, ոչ էական տարբերությունները կփոխվեն, որովհետև դրանց վրա կազդեն կյանքի և արտադրության նոր պայմանները։

Այսպիսով, կոմունիստական հասարակարգի ծավալուն կառուցման ժամանակաշրջանը նշանավորում է քաղաքի և գյուղի միջև գոյություն ունեցող էական տարբերության հաղթահարման պրոբլեմի գործնական լուծման սկիզբը։ Կոմունիզմի կառուցման այդ բարդ պրոբլեմի լուծումը տեղի կունենա սոցիալիստական հասարակարգի արտադրողական ուժերի հետագա հզոր զարգացման, ինչպես քաղաքում, այնպես էլ գյուղում կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծման, սոցիալիստական արտադրական հարաբերությունների կատարելագործման, քաղաքի և գյուղի աշխատավորների նյութական ու կուլտուրական մակարդակի բուռն վերելքի հիման վրա։

---

# ԱԿՆԱՎՈՐ ԱՍՏՐՈՖԻԶԻԿՈՍԸ ԵՎ ԿՈՍՄՈԳՈՆԻՍՏԸ


Վ. ՍՈԲՈԼԵՎ

ՍՍՌՄ ԳԱ թղթակից-անդամ




Այս տարի Հայկական ՍՍՌ Գիտությունների ակադեմիայի հրատարակությամբ լույս է ընծայվելու ակադեմիկոս Վ. Հ. Համբարձումյանի աշխատությունների երկհատոր ժողովածուն։ Մեր երկրի գիտական հասարակայնությունը մեծ հետաքրքրությամբ է սպասում այդ հրատարակությանը։ Վ. Հ. Համբարձումյանի աշխատությունների ժողովածուն մեծարժեք ներդրում կլինի աստրոֆիզիկայի և, ընդհանրապես, գիտության մեջ։

Վ. Հ. Համբարձումյանի հիմնական աշխատությունները վերաբերում են տեսական աստրոֆիզիկայի բնագավառին, այսինքն՝ այն գիտությանը, որը պարզաբանում է երկնային մարմինների ֆիզիկական կառուցվածքը։ Այդ բնագավառում Վ. Հ. Համբարձումյանի առաջին իսկ աշխատությունները համաշխարհային հռչակ բերին նրան։ Իսկ հետագայում նա մի շարք նոր ուղղություններ ստեղծեց այդ գիտության մեջ։ Վ. Հ. Համբարձումյանը իրավամբ համարվում է նաև սովետական տեսական աստրոֆիզիկայի հիմնադիրը։

Սակայն Վ. Հ. Համբարձումյանի աշխատությունները նշանակություն ունեն ո՛չ միայն աստրոֆիզիկոսի համար։ Դրանցից շատերում այնպիսի ընդհանուր խնդիրներ են լուծված, որ այդ աշխատությունների արդյունքները կիրառվում են նաև այլ գիտություններում՝ օպտիկայում, գեոֆիզիկայում, մաթեմատիկական ֆիզիկայում և այլն։ Բայց նրա աշխատություններն առանձնապես մեծ նշանակություն ունեն կոսմոգոնիայի համար։ Դրանցից



մի քանիսն անմիջականորեն նվիրված են աստրոնոմիական գիտություններից այդ կարևորագույն և ամենահետաքրքրական գիտությանը։

Ինչպես հայտնի է, կոսմոգոնիան զբաղվում է երկնային մարմինների ծագման ու զարգացման ուսումնասիրությամբ։ Կոսմոգոնիան պետք է պատասխանի այսպիսի հարցերի. ինչպե՞ս են ծագել Արեգակը և մոլորակները, ո՞րն է նրանց անցյալը և ապագան, ինչպե՞ս են ծագել աստղերը և աստղային սիստեմները և այլն։ Այս բոլոր հարցերը խորապես հուզում են ո՛չ միայն մասնագետ աստրոնոմներին, այլև ամբողջ մարդկությանը։

Մինչև վերջին ժամանակներս կոսմոգոնիան սոսկ առանձին հիպոթեզների ժողովածու էր՝ գլխավորապես արեգակնային սիստեմի ծագման մասին։ Անցյալ տարի և այս տարվա սկզբին շատ գիտնականներ տարբեր ենթադրություններ էին անում այն հարցի շուրջ, թե ինչպես կարող էր առաջանալ արեգակնային սիստեմը, բայց նրանցից ոչ մեկը ի վիճակի չէր ապացուցելու, թե այն առաջացել է, հատկապես, այս կամ այն կերպ։ Դա բացատրվում էր նրանով, որ այն ժամանակ աստրոնոմիան և ֆիզիկան բավականաչափ զարգացած չէին։ Սակայն վերջին տասնամյակների ընթացքում դրությունն այդ բնագավառում խիստ փոխվել է։ Աստրոնոմիան կուտակել է վիթխարի քանակությամբ փաստեր, որոնցից կարելի է կոսմոգոնիական հետևություններ անել։ Ֆիզիկան էական հաջողություններ է ունեցել նյութի բնույթի ճանաչողության մեջ։ Աստրոնոմիայի և ֆիզիկայի այս նվաճումները հնարավորություն տվին նոր ձևով մոտենալու կոսմոգոնիական պրոբլեմներին։ Կոսմոգոնիան սկսեց զարգանալ, ինչպես զարգանում են մյուս բոլոր գիտությունները՝ ոչ թե շատ թե քիչ կամայական հիպոթեզների քննությամբ, այլ փաստերի ուսումնասիրման միջոցով։ Վ. Հ. Համբարձումյանի երախտիքն այն է, որ նա առաջիններից մեկն էր, որ սկսեց նոր կոսմոգոնիայի կառուցումը և այդ շենքի կառուցման մեջ նա ամենամեծ ներդրումն է արել։

Ներկա հոդվածում մենք կփորձենք համառոտակի պատմել Վ. Հ. Համբարձումյանի այն աշխատությունների մասին, որոնք նվիրված են կոսմոգոնիային կամ անմիջականորեն նրա հետ կապված գիտություններին։ Նրա մյուս աշխատությունները (որոնք ոչ պակաս, գուցե և ավելի կարևոր են) մենք ստիպված ենք մեր տեսադաշտից դուրս թողնել։

## ԱՍՏՂԵՐԻ ԵՎ ԱՄՊԱՄԱԾՈՒԹՅԱՆ ՖԻԶԻԿԱՆ

Ինչպես հայտնի է, տիեզերքի՝ մեր դիտած մասը բաղկացած է վիթխարի աստղային սիստեմներից, այսպես կոչված՝ գալակտիկաներից, որոնց մեջ միլիարդավոր աստղեր են մտնում։ Մեր գալակտիկան (որի մեջ մենք ապրում ենք) առավել խոշոր աստղային սիստեմների թվին է պատկանում. նրա մեջ մոտավորապես հարյուր միլիարդ աստղ կա։ Այդ աստղերից մեկն էլ Արեգակն է։ Արեգակի շուրջը մոլորակներ են պտտվում, այդ թվում նաև Երկիրը։ Շատ հավանական է, որ ուրիշ շատ աստղերի շուրջն էլ մոլորակներ են պտտվում, սակայն ժամանակակից աստղադիտակներով դրանք տեսնել չի կարելի։ Բայց գալակտիկայի մեջ բացի աստղերից մտնում են նաև գազի և փոշու շատ երկարաձիգ, նոսր զանգվածներ՝ ամպամածություններ։ Խնդիրը շատ էլ չպարզեցնելով կարող ենք ասել, որ տիեզերքը (նրա այն մասը, որ մատչելի

է մեր դիտողությանը) բաղկացած է աստղերից և ամպամածություններից։

Աստղերը լույս են արձակում ի հաշիվ այն էներգիայի, որ ստացվում է նրանց ընդերքում։ Ամպամածությունները լույս են արձակում ի հաշիվ աստղերից ստացվող էներգիայի։ Ըստ որում փոշե ամպամածությունները պարզապես ցրում են աստղերից եկող ճառագայթումը, իսկ գազային ամպամածությունները այն վերամշակում են։ Առանձնապես հետաքրքրական է, որ գազային ամպամածությունները կլանում են աստղերի այն ճառագայթումը, որ մեզ համար անտեսանելի է, բայց էներգիան բաց են թողնում սպեկտրի տեսանելի շրջանը։ Դա հնարավորություն է տալիս ամպամածության տեսանելի լուսավորումով դատել աստղերի անտեսանելի ճառագայթման մասին։

Վ. Հ. Համբարձումյանի երախտիքի մեծությունն այն է, որ նա տվել է գազային ամպամածությունների լուսավորման պրոցեսների մաթեմատիկական ճշգրիտ մեկնաբանությունը։ Դրա հիման վրա նա առաջարկել է մի մեթոդ, որով կարելի է որոշել ամպամածությունների լուսավորում առաջացնող աստղերի ջերմաստիճանը և հենց ամպամածությունների ջերմաստիճանը։ Նա սահմանել է, որ ամպամածությունների դինամիկայի մեջ հսկայական դեր է խաղում ճառագայթման ճնշումը։ Նա տվել է նաև գազային ամպամածությունների զանգվածը որոշելու մեթոդ։

Առայժմ մեզ համար պարզ չէ, թե գալակտիկայում ինչ եղանակով են երևան գալիս ամպամածությունները։ Միայն մի քանի ամպամածությունների նկատմամբ այդ ուղին հայտնի է. նրանք ծագում են անկայուն աստղերի միջից նյութի դուրս նետման հետևանքով։ Որոշ դեպքերում նյութի դուրս նետումը տեղի է ունենում պայթյունի ձևով։ Ընդ որում դուրս նետված նյութն այնքան պայծառ է լուսավորվում, որ այդ ամբողջ երևույթը դիտվում է որպես «նոր» աստղի բռնկում։ Երբեմն էլ երկար ժամանակամիջոցում նյութի անընդհատ հոսք է տեղի ունենում աստղից։ Անկայուն աստղերի լուսավորման թեորիան նույնպես մշակել է Վ. Հ. Համբարձումյանը։ Նա, մասնավորապես, որոշել է աստղից դուրս նետվող նյութի քանակը։ Պարզվել է, որ «նոր» աստղի բռնկման ժամանակ դուրս է նետվում երկրի զանգվածին հավասար զանգված։ Որոշ անկայուն աստղեր անընդհատ հոսքի հետևանքով մոտավորապես նույնքան զանգված են կորցնում մեկ տարվա ընթացքում։

Ամպամածությունների և անկայուն աստղերի ուսումնասիրությունը աստրոֆիզիկայի համար վիթխարի հետաքրքրություն է ներկայացնում ամենաբազմապիսի տեսակետներից։ Նրանց ուսումնասիրությունը հարուստ նյութ է տալիս նաև կոսմոգոնիայի համար։ Հենց միայն վերը նշած այն փաստից, որ որոշ անկայուն աստղեր տարվա ընթացքում կորցնում են երկրի զանգվածին հավասար զանգված, հետևում է, որ աստղերը անկայուն վիճակում մեկ միլիոն տարուց ավելի մնալ չեն կարող։ Իսկ այդ ժամանակամիջոցը աստղերի կյանքի տևողության համեմատությամբ շատ փոքր է։ Այսպիսով, անկայուն աստղի փուլը նշանակում է աստղի շատ արագ, «թռիչքաձև» անցում մեկ կայուն վիճակից մյուսը։ Իսկ բնության մեջ տեղի ունեցող «թռիչքների» ուսումնասիրությունը միշտ էլ շատ կարևոր հետևությունների է հանգեցրել։ Ուստի և անկայուն աստղերը Վ. Հ. Համբարձումյանի մանրակրկիտ ուշադրությանն են արժանացել նրա գիտական գործունեության դեռ սկզբնական շրջանում։



## ԱՍՏՂԱՅԻՆ ՍԻՍՏԵՄՆԵՐԻ ՎԻՃԱԿԱԳՐԱԿԱՆ ՄԵԽԱՆԻԿԱՆ

Գալակտիկայում աստղերն անդադար շարժման մեջ են գտնվում, ըստ որում յուրաքանչյուր աստղ շարժվում է մյուս բոլոր աստղերի ձգողականության ներգործությամբ։ Քանի որ ձգողական ուժը նվազում է աստղերի միջև եղած հեռավորության քառակուսու հակադիր համեմատականությամբ (Նյուտոնի օրենքի համաձայն), ապա տվյալ աստղի շարժման վրա շատ մեծ ազդեցություն է տնենում նրան ամենամոտ աստղերի ձգողականությունը։ Բայց ավելի հեռավոր աստղերի ազդեցությունը ևս մեծ է, որովհետև այդպիսի աստղեր խիստ շատ կան։ Տվյալ աստղի վրա ներգործող ձգողական ուժը (մանավանդ մերձավոր աստղերից եկող ձգողական ուժը) զգալի չափով պատահական բնույթ է կրում։ Ուստի և գալակտիկաներում աստղերի շարժումն ուսումնասիրելու համար կիրառում են վիճակագրական մեթոդներ։

Աստղաբաշխության մեջ խոշոր ներդրում եղավ այն, որ Վ. Հ. Համբարձումյանը մշակեց աստղային սիստեմների վիճակագրական մեխանիկայի հիմունքները։ Նա վիճակագրական մեթոդները կիրառեց մեր գալակտիկայի մեջ մտնող աստղային սիստեմների նկատմամբ և այստեղից կարևոր կոսմոգոնիական հետևություններ արեց։

Աստղային սիստեմներից պարզագույնը, այսպես կոչված՝ «Կրկնակի աստղ»-ն է, այսինքն՝ այն սիստեմը, որը բաղկացած է ընդամենը երկու աստղից։ Մեր գալակտիկայում կրկնակի աստղեր խիստ շատ կան (աստղերի ընդհանուր թվի մոտավորապես մեկ երրորդ մասը)։ Կրկնակի սիստեմ կազմող աստղերը միմյանց նկատմամբ շարժվում են էլիպսային օրբիտայով, որ պայմանավորված է նրանց փոխադարձ ձգողականությամբ։ Սակայն մոտով անցնող մյուս աստղերը իրենց ձգողականությամբ այդ օրբիտաների փոփոխություն են առաջացնում։ Վիճակագրորեն կարելի է կրկնակի աստղերի օրբիտաների տեղաբաշխումը գտնել առավել հավանական դեպքում (այսինքն՝ երբ հիշյալ փոփոխությունները փոխադարձաբար փոխհատուցվում են) և թեորիան համեմատել դիտողությունների հետ։ Այդ համեմատությունից հետևում է, որ կրկնակի աստղերի օրբիտաների առավել հավանական բաշխում իրականում տեղի չի ունենում։ Մինչդեռ առավել հավանական բաշխման հասնելու համար պահանջվում է ոչ ավելի, քան մի քանի միլիարդ տարի։ Այստեղից Վ. Հ. Համբարձումյանը հետևություն է արել, որ մեր գալակտիկայում աստղերի կյանքի երկարությունը վերոհիշյալ ժամանակից ավելի լինել չի կարող։

Վ. Հ. Համբարձումյանը նույնպիսի հետևության է հանգել գալակտիկայում եղած կրկնակի և միայնակ աստղերի թվի համեմատության ուսումնասիրումով։ Աստղերն իրար մոտենալու դեպքում կարող է պատահել, որ կրկնակի աստղերը դառնան միայնակ և միայնակները՝ կրկնակի։ Թեորիան հնարավորություն է տալիս որոշելու կրկնակի աստղերի բաժինը՝ առավել հավանական բաշխման դեպքում։ Պարզվում է, որ այդ բաժինը շատ ավելի փոքր է կրկնակի աստղերի այն բաժնից, որ ստացվում է դիտողություններից։ Հետևապես, առավել հավանական բաշխումը դեռևս չի սահմանվել։ Այստեղից նորից հետևում է, որ մեր գալակտիկայում աստղերի հասակը պակաս է առավել հավանական բաշխման սահմանման ժամանակից, այսինքն՝ մի քանի միլիարդ տարուց չի գերազանցում։

Վ. Հ. Համբարձումյանը կատարել է նաև ավելի բարդ աստղերի սիստեմների՝ հարյուր հազարավոր աստղերից բաղկացած «աստղային կուտակումների» վիճակագրական հետազոտություն։ Այդ կուտակումների աստղերի փոխներգործության շնորհիվ նրանցից մի քանիսը ավելի մեծ արագություն են ստանում և կուտակումից հեռանում։ Այդ պրոցեսը հասցնում է կուտակումների քայքայման։ Թեորիան հնարավորություն է տալիս որոշելու կուտակումների կիսաքայքայման ժամանակը (այսինքն այն ժամանակը, որի ընթացքում կուտակումի մեջ աստղերի թիվը կրկնակի չափով նվազում է)։ Սակայն բազմաթիվ փաստեր ցույց են տալիս, որ կուտակումների քայքայման պրոցեսը շատ էլ հեռու չի գնացել։ Թեորետիկական և դիտողական տվյալների համադրումից դարձյալ ստացվում է աստղերի հասակի վերը նշված գնահատականը։

Այսպիսով, Վ. Հ. Համբարձումյանի աշխատությունների համաձայն աստղերի հասակը մի քանի միլիարդ տարվա է հասնում։ Երբ այս արդյունքները հրապարակվեցին, աստղագետների համար դրանք բոլորովին անընդունելի թվացին։ Այն ժամանակ տիրապետում էր այն կարծիքը, թե աստղերի հասակը շատ ավելի մեծ է (մոտավորապես հազար անգամ)։ Սակայն աստիճանաբար կուտակվեցին նորանոր փաստեր, որոնք հաստատեցին Վ. Հ. Համբարձումյանի հայացքները, և ներկայումս դրանք ընդունված են ընդհանուրի կողմից։

## ԱՍՏՂԵՐԻ ԾԱԳՄԱՆ ՊՐՈԲԼԵՄԸ

Վերն արդեն ասացինք, որ մեր գալակտիկայում աստղերի հասակը հասնում է մի քանի միլիարդ տարվա։ Հասկանալի է, որ սա աստղերի միջին հասակն է. կան ավելի երիտասարդ և ավելի ծեր աստղեր։ Այս կապակցությամբ ծագում են մի շարք հարցեր. ո՞ր աստղերն են ավելի երիտասարդ, ե՞րբ են առաջացել նրանք, և արդյոք ներկայումս աստղեր չե՞ն առաջանում։ Այս հարցերի պատասխանները նույնպես տրված են Վ. Հ. Համբարձումյանի աշխատություններում։

1949 թվականին Վ. Հ. Համբարձումյանն ավարտեց իր աշխատություններից մեկը, որ նվիրված էր «աստղային ասոցիացիաներին»։ Այսպիսի անուն էր տվել նա իր հայտնագործած հատուկ տիպի աստղային սիստեմներին, որ հետո Բ. Ե. Մարգարյանի հետ միասին մանրամասնորեն ուսումնասիրեց։ Աստղային ասոցիացիաներում որոշ սպեկտրալ դասի աստղերի խտությունը շատ ավելի է շրջապատի տարածության այդպիսի աստղերի խտությունից, թեև աստղերի ընդհանուր խտությամբ նրանք երկնքում չեն էլ աչքի ընկնում։ Հաշիվները ցույց են տվել, որ ասոցիացիաները շատ անկայուն են և պետք է արագորեն քայքայվեն (մի քանի միլիոն տարվա ընթացքում)։ Բայց մինչև այժմ նրանք չեն քայքայվել։ Այստեղից կարելի է հետևություն անել, որ ասոցիացիաների հասակը (ուրեմն և նրանց մեջ մտնող աստղերի հասակը) մի քանի միլիոն տարուց չի գերազանցում։ Այս հետևությունը հաստատվում է մի շարք այլ նկատառումներով ևս։

Մենք տեսնում ենք, որ ասոցիացիայի մեջ մտնող աստղերի հասակը մոտավորապես հազար անգամ փոքր է մեր գալակտիկայի աստղերի միջին հասակից, այսինքն՝ շատ փոքր է։ Որպես օրինակ կարելի է նշել, որ եթե



մարդու միջին հասակը 50 տարի է, ապա այդ հասակի մեկ հազարերորդ մասը կկազմի ընդամենը մոտ երկու շաբաթ։ Այսպիսով ասոցիացիայի մեջ մտնող աստղերը լիակատար իրավունքով կարելի է համարել «նորածին»։

Աստղային ասոցիացիաների ուսումնասիրությունը իրավունք է տվել կոսմոգոնիական բնույթի երկու կարևոր հետևություն անել.

Նախ՝ պարզվել է, որ աստղերը ծնվում են խմբերով (ասոցիացիաներով)։ Ասոցիացիաները բավական արագ քայքայվում են, և նրանց կազմի մեջ մտնող աստղերը խառնվում են առաջներում գոյացած ուրիշ աստղերի։ Կարելի է մտածել, որ այդ «ուրիշ» աստղերն էլ գոյացել են առաջներում գոյություն ունեցած ասոցիացիաների մեջ։

Երկրորդ՝ պարզվել է, որ աստղերի գոյացման պրոցեսը շարունակվում է նաև այժմ։ Այս հետևությունը իդեոլոգիական մեծ նշանակություն ունի, որովհետև Արևմուտքում դեռևս տեղ-տեղ տարածված է այն կարծիքը, թե բոլոր աստղերը (ինչպես և ամբողջ տիեզերքը) ծագել են միաժամանակ, միանման «արարչագործության» հետևանքով։

Շատ հետաքրքրական է, որ ասոցիացիաների մեջ շատ անկայուն աստղեր են մտնում։ Ինչպես վերն ասացինք, այդ աստղերը «թռիչքաձև» անցում են կատարում մեկ կայուն վիճակից մյուսը։ Այժմ մենք կարող ենք ասել, որ այդ «թռիչքը» նշանակում է նյութի մինչաստղային վիճակից անցում կատարել դեպի նյութի աստղային վիճակը։

Չափազանց դժվար է այն հարցը, թե ինչ բնույթ ունի մինչաստղային նյութը, այսինքն՝ այն նյութը, որից գոյանում է աստղը։ Շատ աստղաբաշխներ գտնում են, թե աստղերը ծագում են ամպամածությունների խտացման ժամանակ, բայց այդ ենթադրության իրավացիության ապացույց չկա։ Ընդհակառակն, հայտնի է, որ որոշ ամպամածություններ առաջանում են աստղերից արտահոսք տեղի ունենալու հետևանքով։ Վ. Հ. Համբարձումյանը ասոցիացիաների ուսումնասիրությամբ զբաղվելով այն հիպոթեզն է արտահայտել, որ աստղերը ծագում են ավելի պինդ մարմիններից, որոնց քայքայումն էլ հասցնում է ասոցիացիաների առաջացման։ Այս հիպոթեզը դեռևս ապացուցված համարվել չի կարող, բայց հաստատվում է մի շարք փաստերով։

Համեմատաբար վերջերս (1954 թվականին) Վ. Հ. Համբարձումյանի ուշադրությունը գրավեց ասոցիացիաների մեջ մտնող որոշ աստղերի մի զարմանալի առանձնահատկությունը։ Այդ աստղերը շատ կարճ ժամանակամիջոցում (երբեմն մի քանի րոպեի ընթացքում) իրենց պայծառությունը մեծացնում են մի քանի անգամ։ Պայծառության փոփոխությունը ուղեկցվում է աստղի սպեկտրի էական փոփոխությամբ։ Այս փոփոխությունները չեն կարող բացատրվել աստղերի լուսավորման սովորական մեխանիզմի գործողությամբ, այսինքն՝ աստղի ընդերքում էներգիայի արտադրությամբ և այն որպես ճառագայթում դուրս բերելով։ Հարկ է լինում ենթադրել, որ այս դեպքում մենք գործ ունենք աստղերի լուսավորման մի այլ աղբյուրի հետ։ Վ. Հ. Համբարձումյանի ենթադրությամբ բռնկող աստղերի լուսավորումը առաջանում է աստղային ընդերքից որոշ նյութի դուրս նետումով և նրա մեջ, աստղի արտաքին շերտերում պարփակված էներգիայի ազատումով։ Քանի որ այդ աստղերը պետք է համարել նորածագ, ապա Վ. Հ. Համբարձումյանը ենթադրում է, որ լուսավորման նրանց աղբյուրը մինչաստղային նյութն է, որը դեռևս չի հասցրել քայքայվել աստղի ներսում։

Ներկայումս աստղային ասոցիացիաների և նրանց մեջ մտնող աստղերի ֆիզիկական բնույթի ուսումնասիրությամբ զբաղվում են զանազան երկրների բազմաթիվ աստղաբաշխներ։ Վ. Հ. Համբարձումյանի գծած ուղղությունը ժամանակակից աստղաբաշխության մեջ կենտրոնական ուղղություններից մեկն է դարձել։ Պետք է նշել, որ աստրոֆիզիկայի այդ բնագավառում իրենց աշխատություններով մեծ ներդրում են արել Բյուրականի աստղադիտարանի աշխատակիցներ Գ. Ա. Գուրզադյանը, Բ. Ե. Մարգարյանը, Լ. Վ. Միրզոյանը, Է. Է. Խաչիկյանը և ուրիշներ։

## ԳԱԼԱԿՏԻԿԱՆԵՐԻ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՊՐՈԲԼԵՄԸ

Վերջին ժամանակներս Վ. Հ. Համբարձումյանը աստղերի ուսումնասիրությունից անցել է գալակտիկաների ուսումնասիրությանը։ Ինչպես արդեն ասացինք, գալակտիկաները միլիոնավոր աստղերից բաղկացած աստղային սիստեմներ են։ Գալակտիկաների չափն այնքան է մեծ, որ վայրկյանում 300000 կիլոմետր արագությամբ տարածվող լույսը գալակտիկայի մի ծայրից մյուսն է անցնում հազարամյակների ընթացքում։

Ներկայումս աստղաբաշխներին հայտնի են հսկայական թվով գալակտիկաներ։ Թեև նրանք մեզանից չափազանց հեռու են գտնվում (նրանցից լույսը մեզ է հասնում միլիոնավոր տարիների ընթացքում), բայց և այնպես ժամանակակից խոշոր աստղադիտարանների օգնությամբ հաջողվում է ուսումնասիրել գալակտիկաների կառուցվածքը, ստանալ նրանց սեկտրները, որոշել նրանց արագությունը տարածության մեջ։ Չնայած դրան, մինչև վերջին ժամանակներս պարզ չէր, թե ինչպես է տեղի ունենում գալակտիկաների զարգացումը։ Ահա հենց այդ խնդրի լուծմանն էլ նվիրված են Վ. Հ. Համբարձումյանի վերջին ժամանակներիս աշխատությունները։

Մենք արդեն ասացինք, որ մեր գալակտիկայում միայնակ աստղերի կողքին կան և կրկնակի ու բազմակի աստղեր, ինչպես նաև աստղային կուտակումներ։ Մոտավորապես այդպես է դրությունը նաև գալակտիկայի աշխարհում, այնտեղ ևս գոյություն ունեն բազմակի գալակտիկաներ ու կուտակումներ, որոնք բաղկացած են մեծ թվով գալակտիկաներից։ Վ. Հ. Համբարձումյանի թեորիական հետազոտությունները ցույց են տվել, որ աստղերի միմյանց հանդիպելուց աստղային խմբերի առաջացման հավանականությունը բոլորովին չնչին է և որ իրականում տեղի է ունենում աստղային խմբերի բաժանում՝ առանձին-առանձին աստղերի։ Պարզվում է, որ այդպես է ընթանում նաև գալակտիկաների զարգացումը, գալակտիկաները գոյանում են խմբերով և հետո տեղի է ունենում այդ խմբերի բաժանում՝ առանձին-առանձին գալակտիկաների։

Ինչպես դիտումները ցույց են տալիս, գալակտիկաները կենտրոնացած են առավելապես խմբերով։ Դա նշանակում է, որ գալակտիկաների զարգացումը դեռ քիչ է առաջ գնացել։ Ուստի և կարելի է հուսալ, որ ուսումնասիրվող հսկայական թվով գալակտիկաների մեջ կարելի է հայտնաբերել այնպիսիները, որոնք գտնվում են իրենց զարգացման ամենավաղ փուլում։ Եվ Վ. Հ. Համբարձումյանը նշել է գալակտիկաների հենց այդպիսի տիպեր։

Ներկայումս աստղաբաշխների ուշադրությունը գրավում է ռադիոգալակտիկան, այսինքն՝ այն գալակտիկաները, որոնք ուժեղ ռադիոճառագայթման



աղբյուր են հանդիսանում։ Ռադիոգալակտիկաներից մի քանիսը ուժեղ աստղադիտակների օգնությամբ մանրամասն ուսումնասիրվել են։ Պարզվել է, որ նրանք բաղկացած են փոխադարձաբար միմյանց մեջ թափանցող երկու գալակտիկաներից։ Սկզբում աստղաբաշխները կարծում էին, թե այս դեպքում մենք գործ ունենք գալակտիկաների բախման հետ։ Սակայն Վ. Հ. Համբարձումյանը ցույց տվեց, որ դա սխալ կարծիք է և որ իրականում տեղի է ունենում գալակտիկաների բաժանում։ Գալակտիկաների բաժանման պրոցեսը շատ բուռն բնույթ է կրում և դրան զուգորդում են ուրիշ շատ երևույթներ, այդ թվում նաև ուժեղ ռադիոճառագայթում։ Համարյա մեր աչքի առաջ ծագող երկու գալակտիկաները, ակներևաբար, պետք է համարվեն շատ երիտասարդ գոյացումներ։

Վ. Հ. Համբարձումյանը ուշադրություն է դարձրել նաև որոշ գալակտիկաների արտասովոր արբանյակների վրա։ Դրանք խիստ արտահայտված երկնագույն երանգ ունեն և ըստ երևույթին, բաղկացած են շատ թեժ աստղերից ու աստղամիջյան գազից։ Վ. Հ. Համբարձումյանի կարծիքով այդ երկնագույն արբանյակները համեմատաբար վերջերս են դուրս նետվել գալակտիկաներից և իրենց հերթին հանդիսանում են երիտասարդ գալակտիկաներ։

Պետք է ընդգծել, որ գալակտիկաներն ուսումնասիրելիս մենք վկա ենք լինում տիեզերքում տեղի ունեցող ամենահոյակապ պրոցեսների։ Ուստի և գալակտիկայի ուսումնասիրությունը աստրոֆիզիկայի և կոսմոգոնիայի համար հսկայական հետաքրքրություն է ներկայացնում։ Դրա հետ միասին այդ ուսումնասիրությունը հնարավորություն է տալիս ավելի խոր ըմբռնելու նյութի զարգացման հիմնական օրենքները, այսինքն՝ դա փիլիսոփայական խոշոր նշանակություն ունի։

# ԲԵՐՔԱՏՎՈՒԹՅԱՆ ԲԱՐՁՐԱՑՄԱՆ ԿԱՐԵՎՈՐ ՊԱՅՄԱՆԸ

Ռ. ԱԲՐԱՀԱՄՅԱՆ

Մեր երկրի գյուղատնտեսության հետագա զարգացման հոյակապ ծրագիրը, որ մշակել է Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XXI համագումարը, նախատեսում է գյուղատնտեսական արտադրանքի արտադրության այնպիսի մակարդակ, որը հնարավորություն կտա լիովին բավարարելու պարենի նկատմամբ բնակչության, հումքի նկատմամբ արդյունաբերության պահանջմունքները։ Այդ ծրագրի իրականացումը հնարավորություն կտա յոթնամյակի վերջում մեր երկրում վերջնականապես լուծելու բնակչության մեկ շնչին ընկնող գյուղատնտեսական արտադրանքի արտադրությամբ ԱՄՆ-ին հասնելու խնդիրը և պայմաններ կստեղծի հետագայում ավելի առաջ անցնելու համար։

Կոլտնտեսություններն ու սովխոզները բոլոր հնարավորություններն ունեն պատվով կատարելու պարտիայի կողմից առաջադրված խնդիրները։ Գյուղատնտեսության տեխնիկական հագեցվածությունը, մեծ չափերով հանքային և օրգանական պարարտանյութերի օգտագործումը, գիտության նվաճումների և առաջավոր փորձի արմատավորումը թույլ են տալիս վճռականորեն բարձրացնելու գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը։

Գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության բարձրացման կարևոր միջոցներից է բարձրորակ սորտային սերմով ցանք կատարելը։ Յուրաքանչյուր տնտեսություն կարող է ցանքը կատարել տեսակավոր, շրջանացված բարձրարժեք սորտերի սերմով և այդպիսով 25—30 տոկոսով բարձրացնել բերքատվությունը։ Ահա թե ինչու գյուղատնտեսության աշխատողների կարևորագույն խնդիրներից մեկը տեսակավոր սերմերի լայն արտադրության կազմակերպումն է։

Տեսակավոր սերմերի արտադրությունը եղել և մնում է մեր պարտիայի ու կառավարության հոգատարության առարկան։ Դեռևս 1921 թվականին Վ. Ի. Լենինը ստորագրում է սերմնաբուծության մասին Սովետական կառավարության առաջին դեկրետը, որում ընդգծվում է սորտային սերմերով ցանք կատարելու կարևորագույն նշանակությունը հատիկի արտադրության ավելացման գործում և նախատեսվում տեսակավոր սերմերի մասսայական արտադրությունն ու տարածումը մեր երկրում։ Ահա այդ օրվանից մեր երկրում դրվեց սերմնաբուծության միասնական սիստեմի ստեղծման հիմքը։ Հետագայում կոլտնտեսային կարգի հաղթանակը հնարավորություն տվեց ավելի լայն մասշտաբով և գիտական բարձր մակարդակով կազմակերպելու սերմնաբուծությունը՝ կոլտնտեսությունների ու սովխոզների պահանջը տեսակավոր սերմերի նկատմամբ ավելի մեծ չափերով բավարարելու համար։ Սերմնաբուծության և սելեկցիայի գործը գիտական հիմքերի վրա դնելու շնորհիվ, ինչպես Միության մեջ, այնպես էլ մեր ռեսպուբլիկայում խոշոր հաջողություններ ձեռք բերվեցին տեսակավոր սերմի ցանքատարածությունների ընդարձակման գործում։

Երկրորդ հնգամյակի վերջում մեր ռեսպուբլիկայում աշնանացան ցորենի սորտային ցանքերը կազմեցին ընդհանուր ցանքատարածության 17—18 տոկոսը, իսկ գարնանացան ցորենինը՝ 7 տոկոսից քիչ ավելի։ Սորտային ցանքերի հագեցվածությամբ ներկայումս մեր ռեսպուբլիկան Միության մեջ գրավում է առաջին տեղերից մեկը։ Վերջին հնգամյակում աշնանացան ցորենի սորտային ցանքերը ռեսպուբլիկայում կազմել են 97, իսկ գարնանացան ցորենինը՝ 84 տոկոս։ Այժմ ռեսպուբլիկայում շրջանացված են աշնանացան ցորենի 16 և գարնանացան ցորենի 5 սորտ, որոնցից յոթը տեղական հնագույն, ինը՝ սելեկցիոն սորտեր, որոնք բուծվել, մաքրվել կամ լավացվել են մեր ռեսպուբլիկայում։ Դրանցից հիշատակման արժանի են Արտաշատի 42-ը, արմյանկան, նովոուկրաինկա 83-ը, կարմիր ալֆահատը, նոր կունդիկը և այլն։ Ռեսպուբլիկայի զանազան գյուղատնտեսական գոտիներում մշակելու համար բավականին շատ սորտեր են շրջանացված նաև մնացած գյուղատնտեսական կուլտուրաների գծով։

Ռեսպուբլիկայում գյուղատնտեսական կուլտուրաների սերմնաբուծությամբ վերջին տարիների ընթացքում զբաղվում են հացահատիկային կուլտուրաների գծով 33, եգիպտացորենի գծով՝ 17 կոլտնտեսություններ։ Բազմամյա խոտաբույսերի սերմնաբուծությամբ զբաղվում են 17, բանջարաբոստանային կուլտուրաների սերմնաբուծությամբ՝ 21 կոլտնտեսություն։ Սերմնաբուծությամբ են զբաղվում նաև Երկրագործության գիտա-հետազոտական ինստիտուտը, Լենինականի պետական սելեկցիոն կայանը, Անասնաբուծական-անասնաբուժական գիտա-հետազոտական ինստիտուտի Կալինինոյի հենակետը։ Ռեսպուբլիկայում բազմամյա կուլտուրաների տնկիներ են աճեցնում յոթ տնկարանային տնտեսություն, որոնք յուրաքանչյուր տարի տնկանյութ են մատակարարում 2500—3000 հեկտար խաղողի և 2500 հեկտար պտղատու այգիներին։

Չնայած հացահատիկային ցանքերի բարձր սորտային հագեցվածությանը, մեր ռեսպուբլիկայում իրականում տեսակավոր սերմերով կատարվող ցանքերը իրենցից ներկայացնում են խառնուրդներ։ Դրա պատճառն այն է, որ սերմերը ժամանակին չեն թարմացվում, առանձնացված սերմնադաշտերում սորտային քաղհան չի կազմակերպվում, ինչպես նաև բերքահավաքի, կալման ու պահեստավորման ժամանակ խառնուրդ է թույլ տրվում։ Կարելի է բերել բազմաթիվ օրինակներ, երբ սերմնաբուծական տնտեսություններից ստացված տեսակավոր սորտի սերմացուն շատ քիչ ժամանակ անց կոլտնտեսություններում աղբոտվում է զանազան խառնուրդներով և կորցնում իր արժեքավոր հատկությունները։ Հաճախ կոլտնտեսություններն ու սովխոզները սերմնաբուծական տնտեսություններից ստանալով տեսակավոր սերմացու, այսինքն՝ տվյալ գոտու պայմանների համար շրջանացված սորտի սերմացու, սպասվող արդյունքը չեն ստանում, որովհետև վատ են կազմակերպում դրա մշակությունն ու խնամքը։ Վատ ագրոտեխնիկայի և վատ խնամքի պայման-

ներում սերմերը ո՛չ միայն չեն պահպանում իրենց տնտեսական արժեքավոր հատկանիշները, այլև գնալով աստիճանաբար կորցնում են դրանք ու անպետքանում։

Այն տնտեսությունները, որոնք յուրաքանչյուր տարի ցանքը կատարում են տեսակավոր սերմերով և ապահովում են նրանց լավ մշակությունը, միշտ բարձր ու կայուն բերք են ստանում։ Դրանց թվին է պատկանում Բասարգեչարի շրջանի Նորակերտի կոլտնտեսությունը, որտեղ հացահատիկային կուլտուրաների միջին բերքատվությունը վերջին հինգ տարում կազմում է 20—22 ցենտներ։ Նույնը կարելի է ասել նաև Մեծ Մազրայի, Ղարախմանի և այլ կոլտնտեսությունների մասին։ Տևականորեն բարձր բերք են ստանում նաև Արթիկի շրջանից՝ Վարդաքարի, Ախուրյանի շրջանից՝ Ղարիբջանյանի, Սիսիանի շրջանից՝ Նորավանի, Ստեփանավանի շրջանից՝ Կիրովի, Շամշադինի շրջանից՝ Մովսեսի, Սպիտակի շրջանից՝ Հարթագյուղի, Թալինի շրջանից՝ Արեգի կոլտնտեսությունները։

Սիստեմատիկորեն զբաղվելով սերմնաբուծությամբ՝ հեկտարից 55—65 ցենտներ կորնգանի չոր խոտի միջին բերք են ստանում Մարտունու շրջանից՝ Վարդենիկ, Վաղաշեն, Գորիսի շրջանից՝ Խնձորեսկ, Խանածախ, Սիսիանի շրջանից՝ Նորավան, Սիսիան, Հրազդանի շրջանից՝ Աթարբեկյան, Սոլակ, Ստեփանավանի շրջանից՝ Հոբարձի, Կուրթան, Գյուլագարակ և շատ այլ կոլտնտեսություններ։ Իսկ շատ կոլտնտեսություններ էլ հեկտարից ստանում են 110—125 ցենտներ առվույտի խոտ։ Դրանցից են. Էջմիածնի շրջանից՝ Լենինի անվան, Այգեշատ, Հոկտեմբերյանի շրջանից՝ Նորապատ, Նալբանդյան, Արտաշատի շրջանից՝ Մխչյան, Վեդու շրջանից՝ Շիրազլու, Այգևան և այլ կոլտնտեսություններ։ Զգալի աշխատանք է կատարվել բանջարա-բոստանային կուլտուրաների տեսակավոր սերմացուների ստեղծման ուղղությամբ. սոխի, պոմիդորի, ձմերուկի և այլ կուլտուրաների բարձր բերք են ստանում Հոկտեմբերյանի շրջանից՝ Բամբակաշատ, Ջանֆիդա, Արգավանդ, Արևիկ, Արտաշատի շրջանից՝ Մասիս, Էջմիածնի շրջանից՝ Լենինի անվան, Ն. Խաթունարխի, Կոտայքի շրջանից՝ Էլար, Ախուրյանի շրջանից՝ Արևիկ, Ստեփանավանի շրջանից՝ Կուրթան և շատ այլ գյուղերի կոլտնտեսություններ։

Սերմնաբուծության գործի բարելավման, նոր, ավելի արժեքավոր սորտերի ստեղծման ասպարեզում շնորհակալ աշխատանք են կատարում ռեսպուբլիկայի գիտնականները և կոլտնտեսային արտադրության առաջավորները։

Սակայն կան շատ կոլտնտեսություններ, որոնք ուշադրություն չդարձնելով տեսակավոր սերմերի արտադրությանը, ցանում են ոչ կոնդեցիոն սերմ և զբաղեցնելով հողային տարածություններ, ծախսելով մեծ միջոցներ՝ ցածր բերք են ստանում։ Այդպիսի կոլտնտեսություններից են. Սիսիանի շրջանի Աշոտավան, Հախլաթյան, Մարտունու շրջանի Վ. Ղարանլուղ, Թազագյուղ, Բասարգեչարի շրջանի Սատանախաչ, Փամբակ, Կարմիրի շրջանի Բաշքյանդ, Իջևանի շրջանի Փոլադ, Կիրովականի շրջանի Դարբաս, Ալավերդու շրջանի Այրում, Նոյեմբերյանի շրջանի Դոստլու և այլ գյուղերի կոլտնտեսություններ, որոնք վերջին 4—5 տարիներում հացահատիկային կուլտուրաների ցանքատարածությունների յուրաքանչյուր հեկտարից ստանում են 5—6 ցենտներ բերք։

Կարելի է բերել բազմաթիվ օրինակներ նաև մնացած կուլտուրաների



սերմնաբուծության բնագավառում կատարած անբավարար աշխատանքից, ցույց տալու համար, թե տեղերում որքան քիչ ուշադրություն է հատկացվում գյուղատնտեսական կուլտուրաների սերմնաբուծության կարևոր գործի կազմակերպմանը, և շարունակում են ցանել ոչ տեսակավոր, ցածր բերքատու սերմ։

Սովետական Միության Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը բազմիցս նշել են յուրաքանչյուր կոլտնտեսությունում ու սովխոզում սեփական կարիքները բավարարելու համար պահանջվող քանակի բարձրարժեք տեսակավոր սերմացուի արտադրության անհրաժեշտությունը։

Պետք է հասնել այն բանին, որ յուրաքանչյուր տնտեսություն, սերմնաբուծական տնտեսությունից տեսակավոր սերմացու ստանալուց հետո կարողանա լիովին բավարարել սերմի իր պահանջը՝ տեսակավոր սերմերի սեփական արտադրության հաշվին։

Գյուղատնտեսական կուլտուրաների ցանքատարածությունները բարձրարժեք տեսակավոր սերմերով լիովին չապահովելու հիմնական պատճառն այն է, որ սերմնաբուծության գործի ներկա վիճակը, սերմնաբուծության կազմակերպման գոյություն ունեցող ձևը այլևս չի բավարարում և չի համապատասխանում արտադրության աճող պահանջներին։ Սերմնաբուծության ներկա սիստեմը, որ կազմակերպվել է 1937 թվականից, նկատի է ունեցել այն ժամանակվա համեմատաբար փոքր կոլտնտեսություններն ու սովխոզները։ Այդ պայմաններում անհրաժեշտ է եղել ստեղծել շրջանային սերմնաբուծական տնտեսություններ, որոնց առջև խնդիր է դրվել կոլտնտեսությունների և սովխոզների ոչ մեծ սերմնադաշտերի համար սերմացու արտադրել։ Սերմնաբուծության այս սիստեմն, անկասկած, որոշակի դեր է խաղացել այդ ասպարեզում։

Այժմ, երբ կոլտնտեսություններն ու սովխոզները դարձել են մեքենայացված խոշոր տնտեսություններ, ունեն որակյալ մասնագիտական կադրեր, երբ Միության մեջ և մեր ռեսպուբլիկայում գիտա-հետազոտական հիմնարկությունների լայն ցանց գոյություն ունի, կան բոլոր անհրաժեշտ պայմանները՝ անցնելու բացառապես տեսակավոր սերմերով ցանքերի արմատավորմանը։

Սերմնաբուծության նոր սիստեմի համաձայն յուրաքանչյուր կոլտնտեսություն և սովխոզ պետք է գիտա-հետազոտական հիմնարկություններից կամ ֆերմային սերմնաբուծական տնտեսությունից ձեռք բերի տեսակավոր սերմացուի էլիտը կամ առաջին ռեպրոդուկցիայի սերմը և իր մոտ կազմակերպի դրանց բազմացումը այն հաշվով, որ լիովին բավարարի տեսակավոր սերմի նկատմամբ իր սեփական պահանջը։

Անհրաժեշտ է նշել, որ սերմնաբուծության նոր սիստեմը թելադրվել է կյանքի փորձով։ Միության շատ գիտա-հետազոտական հիմնարկություններ և գիտնականներ վերջին տարիներս մեծ աշխատանք են կատարել սորտափոխման գծով և իրենց ստեղծած լավագույն սորտերը արտադրության մեջ արմատավորելու ուղղությամբ։ Դրա լավագույն օրինակն է ակադեմիկոսներ Վ. Ս. Պուստովոյտի, Վ. Յա. Յուրևի գործունեությունը. նրանց ստեղծած գյուղատնտեսական կուլտուրաների սորտերը լայնորեն տարածվում են Միության տարբեր գոտիներում։ Ակադեմիկոսներ Պ. Պ. Լուկյանենկոն, Ֆ. Գ. Կիրիչենկոն և ուրիշներ երկար տարիների ընթացքում իրենց ստեղծած հացահատիկի սորտերի բարձր ռեպրոդուկցիաները անմիջականորեն հանձնում են

կոլտնտեսություններին ու սովխոզներին և ապահովում նոր սորտերի արագ արմատավորումը արտադրության մեջ։

Մեր ռեսպուբլիկայում էլիտային և բարձր ռեպրոդուկցիայի սերմերի արտադրության գործով երկար տարիներ զբաղվում են Երկրագործության գիտա-հետազոտական ինստիտուտը, Լենինականի պետական սելեկցիոն կայանը, Անասնապահության գիտա-հետազոտական ինստիտուտը, Ժողտնտխորհի պոմիդորի սելեկցիոն կայանը և այլն։ Գյուղատնտեսական կուլտուրաների սորտային ցանքերի ընդարձակման ասպարեզում երկար տարիներ զգալի աշխատանք են կատարել ակադեմիկոսներ՝ Մ. Թումանյանը, Գ. Աղաջանյանը, Վ. Գուլքանյանը, Գ. Բաբաջանյանը, գիտ. աշխատողներ, Գ. Սուրմինյանը, Բ. Գարասեֆերյանը, Ա. Անանյանը, Ս. Բարսեղյանը, Ա. Եղիկյանը, Ա. Մկրտչյանը, Ա. Մինասյանը, խաղողագործության գծով՝ Ս. Պողոսյանը, պտղաբուծության գծով՝ Ա. Վերմիշյանը, Ս. Ագուլյանը, Կ. Քարանյանը։

ՍՍՌՄ Գյուղատնտեսության մինիստրությունը ամփոփելով սերմնաբուծության բնագավառում կուտակված հարուստ փորձը՝ մշակել է այդ գործի կազմակերպման նոր սիստեմ, որը հավանություն է ստացել ՍՄԿՊ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի կողմից։

Ո՞րն է այդ նոր սիստեմի էությունը։

Նոր սորտի շրջանացումից հետո, սորտն ստեղծող գիտա-հետազոտական հիմնարկությունը էլիտային և սուպերէլիտային սերմերը հանձնում է տվյալ սորտի շրջանացման գյուղատնտեսական գոտում գործող գիտա-հետազոտական կամ գիտա-ուսումնական հիմնարկությանը, որը պետք է բազմացնի նոր սորտի սերմը և կազմակերպի դրա սերմնաբուծության գործը։ Գիտա-հետազոտական հիմնարկությունները, բարձրագույն ուսումնական հաստատությունները և նրանց զոնալ կայաններն ու ուսումնա-փորձնական տնտեսությունները ամեն տարի պետք է արտադրեն և կոլտնտեսություններին ու սովխոզներին վաճառեն այնպիսի քանակությամբ էլիտային և առաջին ռեպրոդուկցիայի սերմեր, որպեսզի լրիվ բավարարեն վերջիններիս պահանջը սորտաթարմացման և սորտափոխանակման ասպարեզում։ Այդ սերմերը կոլտնտեսություններն ու սովխոզները բազմացնում են ո՛չ միայն իրենց սեփական պահանջը բավարարելու, այլև անհրաժեշտ ապահովագրական և փոխանցիկ սերմֆոնդ ստեղծելու համար։

Կոլտնտեսություններում և սովխոզներում սերմնաբուծության գործը լավ հիմքերի վրա դնելու նպատակով, սերմնաբուծության նոր սիստեմի համաձայն, նախատեսվում է յուրաքանչյուր կոլտնտեսությունում և սովխոզում այդ աշխատանքը կենտրոնացնել մեկ բրիգադայում։ Սերմնաբուծության նոր կարգի համաձայն ուղիղ և անմիջական կապ է ստեղծվում գիտա-հետազոտական հիմնարկների և կոլտնեսությունների ու սովխոզների միջև առանց ներկայումս գոյություն ունեցող միջնորդի՝ մթերող կազմակերպության։ Այս, անշուշտ, բարձրացնում է գիտա-հետազոտական հիմնարկի պատասխանատվությունը իր արտադրած և վաճառքի հանվող էլիտային սերմերի որակի հարցում։ Բացառվում են նաև սերմերի ավելորդ փոխադրումները, կարգավորվում է պլանավորումը և կոլտնտեսություններում ուժեղացվում գիտա-հետազոտական հիմնարկի հսկողությունը սորտաթարմացման և սորտափոխանակման աշխատանքների վրա։

Սերմնաբուծության նոր սիստեմի համաձայն գիտա-հետազոտական և



ուսումնական հաստատությունների կողմից կոլտնտեսություններին և սովխոզներին անմիջապես կամ մթերման կայանների միջոցով վաճառած էլիտային և առաջին ռեպրոդուկցիայի սերմերը հացահատիկի մթերման պետական պլանի մեջ չեն մտնում։

Սերմնաբուծության նոր սիստեմը պետք է ամբողջովին գործադրվի 1960—1963 թթ. ընթացքում։ Դրա համար անհրաժեշտ է որոշել և հաստատել ռեսպուբլիկայի այն գիտա-հետազոտական և ուսումնական հիմնարկների ու կայանների ցուցակը, որոնք պետք է զբաղվեն էլիտային և առաջին ռեպրոդուկցիայի սերմերի արտադրությամբ ու երաշխավորեն այդ սերմերը կոլտնտեսություններին ու սովխոզներին վաճառելու համար։ Առանձին կոլտնտեսություններ ու սովխոզներ պետք է որոշակի իմանան՝ որտեղից ստանալ էլիտային և բարձր ռեպրոդուկցիայի սերմերը։ Ըստ որում անհրաժեշտ է հաշվի առնել սորտաշրջանացումը և տերիտորիալ հարմարանքները՝ ավելորդ փոխադրումներից խուսափելու համար։ Նկատի ունենալով ռեսպուբլիկայի գիտա-հետազոտական հիմնարկությունների հողային ֆոնդերի սակավությունը, պետք է նրանց տրամադրվեն անհրաժեշտ հողատարածություններ, նրանց իրավասությանը հանձնելով սովխոզներ ու սովխոզների բաժանմունքներ այն հաշվով, որպեսզի գիտա-հետազոտական հիմնարկությունները լրիվին բավարարեն իրենց կցված շրջանների էլիտային և առաջին ռեպրոդուկցիայի սերմերի պահանջը։ Բացի այդ, սերմնաբուծության նոր սիստեմով նախատեսվում է էլիտային և առաջին ռեպրոդուկցիայի սերմեր արտադրող գիտական հիմնարկները ապահովել անհրաժեշտ գյուղատնտեսական մեքենաներով, ավտոտրանսպորտով, չորանոցային և պահեստային հարմարություններով։

Էլիտային և առաջին ռեպրոդուկցիայի սերմերի արտադրության գործը կազմակերպելուց բացի գիտա-հետազոտական հիմնարկությունները և գյուղատնտեսական ԲՈՒՀ-երը պետք է բազմացնեն հեռանկարային սորտեր, արտադրության մեջ արմատավորեն նոր սորտեր, օգնեն կոլտնտեսություններին ու սովխոզներին սերմնաբուծության կազմակերպման, տնկարանային տընտեսությունների հիմնադրման ու տնկիների մշակության, ինչպես նաև անասունների ցեղի բարելավման և թռչնաբուծության զարգացման գործում։

Ընթացիկ տարվա բերքից կոլտնտեսություններին ու սովխոզներին հացահատիկային կուլտուրաների ու խոտերի էլիտային և առաջին ռեպրոդուկցիայի սերմեր բաց կթողնվեն վաճառքի միջոցով, պետգնման տարիֆներով, հաշվի առնելով նաև հավելումը սորտայնության համար։

Սերմնաբուծության նոր սիստեմը պարտավորեցնում է գիտա-հետազոտական հիմնարկություններին վճռաբար բարելավել սելեկցիոն-սերմնաբուծական աշխատանքները։ Ընդսմին մեծ ուշադրություն պետք է դարձվի նոր, ավելի արժեքավոր սորտերի ու հիբրիդների ստեղծմանը, նկատի ունենալով ռեսպուբլիկայի բնակլիմայական և հողային պայմանների խիստ բազմազանությունը։

Սերմնաբուծության նոր սիստեմով յուրաքանչյուր կուլտուրայի սորտաթարմացման և սորտափոխանակման կարգը ռեսպուբլիկայում որոշում է Գյուղատնտեսության մինիստրությունը՝ հաշվի առնելով տեղի պայմանները, սորտի բիոլոգիական ու տնտեսական առանձնահատկությունները և այլն։

Կոլտնտեսություններին և սովխոզներին խոտաբույսերի և, առանձնապես, լոբազգիներին պատկանող խոտերի սերմերով ապահովելու համար ան-

հրաժեշտ է կազմակերպել կորնգանի, առվույտի, շաքարի, գարնանացան և աշնանացան. վիկի, կերային ոլոռի և այլ կերային կուլտուրաների սերմերի ապրանքային արտադրությունը այն տնտեսություններում, որտեղ կլիմայական պայմանները ամենից նպաստավոր են այդ կուլտուրաների բարձր բերքատվության համար։ Այսպես, օրինակ, մեր ռեսպուբլիկայում առվույտի սերմի բարձր բերք է ստացվում Արարատյան դաշտավայրում, իսկ կորնգանի սերմ՝ նախալեռնային և լեռնային շրջաններում։

Ներկայումս, երբ ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում ու սովխոզներում սկսված է հացահատիկային և գյուղատնտեսական մի շարք այլ կուլտուրաների բերքահավաքը, պետք է առանձնահատուկ ուշադրություն նվիրել սերմնադաշտերի բերքահավաքի վրա։ Կոլտնտեսությունների վարչությունները, սովխոզների դիրեկտորները գյուղատնտեսության մասնագետների օգնությամբ պետք է ամենուրեք առանձնացնեն գյուղատնտեսական բոլոր կուլտուրաների սերմադաշտերը և գործը կազմակերպեն այնպես, որ նրանց հունձը կատարվի բերքի լրիվ հասունացման շրջանում։

Սերմացուների կալսումը, զտումը և ախտահանումը պետք է կատարել խնամքով ու ապահովել նրանց պահեստավորումը բարեկարգ և չոր պահեստներում։ Չպետք է մոռանալ, որ 1961 թվականին գյուղատնտեսական բոլոր կուլտուրաներից բարձր բերքի ապահովման համար այժմվանից պետք է նախապատրաստել 450—500 հազար ցենտներ հացահատիկի, 13 հազար ցենտներ եգիպտացորենի, 65—70 հազար ցենտներ միամյա և բազմամյա խոտերի, 350—400 հազար ցենտներ կարտոֆիլի, 2500 ցենտներ զանազան բանջարեղենի և ուրիշ կուլտուրաների սերմացուներ։

Անհրաժեշտ է, որպեսզի յուրաքանչյուր կոլտնտեսություն և սովխոզ այժմվանից ձեռնարկի բոլոր միջոցները պահանջվող քանակի սերմացու առանձնացնելու և ձեռք բերելու համար։ Պետք է հասնել այն բանին, որ առանձնացված սերմացուն լինի տեսակավոր։

Այժմ սերմնաբուծության գլխավոր և որոշիչ օղակը մեր ռեսպուբլիկայում դառնում են փորձա-հետազոտական և փորձա-ուսումնական հիմնարկությունները և դրանց ենթակա սերմնաբուծական տնտեսությունները։

Ռեսպուբլիկայի գիտա-հետազոտական հիմնարկները և գյուղատնտեսական օրգանները պետք է պատվով կատարեն սերմնաբուծության ասպարեզում իրենց վրա դրված նոր և պատասխանատու խնդիրը և դրանով իսկ նպաստեն գյուղատնտեսության ասպարեզում յոթնամյա պլանով սահմանված առաջադրանքները ժամկետից շուտ կատարելու գործին։

---

# ՊԱՐՏԻԱԿԱՆ ԿՅԱՆՔ

## ԿԱՐԳԱՎՈՐԵԼ ՊԱՐՏՇԱՐՔԵՐԻ ԱՃԸ

Վերջին մի քանի տարիների ընթացքում Երևանի պարտիական կազմակերպության շարքերն են ընդունվել երիտասարդ, կոմունիզմի կառուցման համար մարտնչող հարյուրավոր նոր մարդիկ՝ արտադրության, շինարարության, գյուղատնտեսության առաջավորներ, ինտելիգենցիայի լավագույն ներկայացուցիչներ, որոնք պարտիայի առաջադրած խնդիրների իրականացման գործում ցույց են տալիս անձնական օրինակ։

Պարտիայի շարքերն ընդունվողների մեջ համեմատաբար մեծացել է բանվորների ու կոլտնտեսականների թիվը։ Այդ տեսակետից գործը համեմատաբար լավ է ընթացել Լենինյան և 26 կոմիսարների շրջանների պարտիական կազմակերպություններում։ Եթե Լենինյան շրջանում պարտիայի անդամության թեկնածու ընդունվածների ընդհանուր թվի մեջ 1957 թվականին բանվորները կազմում էին 44,0 տոկոս, 1958 թվականին՝ 47, ապա 1959 թվականին կազմում էին 59,2 տոկոս։ 26 կոմիսարների շրջանում բանվորների քանակը ընդհանուր ընդունվածների մեջ 1957 թվականին կազմում էր 60, 1958 թվականին՝ 73,4, 1959 թվականին՝ 69,0 տոկոս։

Որպես դրական երևույթ պետք է նշել այն, որ վերջին տարիներս քաղաքի պարտիական կազմակերպություններն ընդունելություն կատարելիս առավելությունը տալիս են նաև ինժեներա-տեխնիկական անձնակազմին։ Այսպես, եթե 1956 թվականին պարտիայի շարքերն ընդունված ծառայողների թվում ինժեներ-տեխնիկները կազմում էին ընդամենը 24,8 տոկոս, 1958 թվականին՝ 37,9, ապա 1959 թ. կազմում էին 40,7 տոկոս։ Այդ առումով անհրաժեշտ է նշել պարտիայի Ստալինյան շրջանային կոմիտեի և սկզբնական պարտիական կազմակերպությունների դրական աշխատանքը։ Շրջանում պարտիայի շարքերն ընդունված ծառայողների ընդհանուր թվի մեջ 1956 թվականին ինժեներ-տեխնիկները կազմում էին 71 տոկոսը, իսկ 1960 թվականի առաջին եռամսյակում՝ ավելի քան 91,8 տոկոսը։

Այս ամենը խոսում է այն մասին, որ քաղաքի պարտիական կազմակերպությունները հիմնականում ճիշտ են հասկացել ու կենսագործել ՍՄԿՊ XX համագումարի որոշումները։ Նրանք պարտիայի շարքերի կարգավորման հարցը կապել են գործարանի, ֆաբրիկայի ու սովխոզի ներքին կյանքի հետ։ Այսպես, հիդրոհաղորդակ գործարանի գործիքային տեղամասը իր վատ, անկազմակերպ աշխատանքով երկար ժամանակ ետ էր պահում ամբողջ գործարանը։ Այդ տեղամասում աշխատում էին ընդամենը պարտիայի 2 անդամ, որոնք չէին կարողանում ապահովել անհրաժեշտ պարտիական ազդեցությունը, բարձրացնել քաղաքական-մասսայական աշխատանքի մակարդակը, տեղամասը դուրս բերել այդ վիճակից։ Գործարանի սկզբնական պարտիական կազմա-

կերպությունը ճիշտ կողմնորոշվեց, կարծելով, որ անհրաժեշտ է այստեղ ուժեղացնել պարտիական կազմակերպության ներգործությունը, ստեղծել պարտիական կորիզ՝ բաղկացած անմիջականորեն արտադրության մեջ աշխատողներից։

Պարտիայի մեջ ընդունվեցին առաջավոր բանվորներ՝ խառատ Պարգև Իսպիրյանը, փականագործներ Կարապետ Հայրապետյանը, Վազգեն Կոջոյանը և Ալի Իբրահիմովը։ Դա հնարավորություն տվեց ստեղծելու պարտիական խմբակ։ Պարտիական խմբակի ստեղծումը զգալի աշխուժություն մտցրեց ամբողջ տեղամասի աշխատանքում։ Կոմունիստներն սկսեցին զբաղվել արտադրական հարցերով, լավ հիմքերի վրա դրվեց քաղաքական-դաստիարակչական աշխատանքը։

Այս ամենը չէր կարող դրականորեն չանդրադառնալ ամբողջ կոլեկտիվի վրա. տեղամասում աստիճանաբար բարձրացավ արտադրության կուլտուրան, աշխատանքային կարգապահությունը, որի շնորհիվ հիմնովին փոխվեց դրությունը։ Գործարանում առաջինը այս տեղամասում կազմակերպվեց կոմունիստական աշխատանքի կոչման համար պայքարող բրիգադա, որի ղեկավար ընտրվեց երիտասարդ կոմունիստ Պարգև Իսպիրյանը։ Բրիգադայի բոլոր անդամներն էլ կատարում են հասարակական-պարտիական հանձնարարություններ, բոլորն էլ արտադրության առաջավորներ են և ընդգրկված են հասարակական կարգը պաշտպանող դրուժինաների մեջ։ Տեղամասի կոմունիստների նախաձեռնությամբ ամբողջ գործարանի կոլեկտիվը պարտավորություն վերցրեց ոչ միայն կատարել և գերակատարել պետական առաջադրանքները, այլ օրինակելի լինել հասարակական կարգի պահպանման գործում։

Այսպիսով, անցած չորս տարիների աշխատանքը ցույց է տալիս, որ պարտիայի շարքերի ընդունելության և նրա կազմի կարգավորման գործը որոշակիորեն բարելավվել է։ Բայց, չնայած դրան, որոշ սկզբնական պարտիական կազմակերպություններում դեռևս արժանի ուշադրություն չեն հատկացնում պարտիայի շարքերի աճի կարգավորմանը։ Ավելին, մի շարք պարտիական կազմակերպություններ տարիներ շարունակ չեն աճում։ 1959 թվականի ընթացքում մոտ 600 պարտկազմակերպություններ (Լենինյան շրջանից՝ ալրաղաց և մսի կոմբինատների, լաքերի և ներկերի, Մյասնիկյանի անվան, Ստալինյան շրջանից՝ հիդրոպոմպերի, ռետինատեխնիկական և այլ գործարանների) ընդհանրապես չեն աճել, այդ թվում այնպիսի ձեռնարկություններում, ուր զգալիորեն մեծացել է աշխատողների թիվը, ընդլայնվել արտադրությունը։ Կան նաև այնպիսի պարտկազմակերպություններ, ուր կոմունիստների թիվը նվազել է։ Օրինակ. 1958 թվականին մուլտի ապակետարայի գործարանում կար 36 կոմունիստ, այժմ նրանց թիվը հասել է 26-ի։ Ավտովերանորոգման գործարանն ունեցել է 7 կոմունիստ, այժմ՝ 3, կամ փայտամշակման կոմբինատում 18 կոմունիստների փոխարեն այժմ մնացել են 15-ը։

Կոմունիստների ոչ ռացիոնալ տեղաբաշխումը իր կնիքն է դրել քաղաքի պարտկազմակերպությունների վրա։ 988 սկզբնական պարտկազմակերպություններից 460-ում կոմունիստների թիվը հասնում է 14 հոգու, որը հնարավորություն չի տալիս ստեղծելու պարտբյուրո։ 130 արդյունաբերական ձեռնարկությունների ամեն մի կոլեկտիվում աշխատող մարդկանց թիվը հասնում է 300-ից մինչև 5000-ի, սակայն այդ ձեռնարկություններից 59-ի պարտկազ-



մակերպություններում պարտբյուրո չի ստեղծվում՝ անհրաժեշտ թվով կոմունիստներ չունենալու պատճառով։

Հարկ կա՞ արդյոք ապացուցելու, թե որքան դժվար է սակավաթիվ անդամներ ունեցող պարտիական կազմակերպության ուժերով ընդգրկել խոշոր ձեռնարկության, նրա բոլոր ցեխերի աշխատանքը, լուծել բարդ ու բազմազան խնդիրներ։ Խոշոր արտադրական կոլեկտիվներում անհրաժեշտ է ունենալ մարտունակ պարտիական կազմակերպություն, որը կարողանա ապահովել պարտիական անհրաժեշտ ազդեցություն ու ղեկավարություն արտադրության բոլոր օղակներում։

Պարտիայի շարքերի աճի բնագավառում հիմնական թերություններից մեկն այն է, որ շրջանային պարտիական կոմիտեները դեռևս լուրջ ուշադրություն չեն նվիրել շինարարական կազմակերպություններին, չեն նկատել այն խոշոր փոփոխությունները, որ վերջին տարիների ընթացքում տեղի է ունեցել այդ կազմակերպությունների աշխատանքներում։ Մեծ ծավալ է ստացել կապիտալ շինարարությունը և հատկապես բնակարանային, կոմունալ և կուլտուր-կենցաղային օբյեկտների շինարարությունը։ Այսպես, 1956 թվականին պլանով նախատեսված էր 297 միլիոն ռուբլու շինարարական աշխատանք, որին մասնակցում էին 20 հազար շինարար բանվորներ, իսկ անցյալ տարի կապիտալ ներդրումների գումարը կազմել է 630 միլիոն ռուբլի, 33 հազար շինարար բանվորների զբաղվածությամբ։ Այսպիսով, 1959 թվականին, 1956 թվականի համեմատությամբ, Երևան քաղաքում կապիտալ ներդրումները շինարարության մեջ աճել են ավելի քան 2 անգամ, շինարարական բանվորների թիվը՝ 68 տոկոսով։

Պետք է նաև չմոռանալ, որ շինարարական օբյեկտներում աշխատողների մեջ տեղի են ունեցել ոչ միայն քանակական, այլև որակական փոփոխություններ. շինարարությունում կիրառվող մեխանիզմները և աշխատանքի նոր մեթոդները ստեղծել են նոր պրոֆեսիաներ։ Այժմ որպես հիմնական բանվորներ են աշխատում արմատուրշչիկներ, բետոնագործներ, էլեկտրամոնտյորներ, մոնտաժավարներ, մեխանիզատորներ և ուրիշներ, որոնց աշխատանքի մակարդակը ընդհուպ մոտեցել է ինդուստրիալ բանվորների աշխատանքի մակարդակին։

Սակայն պարտիայի շարքերի աճը ի հաշիվ շինարարական բանվորների՝ շատ հեռու է բավարար լինելուց։ 1959 թվականին շինարարական օբյեկտների պարտիական կազմակերպությունների կողմից պարտիայի անդամության թեկնածու են ընդունվել ընդամենը 23 մարդ, մինչդեռ շինարարության մեջ աշխատում են, ինչպես նշվեց, 33 հազար բանվոր, որոնցից ՍՄԿՊ-ի անդամ են ընդամենը 555 մարդ կամ բոլոր բանվորների միայն 1,7 տոկոսը։

Սրանից հետևում է, որ պարտիայի քաղաքային և շրջանային կոմիտեները ջանք չպետք է խնայեն, որպեսզի շինարարական օբյեկտների սկզբնական պարտիական կազմակերպություններն աճեն թե՛ քանակապես և թե՛ որակապես, դառնան մարտունակ կազմակերպություններ։

Հաճախ շրջանային կոմիտեները սկզբնական պարտիական կազմակերպությունների ուշադրությունը չեն հրավիրում այն բանի վրա, որ պարտիայի շարքերում նոր մարդկանց ընդունելու համար պետք է ամենօրյա աշխատանք կազմակերպել, ընտրել լավագույններից լավագույններին, նրանց ներգրավել հասարակական-քաղաքական կյանքի մեջ և ոչ թե սահմանափակվել միայն

պարտիայի մեջ ընդունվել ցանկացողների դիմումների սուսկ քննարկումով։

Պարտիայի շարքերը նոր մարդկանց ընդունելու գործի լուրջ թերություններից մեկը կարելի է համարել այն, որ որոշ սկզբնական կազմակերպություններ անհրաժեշտ պահանջկոտություն չեն ցուցաբերում ընդունվողների որակական կազմի նկատմամբ։ Փոխանակ խոր և բազմակողմանի ուսումնասիրելու պարտիայի մեջ ընդունվել ցանկացողներին, երբեմն պարտկազմակերպությունները սահմանափակվում են միայն դիմողների աշխատանքային ցուցանիշներով, մի կողմ թողնելով նրանց մյուս հատկանիշները, որի հետևանքով պարտիայի մեջ են ընդունվում առանձին անարժան մարդիկ։

Շատ պարտկազմակերպություններ նախօրոք, ինչպես հարկն է, չեն զբաղվում պարտիայի մեջ ընդունվողներին քաղաքականապես պատրաստելու գործով, որի հետևանքով շրջկոմների կողմից մերժվածների մեջ բավականին մեծ թիվ են կազմում քաղաքականապես անպատրաստ մարդիկ։ Այսպես, օրինակ, 26 կոմիսարների շրջանային կոմիտեն վերջին երկու տարվա ընթացքում պարտիայի մեջ չի ընդունել 16 մարդու, որոնցից 13-ին՝ միայն քաղաքականապես անպատրաստ լինելու պատճառով։

Ճիշտ չի լինի ասել, որ շրջանային կոմիտեներում քաղաքական քննություն են կատարում, բարդ հարցեր են տալիս։ Երբեմն շրջկոմներում տեղի է ունենում հակառակը, որոշ զիջումներ են արվում նրանց, որոնք նույնիսկ ծանոթ չեն պարտիայի Կանոնադրությանը, տարրական պատկերացում չունեն մեր պարտիայի քաղաքականության մասին։ Ճշմարտությունն այն է, որ պարտկազմակերպության որոշ քարտուղարներ չեն ցանկանում ջանք թափել, մարդկանց հետ աշխատել, նրանց քաղաքականապես պատրաստել, չհասկանալով, որ ամեն մի անպատրաստ մարդու ընդունելություն ավելորդ բեռ է պարտիական կազմակերպության վրա, որ նման մարդիկ անպարտիական մասսաների մեջ ո՛չ միայն չեն բարձրացնում պարտիական կազմակերպության հեղինակությունը, այլ ընդհակառակը, գցում են նրա պատիվը։

Ինչպես հայտնի է, քիչ չեն դեպքերը, երբ շրջկոմները արդարացի կերպով մերժում են կազմակերպության որոշումը այս կամ այն մարդուն պարտիայի մեջ ընդունելու մասին։ Բայց, ցավոք սրտի, շրջկոմները հաճախ դրանով ավարտված են համարում իրենց դերը, չեն վերլուծում թույլ տրված սխալները, իսկ կազմակերպություններն անտարբերություն են ցուցաբերում այդ սխալների նկատմամբ, քննության առարկա չեն դարձնում մերժման յուրաքանչյուր դեպք։

Պարտիայի շարքերի անցած 4 տարվա աճի վերլուծությունը ցույց է տալիս, որ մի շարք սկզբնական պարտիական կազմակերպություններում ավելորդ երկչոտություն գոյություն ունի դեպի երիտասարդությունը։ Երբեմն գտնում են, որ նրաք դեռ հասուն չեն պարտիայի շարքերն ընդունվելու համար, որը և, իր հերթին, մտավախություն է առաջացնում երիտասարդության մեջ։ 1958 թվականին Երևանի պարտիական կազմակերպությունների կողմից պարտիայի շարքերը որպես թեկնածու ընդունվել են ընդամենը 520 հոգի, որոնցից 3-ը մինչև 30 տարեկան հասակ ունեցողներ են, 57-ը կամ 10,9 տոկոսը՝ 21—25 տարեկան։ 1959 թվականին 611 ընդունվածներից մինչև 20 տարեկան հասակ ունեցողները միայն 2-ն են, իսկ 21—25 տարեկանները՝ 102 հոգի, կամ 16,6 տոկոսը։

Սկզբնական պարտիական կազմակերպությունները պետք է փոխեն իրենց



վերաբերմունքը, լուրջ ուշադրություն հատկացնեն երիտասարդներին պարտիայի մեջ ընդունելու հարցին, քանի որ նրանք ունենալով մեծ եռանդ, նոր ավյուն, աշխատանքային թափ կմտցնեն պարտիական կազմակերպությունների կյանքում։

Պարտիայի շարքերի աճը, նրա կազմի կարգավորման հարցը պետք է մշտապես կապված լինի արտադրության մեջ կոմունիստների տեղաբաշխման հետ, այն հաշվով, որպեսզի աշխատանքային վճռական տեղամասերը ապահովված լինեն կոմունիստներով, որոնք կարողանան բացատրել պարտիայի քաղաքականությունը մասսաների շրջանում, լսեն, հասկանան և գործի վերածեն նրա դիրեկտիվներն ու պահանջները և աշխատանքում անձնական օրինակ ցույց տան մյուսներին։ Վլադիմիր Իլյիչ Լենինը 1919 թվականին իր ճառերից մեկում դիմելով կոմունիստներին՝ ասում է. «Բավական չեն ժողովները և միտինգները, հարկավոր է անձնական ագիտացիա»։ Այս նշանակում է, որ արտադրության մեջ կոմունիստը տվյալ աշխատանքային տեղամասում պետք է ագիտացիոն-բացատրական աշխատանք ծավալի և ամբողջ կոլեկտիվին մոբիլիզացնի վերադաս օրգանների կողմից սահմանված պլանային առաջադրանքները ժամանակին ոչ միայն կատարելու, այլև գերակատարելու համար։

Այս տեսակետից բավարար չէ վիճակը Շահումյանի շրջանի առանձին կոլտնտեսություններում։ Կոլտնտեսական կոմունիստների մի զգալի մասը, հատկապես տնտեսապես թույլ կոլտնտեսություններում, չեն աշխատում արտադրության մեջ, կամ կատարում են երկրորդական աշխատանքներ։ Թե որքան կարևոր նշանակություն ունի կոմունիստների ճիշտ տեղաբաշխումը վճռական տեղամասերում, պարզ ցույց են տալիս հետևյալ օրինակները։

Ինչպես հայտնի է, Ներքին Ջարբախի Լենինի անվան կոլտնտեսությունը մեր ռեսպուբլիկայի առաջավոր տնտեսություններից մեկն է։ Պարտիական կազմակերպությունն այստեղ վճռական դեր է կատարում պարտիայի կողմից առաջադրված խնդիրների իրականացման գործում։ Կոլտնտեսությունում պարտիայի 45 անդամներից 35-ը աշխատում են անմիջապես արտադրության մեջ (օղակավարներ են, անասնապահներ, մեխանիզատորներ և այլն), ստեղծում նյութական բարիքներ։ Տարեցտարի ավելանում է գյուղատնտեսական մթերքների արտադրությունը։

Կոլտնտեսության պարտիական կազմակերպությունը մեծ գործ է կատարում ո՛չ միայն արտադրության կազմակերպման ուղղությամբ. նա ամենօրյա աշխատանք է տանում արտելի անպարտիական անդամների շրջանում, նրանց ընդգրկում է հասարակական-քաղաքական կյանքում։ Այս պայմաններում զարմանալի չէ այն մեծ ձգտումը, որ կոլտնտեսականները հանդես են բերում պարտիայի շարքերն ընդունվելու համար։ Անցած տարի պարտիայի շարքերն են ընդունվել արտադրության 5 առաջավոր, որոնք գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության և հանրային անասնաբուծության մթերատվության բարձրացման բնագավառում ցույց են տալիս անձնական օրինակ։

Բոլորովին այլ է պատկերը Ենգիջայի պարտիական կազմակերպությունում։ Ի դեպ պետք է ասել, որ երկու կոլտնտեսությունների հողակլիմայական պայմանները նույնն են։ Այստեղ պարտիական կազմակերպությունը բաղկացած է 26 կոմունիստներից. նրանցից միայն 4-ն են աշխատում անմիջապես արտադրության մեջ, որոնցից 2-ը չեն կատարում աշխօրերի պարտադիր մինիմումը։ Կոմունիստների ճնշող մեծամասնության ընտանիքի անդամները,

չեն աշխատում արտադրության մեջ, հիմնականում զբաղված են իրենց տնամերձ հողամասի մշակմամբ։ Կոլտնտեսությունում ընկած է պարտիական և աշխատանքային կարգապահությունը։ Պատահական չէ, որ այստեղ տարիներ շարունակ ստանում են ցածր բերք։ Անցած տարի պլանով նախատեսված 22 ցենտների դիմաց ստացվեց 12 ցենտներ բամբակ, խաղողի մեկ հեկտարի միջին բերքատվությունը կազմեց 69 ցենտներ, բանջարեղենինը՝ 128 ցենտներ, իսկ կովի միջին կաթնատվությունը անցյալ տարվա համեմատությամբ իջել է 106 կիլոգրամով։ Այստեղ պարտիական կազմակերպությունը չունի իր անհրաժեշտ ազդեցությունը մասսաների մեջ. պատահական չէ, որ սկսած 1955 թվականից նա պարտիայի մեջ ոչ մի հոգի չի ընդունել։

Երևան քաղաքի սկզբնական պարտիական կազմակերպությունների, քաղաքային ու շրջանային կոմիտեների ներպարտիական աշխատանքի հիմնական թերություններից մեկը պետք է համարել անբավարար աշխատանքը կանանց շրջանում։ Այդ մասին է խոսում թեկուզ հետևյալ փաստը. 1960 թվականի հունվարի 1-ի տվյալներով Երևանի պարտիական կազմակերպության մեջ կանայք կազմում են ընդամենը 20,3 տոկոս. անցյալ տարի պարտիայի շարքերն ընդունվածների մեջ կանայք կազմել են միայն 17,3 տոկոս, որը բավարար համարել չի կարելի։

Նուրբ մահուդի գործվածքների գործարանի, Լենինի անվան մետաքսի կոմբինատի, Ստալինի անվան տրիկոտաժի և № 1 կարի ֆաբրիկաների կոլեկտիվների 80—90 տոկոսը կանայք են, իսկ կին կոմունիստների թիվը շատ քիչ է այդ կազմակերպություններում։ Օրինակ, Նուրբ մահուդի կոմբինատի կոլեկտիվում կա ավելի քան 2500 կին, որոնք գրեթե բոլորն էլ աշխատում են անմիջապես արտադրության մեջ։ Կոմբինատում 15 բրիգադաներ պայքարում են կոմունիստական աշխատանքի բրիգադայի կոչման համար։ Այդ բրիգադաներում աշխատում են 195 մարդ, որոնցից 181-ը երիտասարդ կանայք են։ Բայց պարզ չէ, թե ինչո՞ւ միայն մեկ բրիգադայի բրիգադավարն է կին։ Հավանաբար այս անվստահությամբ էլ պետք է բացատրել այն, որ անցած 2 տարիների ընթացքում պարտիայի շարքերն ընդունված 11 հոգուց միայն մեկն է կին, այն էլ ծառայող։

Կամ, Լենինի անվան մետաքսի կոմբինատում (քարտուղար Մարգարյան) կոլեկտիվի 80 տոկոսը անմիջականորեն արտադրության մեջ աշխատող կանայք են, որոնցից 120-ը տարբեր բրիգադաներում պայքարում են կոմունիստական աշխատանքի բրիգադայի կոչման համար, սակայն վերջին 2 տարվա ընթացքում ոչ մի կին պարտիայի շարքերը չի ընդունվել։

Անհրաժեշտ է, որպեսզի շրջանային կոմիտեները, ինչպես նաև սկզբնական կազմակերպությունները արմատապես բարելավեն կանանց շրջանում տարվող աշխատանքը և նրանցից լավագույններին ընդունեն պարտիայի շարքերը։

Որպես դրական երևույթ պետք է նշել այն, որ քաղաքի բազմաթիվ սկզբնական պարտիական կազմակերպություններում բավականին մեծ փորձ է կուտակվել երիտասարդ կոմունիստների հետ տարվող աշխատանքի ուղղությամբ։ Կազմակերպվում են հանդիպումներ հին բոլշևիկների, առաջավոր մարդկանց հետ, որոնք իրենց անձնական օրինակով կարող են դաստիարակել երիտասարդ կոմունիստներին։ Երիտասարդ կոմունիստների հետ կատարված դրական աշխատանքի մասին է խոսում նաև այն, որ այժմ անհարգելի



պատճառով պարտիայի անդամության ժամկետանց թեկնածուների թիվը քաղաքում աննշան է դարձել։

Չնայած այդ ուղղությամբ կատարված դրական աշխատանքին, չի կարելի չնշել այն թերությունները, որ դեռևս գոյություն ունեն որոշ պարտիական կազմակերպությունների և շրջանային կոմիտեների աշխատանքում։ Քիչ չեն դեպքերը, երբ այս կամ այն ընկերոջը պարտիայի շարքերն ընդունելուց հետո մոռանում են նրան։ Այդ է պատճառը, որ երիտասարդ կոմունիստների մի մասը, անբավարար ուշադրության արժանանալով պարտիական կազմակերպության կողմից, շեղվում է ճիշտ ճանապարհից, դառնում պասսիվ, կորցնում է հասարակական աշխատանքի ճաշակը և կամաց-կամաց կտրվում պարտիական կյանքից. պարտկազմակերպություններն ստիպված են լինում նրանց մի մասին հեռացնել պարտիայի շարքերից։ Բերենք մի օրինակ. Մ. Մելքոնյանը 1955 թ. գերազանց գնահատականներով ավարտելով միջնակարգ դպրոցը, զորակոչվել է Սովետական Բանակ։ Ինչպես դպրոցում, այնպես էլ բանակում նա եղել է կոմերիտական կոմիտեի քարտուղար, զինվորական գերազանց ծառայության համար պարգևատրվել է ՀամԼԿԵՄ Կենտկոմի պատվոգրով, իսկ 1958 թվականին ընդունվել է պարտիայի անդամության թեկնածու։ Վերադառնալով բանակից, նա աշխատանքի է անցնում Երևանի էլեկտրալամպերի գործարանի ապակու ցեխում՝ որպես բանվոր. սակայն չորս ամիս հետո հիվանդության պատճառով թողնում է աշխատանքը։ Պարտկազմակերպության նախկին քարտուղար Կարապետյանը, վերցնելով Մելքոնյանին հաշվառման մեջ, իր գործն ավարտված է համարում և նրան կրկին անգամ հիշում է միայն այն ժամանակ, երբ հաշվառման գրքում նկատում է, որ նրա թեկնածուական ժամկետն անցել է։ Նրան կանչում են բյուրո, ապա պարտիական ժողով. Մելքոնյանը կազմակերպությունից խնդրում է իր թեկնածուական ժամկետը երկարացնել, սակայն նրա խնդիրքը չի հարգվում և նրան հեռացնում են պարտիայի անդամության թեկնածությունից։ Պարտիայի 26 կոմիսարների շրջանային կոմիտեն առանց խորանալու այդ գործի մեջ, հաստատում է կազմակերպության որոշումը։

Ընկ. Մելքոնյանն այժմ աշխատում է ավտոպահեստամասերի գործարանում որպես խառատ. կրուցքի ժամանակ պարզվեց, որ ընտանեկան պայմանները Մելքոնյանին հնարավորություն չեն տվել բանակից վերադառնալուց հետո շարունակելու ուսումը։ Նրա հայրը ծեփագործ բանվոր է, ծանր հիվանդության պատճառով երկար ժամանակ չի աշխատել, մայրը նույնպես անաշխատունակ է, և ընտանիքի միակ խնամողը եղել է 15-ամյա եղբայրը։ Այս վիճակում անփորձ երիտասարդը մեծ կարիք ուներ թե՛ ընկերների և թե՛ պարտիական կոլեկտիվի օգնության. սակայն ոչ ոք չի հետաքրքրվել նրա կյանքով, որը և պատճառ է դարձել պարտիայի շարքերից դուրս մնալուն։

Երիտասարդ կոմունիստների հետ տարվող անբավարար աշխատանքով պետք է բացատրել այն, որ վերջին 4 տարվա ընթացքում պարտիայի շարքերից հեռացվել են 17 երիտասարդ կոմունիստ և պարտիայի անդամության 42 թեկնածու։

Քաղաքի սկզբնական պարտկազմակերպությունների խնդիրն է՝ հատուկ ուշադրություն հատկացնել երիտասարդ կոմունիստների շրջանում տարվող աշխատանքին, հետաքրքրվել ամեն մեկի կյանքով, օգնել նրանց խորհուրդ-

ներով, որպեսզի նրանք դառնան աշխատանքի առաջավորներ, կազմակերպված մարդիկ։

Պարտիայի շարքերի ընդունելության գործում կան նաև կազմակերպական կարգի թերություններ, որոնցից մեկը՝ անհիմն պատճառներով դիմումների քննարկման ձգձգումն է։ Լինում են դեպքեր, երբ պարտկազմակերպության ժողովից մինչև շրջանային կոմիտեի որոշում ընդունելը անցնում է 7—9 ամիս, այսինքն՝ համարյա այն ժամանակաշրջանը, որը տրվում է թեկնածուական ստաժի համար։ Այսպիսի դեպքեր եղել են 26 կոմիսարների և Սպանդարյանի շրջանային կոմիտեներում։ Այս հարցին չպետք է նայել որպես միայն ժամկետի ձգձգում, այլ որպես բյուրոկրատական անհոգի վերաբերմունքի արտահայտություն։ Նման վերաբերմունքը վատ օրինակ է ծառայում երիտասարդ կոմունիստների դաստիարակության համար և միանգամայն անհանդուրժելի է։

ՍՄԿՊ-ն մշտապես իր ուշադրության կենտրոնում է պահում պարտիայի շարքերի կարգավորման հարցը։ Պարտիայի որակական կազմից, նրա մարտունակությունից են հիմնականում կախված մեր բոլոր հաջողությունները։ Միայն գաղափարապես կոփված, գործունյա կոմունիստը կարող է ճիշտ կողմնորոշվել պարտիայի քաղաքականության մեջ, հաղթահարել բոլոր դժվարությունները և ապահովել պարտիայի առաջադրած խնդիրների կատարումը։

Ս. ՈՍԿԱՆՅԱՆ
ՀԿՊ Երևանի խաղկոմի խարտուղար

## ԱՇԽԱՏԱՆՔԸ ՄԱՐԴԿԱՆՑ ՀԵՏ՝ ԳԼԽԱՎՈՐՆ Է

Տասը տարի է անցել այն օրից, երբ Քանաքեռի ալյումինի գործարանը տվեց իր առաջին արտադրանքը։ Այդ տարիների ընթացքում աճեցին գործարանի արտադրական կարողությունները, բարձրացավ նրա տեխնիկական զինվածության աստիճանը, մեծացավ արտադրանքի ծավալը. աճեցին նաև մարդիկ՝ տեխնիկական ինտելիգենցիայի հիանալի կադրեր և արտադրության նորարարներ, որոնք ընդունակ են լուծելու արտադրության զարգացման հետ կապված դժվարին հարցերը։ Գերակատարվեց յոթնամյակի առաջին տարվա և երկրորդ տարվա առաջին կիսամյակի արտադրական պլանը։

Այդ հաջողությունների կոչող ու կազմակերպող ուժը գործարանի պարտիական կազմակերպությունն է, որը կարողանում է քաղաքական աշխատանքը հմտորեն զուգակցել տնտեսականի հետ։

Վերջերս Հայաստանի Կոմպարտիայի Կենտկոմի բյուրոն քննության առավ ԿԱՆԱՁ-ի պարտիական կազմակերպության աշխատանքի փորձը և մյուս սկզբնական պարտիական կազմակերպություններին խորհուրդ տվեց այն լայնորեն օգտագործել իրենց ամենօրյա պրակտիկ գործունեության ընթացքում։

Ներկա հոդվածում ցանկանում ենք ընթերցողների ուշադրությանը ներկայացնել ԿԱՆԱՁ-ի պարտիական կազմակերպության աշխատանքի ուսանելի կողմերը։ Նրա աշխատանքի բնորոշ դրական կողմը ամենից առաջ այն է, որ նա կարողանում է պարտիական աշխատանքի մեթոդների անընդհատ կատարելագործման միջոցով բոլոր միջոցները մոբիլիզացնել գործարանի առջև դրված խնդիրները հաջողությամբ լուծելու համար. դրանցից կարևորագույնը



տեխնիկական պրոգրեսի խնդիրն է, որի կենսագործման համար պարտկազմակերպությունը գլխավորում է մարդկանց ստեղծագործական նախաձեռնությունը։ Գործարանում սիստեմատիկաբար անցկացվում են տեխնիկական կոնֆերանսներ, ուր առաջավոր բանվորների, ռացիոնալիզատորների, գյուտարարների և ինժեներա-տեխնիկական աշխատողների քննարկմանն են ներկայացվում էլեկտրաէներգիայի խնայողության, արտադրության պրոցեսների կոմպլեքսային մեքենայացման և ավտոմատացման, թողարկվող արտադրանքի որակի բարելավման հարցերը։

Տեխնիկական կոնֆերանսներից մեկում՝ ժողովրդական տնտեսության մեջ էլեկտրաէներգիայի խնայողության մասին ՍՄԿՊ Կենտկոմի նամակը քննարկելիս բացահայտվեցին այնպիսի հնարավորություններ, որոնց օգտագործումը գործարանին տալիս է էլեկտրաէներգիայի մեծ խնայողություն։ Այսպես, դրանց օգտագործմամբ միայն ընթացիկ տարվա առաջին եռամսյակում կոլեկտիվը տվեց 600 հազար կիլովատ ժամ էլեկտրաէներգիայի խնայողություն։

Տեխնիկական պրոգրեսի արմատավորմանը նպաստում է այնպիսի միջոցառումների անցկացումը, ինչպիսիք են՝ բանվորների արտադրական որակավորման, աշխատանքի առաջավոր մեթոդների պրոպագանդման դպրոցների կազմակերպումը, ուր իրենց փորձի մասին զեկուցումներով հանդես են գալիս արտադրության նորարարները, փորձված մասնագետները. կազմակերպվում է Միության մեջ միանման գործարանների առաջավոր փորձի ուսումնասիրությունը՝ փոխադարձ այցելությունների միջոցով։ Բանվորների որակավորմանը մեծ չափով օգնում է նաև ալյումինի արտադրության մասին մասնագիտական զեկուցումների կազմակերպումը, տեխնիկական գրադարանի հարուստ գրքային ֆոնդը։

Պարտիական կազմակերպության բյուրոյի աշխատանքի դրական ոճը համապատասխանաբար փոխանցվում է ցեխային պարտիական կազմակերպություններին։ Բյուրոյի անդամները, նրա քարտուղարը (Կ. Հունանյան) սերտորեն կապված են կոմունիստների և կոլեկտիվի անդամների հետ, խորանում են նրանց բարձրացրած հարցերի, արտահայտած կարծիքների և պահանջների մեջ, պաշտպանում առաջավորն ու նորը։ Երկար ժամանակ գիտահետազոտական կազմակերպություններում ընթացք չէին տանում ալյումինի ստացման տեխնոլոգիական որոշ պրոցեսների կատարելագործման մասին ինժեներներ Պ. Սահակյանի և Մ. Աղաբաբյանի մտցրած առաջարկությունները, որոնց կիրառումը զգալի չափով կրճատում է ալյումինի ստացման վրա ծախսվող էլեկտրաէներգիան, բարձրացնում աշխատանքի արտադրողականությունը և թեթևացնում էլեկտրոլիզնիկի աշխատանքը։

Պարտբյուրոյի անդամների ակտիվ միջամտությամբ այդ առաջարկությունները քննարկվեցին պարտիական բյուրոյում։ Բյուրոյի նիստին հրավիրվեցին գործին տեղյակ մասնագետներ և արտադրության առաջավորներ։ Քննարկումը բացահայտեց, որ արված առաջարկությունները կենսական նշանակություն ունեն ալյումինի արտադրության հետագա զարգացման համար և դրանց արագ լուծումը կապված է կենտրոնական լաբորատորիան համապատասխան մասնագետներով համալրելու խնդրի հետ։ Կարճ ժամանակ հետո լաբորատորիա ուղարկվեցին նոր մասնագետներ։ Ադմինիստրացիան լուծեց հարցի տեխնիկական կողմը։ Արված առաջարկությունները պրակտիկորեն

կիրառվեցին, որոնք տվեցին էլեկտրաէներգիայի մեծ խնայողություն և աշխատանքի արտադրողականության բարձրացում։

Արտադրության առաջավոր մեթոդների արմատավորման գործում մեծ աշխատանք է կատարում գործարանի տեխնիկական խորհուրդը, որը բաղկացած է առաջավոր բանվորներից և ինժեներ-մասնագետներից։ Պարտիական կազմակերպությունը, նրա բյուրոն, ցեխային պարտկազմակերպությունների հետ միասին, ակտիվորեն նպաստում են արտադրության պրոցեսների կոմպլեքսային մեքենայացման և ավտոմատացման, տեխնոլոգիական պրոցեսների կատարելագործման, գյուտարարության և ռացիոնալիզատորության անընդհատ բարելավմանը, կոմունիստական աշխատանքի մեթոդների ու ձևերի արմատավորմանը։

Միության մեջ առաջին անգամ կանազցիները յուրացրին գազակլանման սարքը, որը մաքրում է գազերը վնասակար խառնուրդներից։ Էներգամատակարարման ցեխի ինժեներների և բանվորների նախաձեռնությամբ մշակվեց և արմատավորվեց անոդների էֆեկտիվության ավտոմատ ազդանշանի գրանցման սխեմաները, որն օգնում է էլեկտրոլիզնիկներին՝ բոնկումների ցածր գործակցի տեխնոլոգիան ճիշտ վարելու գործում։ Այս ամենը չեն սպառում այն մեծ աշխատանքը, որ կատարվում է տեխնիկական պրոգրեսի ուղղությամբ։

Արտադրության զարգացման, տեխնիկական պրոգրեսի հարցերը լուծելիս պարտիական կազմակերպության բյուրոն կարողանում է պրակտիկ փորձունեության ընթացքում աշխատանքի ծանրության կենտրոնը տեղափոխել ցեխային պարտիական կազմակերպություններն ու պարտիական խմբերը։ Եվ դա հասկանալի է, որովհետև արտադրության բախտը, նրա հետ կապված բազմաթիվ հարցեր իրենց գործնական լուծումն են ստանում ցեխում, տեղամասում, վաննաների ու ագրեգատների մոտ։ Այստեղ կոմունիստներն անմիջապես կապված են արտադրական կոլեկտիվի հետ, գիտեն նրա աշխատանքների առանձնահատկությունները։ Նրանք հանդես են գալիս որպես կոլեկտիվին պարտիական կազմակերպության հետ շաղկապող, մասսաների վրա պարտիական ազդեցության տարածող օղակ։ Գործարանում եղած 10 ցեխային պարտիական կազմակերպություններ և 10 պարտիական խմբեր մեծ ջանասիրությամբ ամենօրյա կազմակերպական աշխատանքով նպաստում են արտադրական ցուցանիշների կատարմանը, սոցիալիստական մրցության, քաղաքական-մասսայական աշխատանքի լայն ծավալմանը, հանդես են բերում հատուկ հոգատարություն դեպի բանվոր-ծառայողների կուլտուր-կենցաղային պահանջները։

Այս տեսակետից բնորոշ է էլեկտրոլիզի ցեխային պարտիական կազմակերպության աշխատանքը։ Դեռևս անցյալ տարվա սկզբներին ցեխը ետ էր մնում մի շարք կարևոր տեխնիկա-տնտեսական ցուցանիշներով։ Ցեխի կոմունիստները զգում էին իրենց ողջ պատասխանատվությունը, ելք փնտրում այդ վիճակից դուրս գալու համար։ Ցեխային պարտիական կազմակերպության քարտուղար Ա. Աֆրիկյանի մոտ հաճախ էին գալիս կոմունիստներն իրենց հուզող հարցերը լուծելու խորհուրդներով ու առաջարկություններով՝ օգնելու կոլեկտիվին դուրս գալու ճեղքվածքից։ Ցեխի կոմունիստների պահանջով պարտիական ժողովում քննարկման դրվեց ցեխի պետ Յ. Մինասյանի զեկուցումը՝ ետ մնալու պատճառների և դրանց վերացման ուղիների մասին։



Ցեխային պարտիական կազմակերպությունը նշեց և կենսագործեց մի շարք միջոցառումներ. տեղամասերը ամրապնդվեցին ձեռնահաս կադրերով, պայքար ծավալվեց սոցիալիստական մրցության կազմակերպման գործում տեղ գտած ձևականության դեմ։ Այստեղ շեշտը դրվեց մրցության մասսայականության և գործնականության վրա։ Արհմիութենական կազմակերպության հետ մեկտեղ աշխատանքի արդյունքները յուրաքանչյուր շաբաթ, տասնօրյակ ու ամիս քննության առնվեցին բրիգադաներում, հերթափոխություններում ու տեղամասերում, իսկ ամենամսյա պարտավորությունների կատարման ընթացքը՝ ցեխի կոլեկտիվի ժողովում, որտեղ և որոշվում էր թե կոնկրետ որ բրիգադան, հերթափոխը, տեղամասը սոցիալիստական մրցությունում որ տեղն է շահել։

Քիչ ջանքեր չգործադրեցին նաև կոմունիստ ագիտատորները, ցեխային թերթի խմբագրական կոլեգիայում աշխատող ընկերները։ Այստեղ անցկացվող ամեն մի զրույց սկսվում էր արտադրության ցավոտ կողմերի վերացման ուղիներից, առաջավորների խրախուսումից։ Ցեխային և համագործարանային «Մուրճ» թերթում հաճախ երևում էր ծաղրանկար, սուր քննադատական խոսք ետ մնացողների հասցեին։ Չանցած 2 ամիս էլեկտրոլիզի ցեխի կոլեկտիվը դուրս եկավ ճեղքվածքից և մինչև այսօր էլ սոցիալիստական մրցության մեջ միշտ գրավում է առաջին տեղը գործարանում։

Պարտիական սկզբնական կազմակերպության բյուրոն որոշեց առաջիկա պարտիական ժողովում ընդհանրացնել էլեկտրոլիզի ցեխի պարտիական կազմակերպության աշխատանքի փորձը և միաժամանակ հուշել ու օգնել նրան վեր հանելու դեռևս չօգտագործված ռեզերվները։ Ժողովը նշեց, որ ցեխի կոլեկտիվը հաջողությամբ և ժամկետից շուտ կատարեց 1959 թվականի պետական պլանը, նոր արտադրական հաջողություններով սկսելով յոթնամյակի երկրորդ տարին։ Այստեղ, շնորհիվ պարտիական կազմակերպության ձեռնարկած միջոցների, զգալիորեն իջեցվել է մեկ տոննա ալյումինի համար օգտագործվող նյութերի ծախսի գործակիցը, տնտեսվել է ավելի քան 900 հազար կիլովատ ժամ էլեկտրաէներգիա։ Այս գործում մեծ թարմություն են մտցրել հատկապես կոմունիստական աշխատանքի բրիգադաները, որոնք ավելի նպատակասլաց դարձնելով սոցիալիստական մրցությունը՝ պայքարում են կոմունիստաբար աշխատելու և ապրելու համար։ Սակայն չի կարելի ասել, որ այստեղ ամեն ինչ հարթ է։ Կոմունիստները, ճիշտ ըմբռնելով պարտիական ժողովի հիմնական նպատակը, ցեխային պարտիական կազմակերպության ուշադրությունը բևեռեցին կոլեկտիվի յուրաքանչյուր անդամի հետ տարվող աշխատանքի հետագա ուժեղացման վրա։ Եվ բնական էր, երբ կոմունիստները իրենց ելույթներում շեշտը դնում էին այդ հարցի վրա։ Իր ելույթը կոմունիստ Ա. Սարգսյանը հենց այդպես էլ սկսեց։ Նա նշեց, որ ցեխային պարտիական կազմակերպության գլխավոր թերությունն այն է, որ պարտիական բյուրոն, առանձին տեղամասերի, հերթափոխությունների պարտիական խմբեր և պետերից ոմանք, (օրինակ՝ Նազարյան, Վարդանյան, Ավետիսյան) կլանվելով զուտ արտադրական հարցերով, հաճախ աչքաթող են անում արտադրության բախտը որոշողների՝ մարդկանց հետ տարվող աշխատանքը։

Պարտիական ժողովում ծավալված քննադատությունն, իրոք, ցեխային պարտիական կազմակերպության ու պարտիական խմբերի հետագա գործունեության մեջ թարմություն մտցրեց։ Այժմ ցեխում, հերթափոխությունում չկա

մի հարց, որ չվերաբերվի պարտիական խմբին, չհուզի նրա կոմունիստներին։ Այս տեսակետից բնորոշ է էլեկտրոլիզնիկների հերթափոխության պարտիական խմբի աշխատանքը (պարտիական կազմակերպիչ Ա. Պետրոսյան)։ Մի քանի ամիս է, ինչ ամբողջ հերթափոխությունը պայքարում է կոմունիստական աշխատանքի կոչման համար։ Այդ անցած ժամանակաշրջանում քիչ բան չի արված։ Բայց այն չի բավարարում հերթափոխության կոմունիստներին։ Վերջերս կոմունիստների առաջարկությամբ այս հերթափոխության աշխատողները հավաքվել էին գործարանի կուլտուրայի պալատը՝ մտքեր փոխանակելու, թե ինչ դեռ չի արված կոմունիստական աշխատանքի կոչում ստանալու համար։ Պարտիական խումբը իր աշխատանքը այնպես է կազմակերպում, որ հերթափոխության ոչ մի անդամ դուրս չմնա ուշադրության տեսադաշտից, պատասխանատու զգա գործերի վիճակի համար։

Այդ նպատակով պարտիական խումբը ձեռնարկել է մի նոր միջոց. յուրաքանչյուր բանվոր (հերթով) կոլեկտիվի առջև հանդես է գալիս որպես ագիտատոր։ Այդ հնարավորություն է տալիս պարտիական խմբին՝ աշխատելու յուրաքանչյուրի հետ առանձին, հաշվի առնելու նրանց առանձնահատկությունները, գիտելիքները, ընդունակությունները։ Դա հատկապես օգնում է ագիտացիայի թեման ճիշտ ընտրելուն։ Մյուս կողմից՝ այն նպաստում է շարքային բանվորների ակտիվացմանը, օգնում նրանց քաղաքական գիտելիքների բարձրացմանը, մտահորիզոնի լայնացմանը, դարձնում նրանց պարտիական-քաղաքական աշխատանքի անմիջական մասնակիցներ։ Պարտիական խմբի կազմակերպիչ Պետրոսյանը, հերթափոխության պետ ինժեներ Ոսկանյանը խնամքով ու մեծ հոգատարությամբ օգնում են բանվորներին՝ թեման, գրականությունը և այլ նյութեր ընտրելիս։ Կոլեկտիվի դաստիարակության համար մեծ նշանակություն ունի նաև կուլտուրական ժամանցի կազմակերպումը։

Պարտիական խումբը հատուկ ուշադրություն է հատկացնում հերթափոխության անդամների ուսուցման հարցերին։ Ավելի որակյալ ու փորձված բանվորներն ու բրիգադները պարապում են երիտասարդ ու ետ մնացող բանվորների հետ, կազմակերպում առաջավոր փորձի փոխանակում։ Մի շարք ընկերներ սովորում են գիշերային դպրոցներում ու տեխնիկումներում։ Հերթափոխության կոլեկտիվը, նրա ղեկավարները ձգտում են անել ամեն ինչ հերթափոխության բոլոր բանվորներին օրինակելի դարձնելու, առանձին մարդկանց անհանդուրժելի թերությունները վերացնելու համար։ Հերթափոխությունում շատ հաճախ էին խոսում Ա. Գևորգյանի վարքագծի մասին։ Նրան կոլեկտիվի անդամները ճանաչում էին որպես անքարիշտ, ընկերների ու հարևանների հետ հաճախ վեճի բռնվող, հասարակական կարգը խախտող։ Մա մի բիծ էր, որ պետք էր վերացնել։ Մի շարք միջոցառումներ ցանկալի արդյունք չտվին։ Եվ ահա Գևորգյանի դաստիարակման գործը իրենց ձեռքը վերցրին հերթափոխի պետ Ա. Ոսկանյանը և պարտկազմակերպիչ Ա. Պետրոսյանը։ Նրանք ամենից առաջ դարձան նրա մտերիմը, ընկերը։ Հաճախակի եղան նրա տանը, բարեկամացան ընտանիքի անդամների հետ, օգնեցին բնակարանի վերանորոգմանը։ Այժմ Ա. Գևորգյանը ասես թե ուրիշ մարդ է դարձել. նա իր անձնական հարցերի մասին խորհրդակցում է հերթափոխության պետի ու պարտկազմակերպչի հետ։

Պարտիական խմբի աշխատանքի բնորոշն ու առանձնահատուկն այն է, որ նա չի սահմանափակվում արտադրական նեղ շրջանակների մեջ, իր ազ-



դեցությունը տարածում է տնային տնտեսուհիների ու երեխաների վրա։ Այսպես, օրինակ, ահազանգումներ էին ստացվել, որ առանձին երեխաներ դպրոցում վատ են սովորում։ Կոմունիստները հանձնարարեցին խմբի կազմակերպիչ Պետրոսյանին մի քանի այլ ընկերների հետ ուսումնասիրել այդ վիճակը։ Նա եղավ հերթափոխի բանվոր Ա. Վերդյանի բնակարանում, զրուցեց երեխաների ու ծնողների հետ, պարզվեց, որ ոչ մայրը և ոչ էլ հայրը լրջորեն չեն հետևում տղայի և աղջկա ուսուցմանը, չեն միջամտում նրանց դասերի պատրաստմանը։ Պարտիական կազմակերպչի միջամտությունը օգնեց ծնողներին ավելի մոտ կանգնելու դպրոցին, հաճախակի շփվելու ուսուցիչների հետ, երեխաների համար սահմանելու օրվա ռեժիմ։

Այդ կարգի հարցերի մեջ խորամուխ լինելը պարտկազմակերպչին հանգեցրեց և մի այլ մտքի. անհրաժեշտ է ծնողներին օգնել երեխաներին ճիշտ դաստիարակելու գործում։ Այդ կապակցությամբ ծնողների համար կազմակերպվեցին զրույցներ ու զեկուցումներ երեխաների դաստիարակության մասին։ Օգնության եկան դպրոցի ուսուցիչները. ծնողները ևս հանդես եկան ու պատմեցին իրենց երեխաների ընտանեկան դաստիարակության մասին։

Պարտիական խմբերի, ցեխային պարտիական կազմակերպությունների աշխատանքը նպաստում է կոլեկտիվի ամրապնդմանը, ստեղծում առողջ ու կոմունիստաբար աշխատող, մտածող ու պայքարող կոլեկտիվ։

Գործարանի ցեխային պարտիական կազմակերպությունները, պարտիական խմբերը ուշադրությամբ ունկնդրում են կոլեկտիվի անդամների և նրանց ընտանիքների կողմից բարձրացված կուլտ-կենցաղային հարցերին։ Ավանի բնակիչները բազմիցս դիմել էին գործարանի կոմունալ բաժնի ղեկավարությանը՝ ջեռուցման սիստեմի աննորմալ աշխատանքի կապակցությամբ։ Սակայն կոմունալ բաժնի վարիչ Ա. Դանիելյանը զանազան պատճառաբանություններով կոնկրետ միջոցներ չէր ձեռնարկում բնակիչների պահանջը բավարարելու համար։ Կոմունալ բաժնի ցեխային պարտիական կազմակերպությունն ուսումնասիրեց այս հարցը, և քննարկման դրվեց բաժնի պարտիական դռնբաց ժողովում. ժողովին ակտիվ մասնակցություն ցույց տվին ավանի բնակիչները, որոնք իրենց գործնական առաջարկություններով օգնեցին կոմունիստներին՝ հարցը ճիշտ լուծելու։ Առանձնացվեց բրիգադ՝ վերանորոգման գործում եղած թերությունները վերացնելու և հսկողություն սահմանելու ջեռուցման սիստեմի անխափան աշխատանքի համար։

Ցեխային պարտիական կազմակերպությունների ու պարտիական խմբերի ստեղծագործ աշխատանքը թարմություն ու աշխուժություն է մտցնում սկզբնական պարտիական կազմակերպության ողջ գործունեության մեջ, այն դարձնում ավելի ակտիվ, կոլեկտիվի կյանքի բոլոր կողմերի վրա ներգործող։ Ինչքան աշխույժ ու բովանդակալից է ստորին պարտիական կազմակերպության աշխատանքը, այնքան ուժեղ է սկզբնական կազմակերպությունը, նպատակասլաց նրա գործունեությունը։

Մարդկանց հետ կատարվող քաղաքական-մասսայական աշխատանքն անխզելիորեն կապված է գործարանի առջև կանգնած խնդիրների հետ։ Ագիտկոլեկտիվը, որի 64 տոկոսը ինժեներներ ու գործարանի ղեկավար աշխատողներ են, ընդգրկում է բոլոր ցեխերը, տեղամասերը, հերթափոխությունները և բրիգադները։ Ագիտատորներն աշխատավորների հետ սիստեմատիկ անց են կացնում զրույցներ և աշխատանքում օգնում բանվորներին։

Ուսանելի է Սարգիս Մինասյանի ագիտացիոն աշխատանքի փորձը: 8-րդ տարին է, ինչ նա ագիտատոր է. Մինասյանը ոտք դրեց գործարան, որպես բանվոր, իսկ այժմ տեղամասի պետ է: Մինասյանի զրույցը բանվորները լսում են մեծ հետաքրքրությամբ: Նա կարողանում է այն կապել գործարանի կյանքի հետ, որը մեծ չափով նպաստում է արտադրության առաջընթացին: Երբ էլեկտրոլիզնիկ, նորարար Սարգիս Հակոբյանի օրինակով գործարանում շարժում սկսվեց էլեկտրաէներգիայի խնայողության համար, այդ փորձը ամենից շուտ արմատավորվեց այն ցեխում, ուր ագիտատոր է Սարգիս Մինասյանը: Նա գիտեր, որ Ա. Ստեփանյանի բրիգադայում անոդների օգտակար գործակիցը շատ բարձր է, և պատճառում է էլեկտրաէներգիայի մեծ գերածախսեր: Ագիտատոր Մինասյանը բանվորներին օգնեց վաննաներում «բռնկումները» մինիմումի հասցնելու, որը հնարավորություն տվեց ամեն ամիս խնայել 5—10 հազար կիլովատ ժամ էլեկտրաէներգիա:

Մինասյանի օրինակը եզակի չէ: Ագիտատորներ Երվանդ Ավագյանը, Մարատ Նազարյանը, Էդուարդ Դուրինյանը, Անուշավան Շահնազարյանը և ուրիշներ նույնպես աճել են գործարանում՝ շարքային բանվորից մինչև արտադրության հրամանատարի, սկսնակ ագիտատորից մինչև փորձված և գիտելիքներով հարուստ պրոպագանդիստի աստիճանը:

Բանվորների մեջ մեծ հարգանք է վայելում էլեկտրոլիզի ցեխի երկրորդ կորպուսի պետ Է. Հակոբյանը: Բանվորները սիրում են նրան ոչ միայն որպես արտադրության ղեկավարի, այլև որպես շնորհալի ագիտատորի:

Քաղաքական աշխատանքը մշտապես գործող ագիտկետի միջոցով ընդգրկում է նաև գործարանի բանավանի բնակչությանը: Ագիտկետը տեղավորված է գործարանի կուլտուրայի պալատում: Այստեղ հաճախորդները կարող են գտնել թերթեր, ամսագրեր, գեղարվեստական և քաղաքական գրականություն, շախմատ, հեռուստացույց, ռադիոընդունիչ: Ագիտկետը իր աշխատանքում հենվում է գործարանի պարտիական և տնտեսական ակտիվի վրա:

Ավելի պատրաստված կոմունիստներից ստեղծված է կոնսուլտանտների խումբ, որտեղ ընդգրկված են պարտբյուրոյի քարտուղարի տեղակալ Գ. Թոքմաջյանը, կապիտալ շինարարության բաժնի պետ Վ. Ստեփանյանը, գիտահետազոտական խմբի ղեկավար Պ. Սահակյանը և ուրիշներ: Կուլտուրայի պալատին կից ստեղծված է կուլտուրայի համալսարան: Բանավանի տնային տնտեսուհիների համար գործում է սանիտարական լուսավորության ֆակուլտետը: Այնտեղ կարդացվող դասախոսություններին հետևում է գիտապոպուլյար կամ առողջապահական ֆիլմերի ցուցադրումը: Սանլուսֆակուլտետի պարապմունքներին մասնակցում են 300—400 կանայք: Կուլտուրայի պալատում ստեղծված է երկժամյա պանսիոնատ՝ պարապմունքներին մասնակցող մայրերի երեխաների համար: Գործում են մի շարք ինքնագործունեության խմբակներ, որոնց մեջ ընդգրկված են շուրջ 250 բանվոր և ծառայող: Բացի այդ, գործարանի և շրջանի մյուս ձեռնարկությունների բանվորների և ծառայողների ավելի քան 500 երեխաներ ընդգրկված են նկարչական, քանդակագործական, նավաշինական և այլ ինքնագործ խմբակներում: Ավելի քան 300 երեխաներ կապված են մանկական գրադարանի հետ: Առանձնապես մեծ մասսայականություն սկսեցին վայելել հարց ու պատասխանի երեկոները, բանավոր ամսագրերը:

Գործարանի կոլեկտիվի զգալի մասը, հատկապես ղեկավար կազմը, հան-



դես է գալիս որպես դաստիարակ: Ահա մի օրինակ: Գործարանի դիրեկտոր Հ. Դովլաթյանի աշխատասենյակը մտավ մի քաղաքացի.

— Ես նոր եմ վերադարձել բանտարկությունից,— դիմեց նա դիրեկտորին,— անցյալում ես վատ ճանապարհով եմ գնացել, իմ խղճի վրա շատ մութ բաներ են նստած: Ես որոշել եմ վերջ դնել այդ բոլորին և դառնալ պետքական մարդ: Ձեր օգնությանն եմ դիմում: Եթե կարող եք, ընդունեք ինձ աշխատանքի: Օգնեցեք ինձ թոթափելու անցյալը և լինելու այնպես, ինչպես բոլորն են:

Գործարանի դիրեկտորը ներքուստ զգալով դիմացինի հուզմունքը և հավատալով նրա խոսքերի անկեղծությանը, նրան ընդունեց աշխատանքի: Նա նշանակվեց գործարանում հնոցապան: Բայց դիրեկտորը դրանով չհանգստացավ: Նա իր մոտ կանչեց կոմունիստ բանվորներ Մուշեղյանին ու Հակոբյանին և հանձնարարեց նրանց ամեն բանով օգնել նորեկին, դաստիարակել նրան: Վերջերս նա ընկերների օգնությամբ ստացավ արտադրական որակավորում, ամուսնացավ և դարձավ հասարակության համար օգտակար մարդ:

Հաճելի է հիշել, որ ինժեներները, վարպետները և բանվորները հաճախ լինում են իրենց շեֆ դպրոցներում՝ երեխաների մոտ: Նրանցից շատերը պիոներական ջոկատավարներ են: Երկու տարի է, ինչ դպրոցում պիոներ ջոկատավար է ինժեներ Մելքոնյանը: Նա դաստիարակչական պատվավոր աշխատանք է կատարում, կազմակերպում է շատ հետաքրքիր հավաքներ, էքսկուրսիաներ, արշավներ: Գրեթե բոլոր հանգստի օրերին նրան կարելի է տեսնել երեխաների շրջանում: Մելքոնյանը հանդիպում է երեխաների ծնողների հետ և դաստիարակի հետ միասին՝ օգնում ուսման մեջ ետ մնացող երեխաներին: Գործարանում այդպիսի 24 ջոկատավարներ կան: Դրանց թվում են՝ կոմունիստ բրիգադիր Ռուբեն Պապոյանը, կոմերիտական փականագործ Վալոդյա Ասատրյանը, կոմունիստ բրիգադիր Վազգեն Ավագյանը, բանվոր Անդրանիկ Հարությունյանը և ուրիշներ: Իսկ շատ ինժեներներ, օրինակ, Ա. Գյուլնազարյանը, Ա. Սաֆարյանը, Վ. Ավետիսյանը հաճույքով օգնում են ենթաշեֆ դպրոցի 8—10-րդ դասարանցիներին՝ տիրապետելու արտադրական այս կամ այն մասնագիտությանը: Մասնագիտությունը լավ տիրապետելուն օգնում է կապը արտադրական ձեռնարկությունների հետ: Դպրոցականներ Իվետա Ավետիսյանը, Սոնյա Մաչկալովան, Ալլա Գեորգյանը սովորելով տասներորդ դասարանում՝ հաճախում են գործարանի քիմիական լաբորատորիան՝ պրակտիկայի. ստանալով լաբորանտի մասնագիտություն, արդեն երկու տարի է, ինչ նրանք աշխատում են գործարանում և միաժամանակ հեռակա կարգով սովորում ինստիտուտներում:

Գործարանում ստեղծված կանանց խորհրդին կից գործում են բազմաթիվ սեկցիաներ՝ կենցաղային, կուլտուր-մասսայական, արտադրական, աշխատանք երեխաների հետ և այլն: Կանանց խորհուրդը սիստեմատիկաբար կազմակերպում է տնային տնտեսուհիների էքսկուրսիա՝ դեպի գործարան, որտեղ աշխատում են իրենց հարազատները, մտերիմները: Խորհուրդը որոշեց կարգի բերել գործարանի շրջակայքը: Գարնանը նրանք ծաղիկներ և ծառեր տնկեցին գործարանի տերիտորիայում, կարգի բերեցին ցեխերի կարմիր անկյունները: Նրանցից շատերը ընդգրկված են ինքնագործունեության տարբեր խմբակներում: Կանանց խորհրդի որոշմամբ տնտեսուհիները բարեկարգում են բնա-

կելի տների բակերը։ Նրանց մեջ մեծ արձագանք գտավ Կիրովական քաղաքի տնտեսուհիների կոչը՝ կոմունիստական կենցաղավարության համար։

Մարդկանց հետ տարվող քաղաքական-դաստիարակչական աշխատանքը զգալիորեն նպաստել է արտադրության վերելքին։ Այն հնարավորություն է տվել գործարանի կոլեկտիվին՝ մի քանի անգամ առաջնություն նվաճելու սոցիալիստական մրցության մեջ։ Այժմ կոլեկտիվը համառորեն պայքարում է կոմունիստական աշխատանքի կոչման համար։

Ե. ՄԵԼՔՈՆՅԱՆ
Մ. ՀԱՄԲԱՐՁՈՒՄՅԱՆ

## ՃԻՇՏ ԸՆԹԱՑՔ ՏԱԼ ԴԻՄՈՒՄՆԵՐԻՆ

Պարտիական, պետական ու տնտեսական օրգանները ամեն օր աշխատավորությունից ստանում են բազմաթիվ նամակներ, դիմումներ ու բողոքներ։ Աշխատավորության լայն զանգվածները հաճախ արծարծելով իրենց անձնական հարցերը, միաժամանակ իրավացի կերպով քննադատում են այս կամ այն կազմակերպության, այս կամ այն պաշտոնատար անձի աշխատանքում տեղ գտած թերությունները, որոնց շահագրգռվածություն հանդես բերում օգնելու պարտիական, սովետական հիմնարկություններին՝ ճկունացնելու ապարատի աշխատանքը, բարձրացնելու նրա մարտունակությունը, արմատախիլ անելու բյուրոկրատիզմի ամեն մի դրսևորում։ Նրանք հաճախ պարտիական, պետական շինարարության բազմաթիվ հարցերի մասին իրենց կարծիքն ու մտորումներն են արտահայտում։ Հենց դրա մեջ էլ իր ցայտուն արտահայտությունն է գտնում մեր աշխատավորության բարձր քաղաքական ակտիվությունը, որը սովետական դեմոկրատիզմի զարգացման արդյունք է։

Աշխատավորության նամակներին, դիմումներին ու բողոքներին ժամանակին արձագանքելն ու դրանց լուծում տալը պարտիական կազմակերպությունների, պետական օրգանների աշխատանքի կարևորագույն բնագավառներից մեկն է։ Սովետական բոլոր հիմնարկների աշխատողներից Վ. Ի. Լենինը պահանջում էր արտակարգ ուշադիր լինել դեպի աշխատավորների կարիքները, համբերությամբ ունկնդրել նրանց, արագորեն լուծել նրանց կողմից բարձրացված հարցերը։ Նա նշում էր, որ սովետական ապարատի հասցեին աշխատավորության կողմից արված դիտողություններն ու բողոքները, ըստ էության, մասսաների «ներքևից» եկող լայն վերահսկողության դրսևորումն են։

Ցույց տալով սովետական պետական ապարատի առավելությունները, Լենինը պահանջում էր վճռականապես բացահայտել և վերացնել նրա աշխատանքում եղած թերությունները։ Նա հատուկ ուշադրություն էր դարձնում բյուրոկրատիզմի դեմ մղվող պայքարին։ Լենինը նշում էր, որ ղեկավարման բյուրոկրատական, ֆորմալ-գրասենյակային մեթոդներն անհամատեղելի են Սովետական իշխանության բնույթի հետ, որ անհրաժեշտ է մշտական պայքար մղել պետական ապարատի աշխատանքում եղած բյուրոկրատական խեղաթյուրումների՝ քաշքշուկների, թափթփվածության և անպատասխանատվության դեմ, աշխատավորների կարիքների և պահանջների նկատմամբ անուշադիր, արհամարհական վերաբերմունքի դեմ։ Եվ պատահական չէ, որ Լենինն ինքն էլ այդ գործում անզուգական օրինակ էր ցույց տալիս։ Չնայած պարտիական և պետական գործերով խիստ ծանրաբեռնված լինելուն, նա



ժամանակ էր գտնում աշխատավորներից իր անունով ստացված բազմաթիվ բողոքներին ու հարցումներին անձամբ ծանոթանալու, դրանց ընթացք տալու։

Հայտնի է, թե ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեն ինչպիսի մեծ կարևորություն է տալիս աշխատավորության նամակների, դիմում-բողոքների ժամանակին ու հոգատար քննարկմանը։ Դեռևս 1958 թվականի օգոստոսի 2-ին «Աշխատավորության նամակների, դիմումների ու բողոքների քննարկման գործում եղած լուրջ թերությունների մասին» որոշման մեջ ՍՄԿՊ Կենտկոմը նշելով պարտիական, պետական օրգանների աշխատանքներում եղած բացերը, պահանջեց խստիվ վերացնել դրանք, բարձրացնել պարտիական կազմակերպությունների վերահսկողությունն ու պատասխանատվությունը բնակչության հարաճուն պահանջների բարելավման, սովետական տնտեսական կազմակերպությունների աշխատանքի ոճի հետագա արմատական վերակառուցման գործում։

Սակայն, ինչպես վերջերս նշեց ՀԿՊ Կենտկոմի բյուրոն, ռեսպուբլիկայի մի շարք պարտիական, սովետական ու արհմիութենական կազմակերպություններ դեռևս անբավարար են կենսագործում այդ կարևոր որոշումը։ Պարտիայի մի շարք քաղաքային ու շրջանային կոմիտեներ, քաղաքային ու շրջանային Սովետների գործադիր կոմիտեներ ձևական մոտեցում են ցուցաբերում դեպի այդ քաղաքական նշանակություն ունեցող գործը. չեն ձեռնարկում անհրաժեշտ միջոցառումներ ՍՄԿՊ ԿԿ-ի որոշումը մինչև վերջ կենսագործելու համար, հանդես են բերում անտարբերություն և աշխատավորության նամակների, դիմումների ու բողոքների քննարկման նշանակության թերագնահատում։

Վերջին ժամանակներս ստացված դիմումների մի ստվար մասը վերաբերում է աշխատավորության բնակարանային, աշխատանքային օրենսդրության, սոցիալական ապահովագրության և այլ կենսական հարցերին։ Եվ դա բնական է։ Օրավուր աճում են սովետական մարդկանց կուլտուր-կենցաղային պահանջները։ Պարտիայի ու կառավարության ձեռնարկած միջոցառումների շնորհիվ նոր թափ է ստանում բնակարանային շինարարությունը, սոցիալական ապահովագրությունը։ Աշխատավորության լայն զանգվածները շահագրգռված են է՛լ ավելի բարելավելու իրենց կարիքներն ու պահանջները։ Սակայն նամակների, դիմում-բողոքների պատճառներից մեկն էլ մեր մի շարք հիմնարկ-ձեռնարկություններում դեռևս աչքի ընկնող անհոգի բյուրոկրատիզմն է։ Որոշ տեղեր բուն են դրել առանձին բյուրոկրատներ, որոնք թղթից այն կողմ ոչինչ չեն տեսնում, խորամուխ չեն լինում աշխատավորների նամակների մեջ, չեն հետևում, որ սովետական մարդկանց հուզող հարցերը ժամանակին և անպայման լուծվեն։

Ռեսպուբլիկայի մի շարք հիմնարկ-ձեռնարկություններում, պարտիական ու արհմիութենական օրգաններում աշխատավորության նամակներին, դիմումներին ու բողոքներին ընթացք տալու կարևոր գործի նկատմամբ ցուցաբերվում է ձևական մոտեցում։ Դրանք չեն վերլուծվում, չեն արվում անհրաժեշտ հետևություններ, ըստ նամակների խմբերի ու բնույթի չեն ընդունվում անհրաժեշտ ու համապատասխան որոշումներ՝ բողոքներ ծնող պատճառները վերացնելու համար։

Ռեսպուբլիկայի արհմիութենական կազմակերպություններում ստացված

նամակների, դիմումների ու բողոքների մի զգալի մասում խոսվում է հիմնարկ-ձեռնարկությունների որոշ ղեկավար աշխատողների ոչ ճիշտ և կամակոր վերաբերմունքի մասին դեպի աշխատանքային օրենսդրության հարցերը։ Բերվում են աշխատանքից անհիմն և առանց ֆաբրիկա-գործարանային տեղական կոմիտեների համաձայնության ազատելու բազմաթիվ կոնկրետ փաստեր։ Սակայն տարօրինակն այն է, որ արհմիութենական ռեսպուբլիկական կոմիտեները և ոչ մեկին դրա համար պատասխանատվության չեն ենթարկում։ Դեռ ավելին, հաճախ նրանք արհմիության անդամին խորհուրդ են տալիս դիմելու դատական օրգաններին։

Անհրաժեշտ է զգայուն վերաբերմունք ցուցաբերել աշխատավորների նամակների և դիմումների նկատմամբ, այնպես անել, որ առաջ քաշված հարցը արագորեն լուծվի, որ բանվորը, կոլտնտեսականը, սովետական ծառայողը ստիպված չլինեն միևնույն հարցով դիմելու զանազան ինստանցիաների։ Բողոքներին ձևական ընթացք տալը ստիպում է բնակչության մի մասին դիմելու կենտրոնական օրգաններին այնպիսի հարցերով, որոնք կարող են լուծել տեղական օրգանները։ Պարտիայի մշակած միջոցառումների շնորհիվ միութենական ռեսպուբլիկաների և դրա հետ մեկտեղ տեղական կազմակերպությունների իրավունքների ընդլայնումը նոր հնարավորություններ են ստեղծում աշխատավորների պահանջմունքների բավարարման համար։

Որոշ հիմնարկություններում ու կազմակերպություններում աշխատավորության նամակների, դիմումների ու բողոքների նկատմամբ ցուցաբերվում է ձևական վերաբերմունք, խուսագրություններ։ Այսպես է վիճակը, օրինակ, Երևանի քաղաքային Սովետի գործադիր կոմիտեում։ Այստեղ որոշ բաժիններ փաստորեն վեր են ածվել առաքման ու կոնսուլտացիոն կետերի. ստացվում է դիմումը, բարեխղճորեն այն հաշվառման է ենթարկվում համապատասխան գրքում, ղեկուցվում է ղեկավարությանը և նույն բարեխղճությամբ այն ուղարկվում համապատասխան հիմնարկ-ձեռնարկությունների ղեկավարներին։ Իսկ թե հետագայում ինչ է լինում այդ դիմումի հետ, քաղաքային Սովետի գործկոմի որոշ աշխատողների քիչ է մտահոգում։

Այդ տեսակետից բարվոք չէ վիճակը նաև ռեսպուբլիկայի Սոցիալական ապահովագրության մինիստրությունում։ Մինիստրության բժշկա-աշխատանքային էքսպերտիզի տեսչությունում հաշմանդամության կատեգորիան ոչ ճիշտ որոշելու վերաբերյալ 1959 թվականին ստացված բողոքների 20 տոկոսը լուծվել է խնդրատուների օգտին։ Մինիստրությունում հաճախ քաղաքացիներին տրվում է ոչ հիմնավորված ու լրիվ պատասխան։ Դրանով պետք է բացատրել, որ միայն 1960 թվականի առաջին եռամսյակում ստացվել են բազմաթիվ կրկնվող դիմումներ, բողոքներ, որոնց զգալի մասը գրված են 3-ից 7-րդ անգամ։

Ահա մի բնորոշ փաստ։ Դեռևս 1958 թվականի ապրիլին Հոկտեմբերյանի բնակիչ Ա. Բաղդասարյանը դիմել էր մինիստրություն իր թոշակի չափը ճիշտ որոշելու համար։ Թվում է, թե պետք էր ուսումնասիրել և կարճ ժամանակամիջոցում թոշակառուին տալ պատասխան։ Բայց այդպես չեղավ. 2 տարի անընդհատ սկսվեց տենդային գրագրություն մինիստրության համապատասխան բաժնի և Հոկտեմբերյանի շրջանային Սովետի սոցիալական ապահովագրության բաժնի միջև։ Միայն վերջերս համոզվեցին, որ քաղաքացին իրա-



վացի է։ Բայց մինչև եկան այդ պարզ եզրակացության, թոշակառուի բողոքների թղթապանակն աճեց ու հասավ մոտ 55 թերթի։

Քիչ չեն փաստերը, երբ մի շարք օրգաններում ու կազմակերպություններում անհիմն կերպով ձգձգվում է բանվոր-ծառայողների նամակների, դիմումների քննարկումը, հաճախ դրանց լուծումը հանձնարարվում է մարդկանց, որոնք չեն զգում գործի լրջությունն ու պատասխանատվությունը։

Դեռևս անցյալ տարվա հունիսին վերադաս օրգաններից Հայկոոպում ստացվեց Մարտունու շրջանի առևտրի հասարակական տեսուչ Գինոյանի նամակը այն մասին, որ շրջանի Երանոս գյուղում խախտվում են սովետական առևտրի կանոնները, որ խախտողները հովանավորվում և մնում են անպատիժ։ Հասարակական տեսուչը գրում է, որ գյուղի հացի փռի վարիչ Պետրոսյանը խախտում է գները, որ ժողդատարանի որոշումից հետո նա իրավունք չունի մնալու իր պաշտոնում, բայց շրջկոոպմիության նախագահ Սուվարյանը մտերիմ հարաբերությունների մեջ լինելով նրա հետ, չի լուծում նրան պաշտոնից հեռացնելու հարցը։

Ջնայած վերադաս օրգանի պատասխանատու աշխատողի կոնկրետ ցուցմունքին, տեղում ստուգել և ժողդատարանի որոշման նկատմամբ այդպիսի վերաբերմունք ցուցաբերողներին պատասխանատվության կանչել, Հայկոոպի վարչության նախագահ ընկ. Նավոյանը այն հանձնարարել է բաժնի վարիչ Մաթևոսյանին, իսկ վերջինս էլ՝ Հակոբյանին։ Սակայն մոտ 10 ամիս է, ինչ հասարակական տեսչի լուրջ ահազանգումները անհետևանք են թողնված։

Հայկական ՍՍՌ Գյուղատնտեսության, Առևտրի, Լուսավորության մինիստրություններում, դատախազությունում տեղ է գտել խուսագրության, քաղաքացիներին ձևական պատասխաններ տալու պրակտիկան։ Ղեկավար օրգանները աշխատավորության կողմից ստացված դիմումներն ուղարկելով ստորադաս կազմակերպություններին՝ վատ են վերահսկում դրանց տրվող ընթացքին, բողոքները շատ դեպքերում ուղարկվում են այն կազմակերպություններին ու նրանց ղեկավարներին, որոնց դեմ բողոքում է քաղաքացին։

Աշխատավորության պահանջների, ահազանգումների, դիմում-բողոքների նկատմամբ անհոգի վերաբերմունք հնարավոր է միայն այնտեղ, որտեղ պարտիական կազմակերպությունները լիբերալ, անհոգի ու հաշտվողական վերաբերմունք են ցուցաբերում դեպի բյուրոկրատները, թղթասերները, կենդանի մարդկանց պահանջների նկատմամբ անհոգի վերաբերմունք ցույց տվողները։ Վ. Ի. Լենինը սովորեցնում էր անողոք վերաբերմունք դեպի բյուրոկրատները, չինովնիկներն ու քաշքշուկների սիրահարները։ Նա առաջարկում էր այդպիսիներին անհապաղ հանձնել հասարակության դատաստանին, անկախ նրանց զբաղեցրած պաշտոնից ու դիրքից։

Պարտիական, պետական, սովետական, հասարակական կազմակերպությունների ղեկավարները պետք է անձամբ պատասխանատվություն կրեն աշխատավորության դիմում-բողոքներին ընթացք տալու և դրանց ճիշտ լուծման համար։

Աշխատավորության ամենօրյա պահանջմունքների նկատմամբ հոգատար վերաբերմունքը, նրանց դիմում-բողոքները ճիշտ և ժամանակին լուծելը՝ պարտիական, պետական ապարատի աշխատանքի լենինյան ոճն է, նրա անբաժանելի մասը։ Փորձը ցույց է տալիս, որպես կանոն, որ դիմում-բողոք-

ներն ավելի շատ լինում են այնտեղ, որտեղ ավելի հաճախ են տեղի ունենում սովետական օրենքների խախտումներ, լուրջ չեն մոտենում սովետական օրինականության հարցերին։

Ղեկավար աշխատողների մասսաների հետ սերտ կապ հաստատելու հիմնական օղակներից մեկը աշխատավորության ընդունելության կազմակերպումն է։ Այստեղ կենդանի շփման միջոցով ձեռք է բերվում ղեկավարման հարուստ փորձ, հնարավորություն է ընձեռվում՝ խոր ու մոտիկից հոգալու բնակչության կարիքները։ Սակայն ամեն տեղ չէ, որ այդ գործին տրվում է անհրաժեշտ կարևորություն։ Բանն այն է, որ որոշ հիմնարկություններում, գերատեսչություններում միշտ չեն խստիվ պահպանվում ընդունելության համար սահմանված օրերն ու ժամերը, երեկոյան ժամերին չի կազմակերպվում բնակչության հատուկ ընդունելություն։ Իսկ որոշ ղեկավար աշխատողներ էլ ճիշտ չպատկերացնելով կարգ ու կանոնը, չեն սահմանում հատուկ ընդունելության օրեր ու ժամեր, ասելով. «մենք ընդունում ենք ամեն օր, ամեն ժամ։ Մեր դռները միշտ բաց են»։ Սակայն քիչ չեն փաստերը, երբ աշխատավորները չիմանալով կոնկրետ ընդունելության օրն ու ժամը, երկար ժամանակ չեն կարողանում իրենց հարուցած հարցերը լուծել։ Պարզ է, որ ղեկավար աշխատողը չի կարող աշխատանքի բոլոր ժամերին նստել ու սպասել, թե ով կգա ընդունելության։ Նրա գործունեության զգալի մասը պետք է անցնի տեղերում, աշխատանքի կոնկրետ կազմակերպման վայրում։

Պարտիայի քաղաքային, շրջանային կոմիտեները պետք է մտցնեն անհրաժեշտ կարգ ու կանոն աշխատավորության ընդունելության կազմակերպման գործում, պահանջեն բոլոր ղեկավար աշխատողներից՝ նախատեսելու բնակչության երեկոյան ժամերի ընդունելություն։

Աշխատավորության կողմից ստացված նամակների, դիմումների ու բողոքների զգալի մասում բարձրացվում են հարցեր, որոնց վերաբերող սովետական օրենքները տալիս են պարզ ու սպառիչ պատասխաններ։ Բայց աշխատավորության մի մասը ծանոթ չլինելով կամ լավ չպատկերացնելով դրանք, դիմում է համապատասխան օրգաններին։ Այդ հետևանք է այն բանի, որ շատ ձեռնարկություններում, կոլտնտեսություններում պարտիական կազմակերպությունները չեն ձեռնարկում սովետական օրենքների, կառավարության հրապարակվող որոշումների պարզաբանումը։ Ոչ բոլոր պարտիական կազմակերպություններն են ձեռնարկում այնպիսի միջոցառումներ, ինչպիսիք են հարց ու պատասխանի երեկոները, բանավոր ամսագրերը, հասարակական գծով ստեղծված կոնսուլտացիոն կետերը, որտեղ զեկուցումներով, դասախոսություններով ու կոնսուլտացիներով պետք է հանդես գան իրավաբաններ, պարտիական, սովետական ղեկավար աշխատողներ։

Այդ նպատակների համար անհրաժեշտ չափով չեն օգտագործվում գործարանային, շրջանային ռադիոհաղորդումները, թերթերը։ Ռեսպուբլիկայի դատախազությունը, Գերագույն դատարանը, Քաղաքական ու գիտական գիտելիքների տարածման ընկերությունն անբավարար են զբաղվում սովետական օրենքների պրոպագանդման ու պարզաբանման հարցերով, անտեսելով իրենց ունեցած լայն հնարավորությունները։

Պարտիական կազմակերպությունների խնդիրն է՝ ամեն մի հիմնարկությունում, ձեռնարկությունում, գերատեսչությունում ստեղծել այնպիսի մթ-



նոլորտ, որ աշխատավորության նամակների, դիմումների ու բողոքների նկատմամբ ոչ ճիշտ վերաբերմունքը դիտվի որպես սովետական քաղաքացու իրավունքների ոտնահարում, բյուրոկրատիզմի ու անկարգապահության արտահայտություն։ Անհրաժեշտ է այդ գործում ցուցաբերած ձևական մոտեցման, հարցի ոչ ճիշտ լուծման կամ ձգձգման յուրաքանչյուր փաստ դարձնել լայն քննարկման առարկա և պատասխանատվության ենթարկել մեղավորներին։

Պարտիական, սովետական օրգանները պարբերաբար պետք է ուսումնասիրեն ու վերլուծեն աշխատավորության կողմից բարձրացվող հարցերը, դրանցից հանեն պրակտիկ հետևություններ, ձեռնարկեն միջոցներ բնակչության հարաճուն պահանջմունքները լիովին բավարարելու, պարտիական, պետական ապարատի աշխատանքի ոճը բարելավելու համար։

Մ. ԱՍԱՏՐՅԱՆ
Վ. ՎԱՐԴԱՆՅԱՆ

## ԳՈՐԾՆԱԿԱՆ ՎԵՐԱՀՍԿՈՂՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ

ՍՄԿՊ Կանոնադրության համաձայն արտադրական և առևտրական ձեռնարկությունների սկզբնական պարտիական կազմակերպությունները իրավունք ունեն վերահսկելու ադմինիստրացիայի գործունեությանը։

Սակայն Կանոնադրության մեջ հանգամանորեն չի ասված, թե ինչ ձևով պետք է արտահայտվի վերահսկողությունը։ Այդ պատճառով շատ կազմակերպություններ, ինչպես հարկն է, չէին օգտագործում իրենց իրավունքը։ Վերահսկողության գոյություն ունեցող կազմակերպական ձևերը չէին համապատասխանում նոր պահանջներին ու խնդիրներին։ Գործնականում պարտիական վերահսկողության իրականացումը վեր էր ածվում գլխավորապես արտադրական պլանների կատարման մասին տնտեսական ղեկավարների հաշվետվություններ լսելուն։ Պարտկազմակերպություններում բազմակողմանիորեն չէր ուսումնասիրվում գործերի վիճակը։ Այնպիսի հարցեր, ինչպես՝ պետական օրենքների ու կարգապահության պահպանումը, մատակարարման, առաջադրանքների ժամանակին ու որակով կատարումը և ձեռնարկությունների աշխատանքի շատ այլ կարևոր հարցեր երբեմն դուրս էին մնում կազմակերպությունների տեսադաշտից։

ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեն հաշվի առնելով այդ, 1959 թ. հունիսի 26-ին որոշում ընդունեց «Արտադրական և առևտրական ձեռնարկությունների սկզբնական պարտիական կազմակերպություններում ձեռնարկության ադմինիստրացիայի գործունեության նկատմամբ պարտկազմակերպությունների կողմից վերահսկելու իրավունքն իրականացնող հանձնաժողովներ ստեղծելու մասին»։

Երևանի Սպանդարյան շրջանի կոմունիստները ջերմ հավանություն տվեցին պարտիական վերահսկողության նոր ձևերի վերաբերյալ Կենտրոնական Կոմիտեի որոշմանը։ Շրջանի արտադրական և առևտրական ձեռնարկությունների, նախագծային կազմակերպությունների և գիտա-հետազոտական ինստիտուտների սկզբնական պարտիական կազմակերպություններում ստեղծվեցին ադմինիստրացիայի գործունեությանը վերահսկելու իրավունքն իրակա-

նացնող հանձնաժողովներ, որոնց կազմում հիմնականում ընտրվեցին առավել պատրաստված, սկզբունքային, կոլեկտիվի հեղինակությունը վայելող ակտիվ կոմունիստներ։ Շրջանի արտադրական և առևտրական ձեռնարկությունների 55 սկզբնական պարտիական կազմակերպություններում ստեղծվեցին 88 վերհսկողության հանձնաժողով, որոնցում ընդգրկված են 357 կոմունիստ։ Հանձնաժողովներն արդեն ակտիվ գործունեություն են ծավալել։

Կարի № 1 ֆաբրիկայի սկզբնական պարտիական կազմակերպությունում գործում են նոր տեխնիկայի և տեխնոլոգիայի արմատավորմանը, թողարկվող արտադրանքի որակին, մատակարարմանը և իրացմանը, ադմինիստրացիայի հրամանների և միջոցառումների կատարմանը, սոցիալիստական սեփականության պահպանմանը, հումքի և օժանդակ նյութերի խնայողությանը վերահսկող պարտիական հանձնաժողովներ։ Առանձնապես լավ է աշխատում տեխնիկայի և տեխնոլոգիայի արմատավորմանը վերահսկող հանձնաժողովը։ Մինչ այդ հանձնաժողովի ստեղծումը, ֆաբրիկայում անբավարար էր ներդրվում նորագույն տեխնիկան։ Դեռևս 1958 թ. ժողտնտխորհը որոշում էր կայացրել 1959 թ. ֆաբրիկան համալրել մեքենաներով և սարքավորումներով։ Բայց այդ աշխատանքները խիստ դանդաղ էին ընթանում (մոտ 200 մեքենա տեղադրելու փոխարեն տեղադրել էին միայն 26-ը), այդ բացասաբար էր անդրադառնում աշխատանքի արտադրողականության բարձրացման վրա։ Նոր տեխնիկայի և տեխնոլոգիայի արմատավորման հանձնաժողովը հենց այս ուղղությամբ էլ տարավ իր աշխատանքը, որը տվեց դրական արդյունք. գրեթե բոլոր մեքենաները և մամլիչները կարճ ժամանակամիջոցում տեղադրվեցին, և ո՛չ միայն խնայվեց բանվորական ուժը, այլև զգալիորեն բարձրացավ աշխատանքի արտադրողականությունը, արտադրանքի որակը, ձեռնարկության աշխատանքը դարձավ ավելի ռիթմիկ։

Հանձնաժողովը բավականին աշխատանք է կատարել նաև արտադրության մեջ ռացիոնալիզատորական առաջարկությունները ներդնելու ուղղությամբ։ Մշակվել է ռացիոնալիզատորական առաջարկությունների թեմատիկա, որը տպագրվել և բաժանվել է կոլեկտիվի անդամներին. հրավիրել է գյուտարարների և ռացիոնալիզատորների կոնֆերանս։ Արտադրության շատ նորարարների առաջարկությունները ֆաբրիկային բերեցին մեծ օգուտներ. պարտանդամ, մեխանիկ՝ Կարո Հովհաննիսյանի առաջարկության ներդրմամբ տնտեսվեց 22.633, Օֆիկ Հակոբյանի առաջարկության ներդրմամբ՝ 25.404 ռուբլի։ Վահրամ Վարդանյանի առաջարկության ներդրման շնորհիվ տարեկան տնտեսվում է 270.900 ռուբլու հումք և տարբեր նյութեր։

Այսպիսով, 1959 թվականին 4-րդ եռամսյակում ինժեներա-տեխնիկական աշխատողների և բանվորների ռացիոնալիզատորական առաջարկությունները արտադրական պրոցեսներում ներդնելու շնորհիվ Կարի № 1 ֆաբրիկան ունեցել է շուրջ 321.100 ռուբլու խնայողություն։

Իր ստեղծման առաջին իսկ օրվանից ակտիվ աշխատանք ծավալեց նաև № 1 տպարանի սկզբնական պարտիական կազմակերպության՝ թողարկվող արտադրանքի որակին վերահսկող հանձնաժողովը (նախագահ Հ. Սարուխանյան)։ Ուսումնասիրությունները ցույց տվեցին, որ արտադրանքի որակը բարելավելու վերաբերյալ դիրեկցիայի հրամանով առաջ քաշված 57 առաջարկություններից 21-ին ընթացք չի տրվել։ Այս հանգամանքը անհանգստացրեց



հանձնաժողովին, որի նախաձեռնությամբ սկզբնական պարտկազմակերպությունը քննարկեց թողարկվող արտադրանքի որակի հարցը։

Ստուգումների ժամանակ հանձնաժողովը պարզեց, որ տպագրական ցեխից մամուլները կազմարարական ցեխ են գնում թերություններով, իսկ դրանք գրքերը կազմելուց հետո չեն հայտաբերվում խոտանիչների կողմից։ Դրա արդյունքը լինում է այն, որ առևտրական կազմակերպությունները ստանում էին պոլիգրաֆիական տեսակետից անորակ արտադրանք։ Որոշվեց ուսումնասիրել Պոլիգրաֆ կոմբինատի աշխատանքի փորձը, որը և հնարավորություն տվեց հայտաբերելու աշխատանքի թույլ տեղամասը. տպագրական ցեխում աշխատող 4 վերահսկիչների և 2 հարդարողների մեղքով անուշադրության է մատնվել արտադրանքի որակը։ Հանձնաժողովի ներկայացրած միջոցառումների կենսագործման շնորհիվ զգալի չափով բարելավվեց թողարկվող արտադրանքի որակը։

Կոնյակի գործարանի պարտկազմակերպությանը կից ստեղծվել են 3 հանձնաժողով, որոնցում ընդգրկված են 8 բանվոր, 5 տեխնոլոգ, 2 ծառայող։ Արտադրական պլանների կատարման ու թողարկվող արտադրանքի որակին վերահսկող հանձնաժողովի նախաձեռնությամբ, կոնյակի նստվածքը շշերում վերացնելու համար մշակվել է համապատասխան միջոցառում, որի կենսագործմամբ զգալիորեն բարելավվել է արտադրանքի որակը։ Հանձնաժողովն արել է նաև այլ առաջարկություններ, որոնք նույնպես տալիս են դրական արդյունք։ Նույն պարտիական կազմակերպությունում մեքենաների անխափան աշխատանքին և նոր տեխնիկայի արմատավորմանը վերահսկող հանձնաժողովը հետևողական աշխատանք է տանում ռացիոնալիզատորական առաջարկությունները արտադրության մեջ ներդնելու ուղղությամբ։ Հանձնաժողովի առաջարկությամբ կատարվել է մի քանի մեքենաների կապիտալ վերանորոգում, իսկ մի շարք այլ մեքենաներ փոխարինվել են նոր, ավելի կատարելագործված սարքավորումներով։ Աշխատանքի որոշ դրական փորձ ունեն նաև «Քիմիագործ», «Մետաղ» արտելների և այլ սկզբնական պարտիական կազմակերպությունների հանձնաժողովները։

Սակայն շրջանում դեռևս կան պարտկազմակերպություններ, որոնք մինչև վերջերս դեռ չէին ստեղծել պարտիական վերահսկողության հանձնաժողովներ։ Այդպիսիներից են, օրինակ՝ Կապի մինիստրության գծային տեխնիկական հանգույցի, Ռադիոցանցի կազմակերպությունները։ Որոշ պարտկազմակերպություններ էլ բավարարվել են միայն հանձնաժողովներ ստեղծելով, իսկ թե ի՞նչ են անում այդ հանձնաժողովները, դա նրանց չի հետաքրքրում։

Կոշկի անհատական պատվերների ֆաբրիկայի սկզբնական պարտիական կազմակերպություններում 1959 թվականի հուլիսին ստեղծվել է պարտիական վերահսկողության մի հանձնաժողով, որի կոնկրետ անելիքները դեռևս պարզ չեն։ Պարտկազմակերպության և նրա բյուրոյի անբավարար օգնության հետևանքով հանձնաժողովի աշխատանքը մատնվել է ինքնահոսի և այդ այն ժամանակ, երբ ֆաբրիկայի աշխատանքներում կան լուրջ թերություններ։ Նույնպիսի վիճակ գոյություն ունի նաև Երքաղսովետի Տեղարդյունաբերության կենցաղսպասարկման կոմբինատի, գարեջրի № 2 գործարանի սկզբնական պարտիական կազմակերպություններում և այլն։

Մխիթարական չէ նաև Կիրովի անվան կահույքի ֆաբրիկայի սկզբնական պարտկազմակերպությունում ստեղծված պարտիական վերահսկողության

հանձնաժողովների գործունեությունը։ Ժամանակին այստեղ ստեղծվել է աշխատանքային կարգապահության վերահսկող հանձնաժողով, որը պետք է պայքարեր կարգապահության խախտումների դեմ, մինչդեռ հանձնաժողովը այս ուղղությամբ ոչինչ չի արել։ Լավ չի աշխատում նաև նույն պարտկազմակերպության նոր տեխնիկայի արմատավորման և ռացիոնալիզատորական առաջարկությունների ներդրմանը վերահսկող հանձնաժողովը։

Որոշ ձեռնարկությունների ղեկավարներ և սկզբնական պարտկազմակերպությունների քարտուղարներ ո՛չ միայն չեն բարձրացնում պարտիական վերահսկողության հանձնաժողովների հեղինակությունը, չեն կազմակերպում նրանց աշխատանքը և ուղղություն տալիս, այլև իրենց անհոգի, անտարբեր վերաբերմունքով փաստորեն դիմազրկում են հանձնաժողովներին։ Այդպիսիներից են, օրինակ, Ժողտնտխորհի № 5 ավտոպարկի, գեղարվեստա-արտադրական կոմբինատի և այլ ձեռնարկությունների պարտկազմակերպությունների քարտուղարները և հիմնարկության ղեկավարները։

Մեծ և պատասխանատու խնդիր է դրված շինարարական կազմակերպությունների առաջ՝ կատարել բնակարանային, կուլտուր-կենցաղային, արտադրական ձեռնարկությունների շինարարության պլանները, բարելավել շինարարության որակը, իջեցնել արժեքը։ Այդ գործին օգնելու համար շրջանի 8 խոշոր շինարարական կազմակերպություններում ստեղծված են պարտիական վերահսկողության 12 հանձնաժողով։ Դրանցից շատերը, իհարկե, որոշ դրական աշխատանք կատարում են։ Բայց ի՞նչ կարելի է ասել, օրինակ «Կոլխոզշին» շինարարական վարչության սկզբնական պարտիական կազմակերպությունում ստեղծված նոր տեխնիկայի ներդրման և մատակարարման որակին վերահսկող հանձնաժողովների մասին, երբ դրանցից առաջինը մասամբ, իսկ երկրորդը ամբողջապես մատնվել են անգործության։ Շինվարչության պարտկազմակերպությունը (քարտուղար Ա. Օհանյան) միայն դեպքից-դեպք է անդրադառնում հանձնաժողովների գործունեությանը։

Ավելի անմխիթար է Հիմքերի կառուցման վարչության սկզբնական պարտկազմակերպության պարտիական վերահսկողության հանձնաժողովի աշխատանքների վիճակը։ Այդ հանձնաժողովին, կարծես թե, բոլորովին չի մտահոգում այն, որ իրենց շինարարական կազմակերպությունը տարիներ շարունակ չի կատարում պետական առաջադրանքը։

Շուրջ 21 հանձնաժողովներ են ստեղծված շրջանի առևտրի ձեռնարկությունների սկզբնական պարտիական կազմակերպություններում. այդ հանձնաժողովների գործունեության շնորհիվ, անշուշտ, առևտրի գործը որոշ չափով բարելավվել է։ Երոննդաւի խանութների սկզբնական պարտկազմակերպություններում (քարտուղար Մարկոսյան) լավ են գործում սովետական առևտրի կանոնների պահպանման ու ապրանքների անընդմեջ մատակարարման ապահովմանը վերահսկող հանձնաժողովները, որոնք որոշակի գործ են կատարել խանութների աշխատանքներում եղած թերությունների բացահայտման և վերացման ուղղությամբ։ Այն հանձնաժողովը, որին գլխավորում է անհատական թոշակառու, հին բոլշևիկ ընկ. Հայրապետյանը, խորապես ուսումնասիրեց №№ 105, 46, 55, 57, 32, 131 խանութներում ապրանքաշրջանառության պլանների թերակատարման պատճառները. վերոհիշյալ խանութներում բացակայում էր խելացի, կազմակերպված աշխատանքը, ապրանքները վատ էին ցուցադրվում, նկատվում էին քաղաքացիներին կողպտելու և վիրավորելու դեպքեր։



Պարտկազմակերպությունը, քննության առնելով հանձնաժողովի առաջարկությունները, մշակեց կոնկրետ միջոցառումներ գոյություն ունեցող թերությունները վերացնելու համար։

Առանձին խանութների հակասանիտարական վիճակը, առևտրի առանձին աշխատողների կողմից գների խախտման, թերակշռման, գնորդներին վիրավորելու, սովետական կուլտուրական առևտրի կանոնները խախտելու դեպքերը առաջացնում են սովետական քաղաքացիների արդարացի զայրույթն ու վրդովմունքը։

№ 1 գաստրոնոմի խանութը պարենային ապրանքների՝ քաղաքի ամենախոշոր խանութն է, բայց այստեղ կարելի է հանդիպել ամեն տեսակի խախտումների, որոնց կողքով պարտիական կազմակերպությանը կից ստեղծված վերահսկողության հանձնաժողովները լռությամբ են անցնում։ Այդ հանձնաժողովները փաստորեն գոյություն ունեն միայն թղթի վրա։ Հանձնաժողովի աշխատանքի մասին ի՞նչ խոսք կարող է լինել, երբ հենց ինքը՝ առևտրի կանոնների պահպանմանը վերահսկող հանձնաժողովի նախագահ Վ. Միքայելյանը 7000 ռուբլու պակասորդ է տվել և ենթարկվել պատժի։

Պարտիական վերահսկողության հանձնաժողովների նկատմամբ անտարբեր և անպատասխանատու վերաբերմունքի ցայտուն փաստեր կան նաև ծածկած շուկայի պարտկազմակերպությունում (քարտուղար Մ. Մուրադյան), Երոննդաւի խանութների պարտկազմակերպությունում (քարտուղար Լ. Աղամյան) և այլն։

Առևտրական և հասարակական սննդի ձեռնարկությունների սկզբնական պարտիական կազմակերպությունների առաջնահերթ խնդիրն է՝ ձեռք առնել բոլոր միջոցները և լայն հնարավորություններ ստեղծել ադմինիստրացիայի գործունեությանը վերահսկող հանձնաժողովների աշխատանքի բարելավման համար, անխնա կերպով քննադատել բյուրոկրատական վերաբերմունքը նրանց դիտողությունների ու առաջարկությունների նկատմամբ, պայքարել կուլտուրական առևտրի ծավալման, խանութներում և հասարակական սննդի վայրերում պատշաճ կարգ ու կանոն հաստատելու համար։

Գիտա-հետազոտական և նախագծային ինստիտուտների պարտիական կազմակերպություններում ստեղծված վերահսկողության հանձնաժողովները կոչված են սիստեմատիկաբար վերահսկելու արդյունաբերության, տրանսպորտի շինարարության և ժողովրդական տնտեսության այլ ճյուղերի պատվերները ժամանակին և բարձր որակով կատարելու աշխատանքները։ Ահա, օրինակ, ՀՍՍՌ Գիտությունների ակադեմիայի Երկրաբանական գիտությունների ինստիտուտի պարտկազմակերպության՝ պայմանագրային աշխատանքների վերահսկողության հանձնաժողովի աշխատանքը։ Ինստիտուտի ֆինանսական գործունեության մեջ առաջացած որոշ դժվարություններ գրավեցին հանձնաժողովի ուշադրությունը. կատարված ստուգումները ցույց տվին, որ ինստիտուտը ի վիճակի էր միայն 480 հազար ռուբլու պայմանագրային աշխատանքներ կատարելու, սակայն դիրեկցիան, հաշվի չառնելով ինստիտուտի հնարավորությունները, կնքված պայմանագրերի գումարը հասցրել էր 600 հազար ռուբլու, որի հետևանքով և ստեղծվել է լարված դրություն։ Հանձնաժողովի առաջարկությամբ պարտկազմակերպությունը հարց բարձրացրեց Գիտությունների ակադեմիայի տեխնիկական գիտությունների բաժանմունքի բյուրոյի և ինստիտուտի դիրեկցիայի առաջ, մինչև պայմանագրերի կնքելը տալ

համապատասխան եզրակացության պայմանագրային աշխատանքների վերաբերյալ, որը և ընդունվեց դիրեկցիայի կողմից:

Նույն ինստիտուտը երկար ժամանակ ձգձգում էր «Հայաստանի երկրաբանություն» աշխատության հրատարակումը. հանձնաժողովը ստուգեց այդ գործը և բացահայտեց լուրջ թերություններ, որոնք խոչընդոտում էին աշխատության ժամանակին հրատարակմանը: Օրինակ՝ երկար ժամանակ հայտնի չէր, թե ովքեր են «Պետրոգրաֆիա» հատորի առանձին բաժինների պատասխանատու կատարողները, չկար «Գեոմորֆոլոգիա» գրքի բացատրական պլանը և այլն: Այս և մնացած թերությունների վերացման համար պարտիական կազմակերպությունը և ադմինիստրացիան ձեռնարկեցին կոնկրետ միջոցներ:

Որոշ դրական աշխատանք են կատարել նաև մյուս գիտա-հետազոտական և նախագծային ինստիտուտների պարտիական կազմակերպությունների վերահսկողության հանձնաժողովները: Սակայն գիտա-հետազոտական և նախագծային ինստիտուտների պարտիական կազմակերպություններին կից ստեղծված մի քանի հանձնաժողովներ անբավարար են կատարում իրենց պարտականությունները: Այսպես՝ Գիտությունների ակադեմիայի էներգետիկայի և հիդրավլիկայի ինստիտուտի պարտկազմակերպության թեմատիկ պլանների և վերադաս օրգանների առաջադրանքների կատարմանը վերահսկող հանձնաժողովը ստուգել է ինստիտուտի 1959 թվականի պլանների կատարման վիճակը և իր եզրակացությունը փոխանակ պարտկազմակերպությանը և ադմինիստրացիային ներկայացնելու, ինչպես կարգն է, այն քննության է առել հանձնաժողովի նիստում, այդ մասին նույնիսկ տեղյակ չպահելով ղեկավարությանը:

Սա կոպիտ սխալ է, որի կողքով անտարբերությամբ անցնել չի կարելի: Սրանով հանձնաժողովը փաստորեն փոխարինել է սկզբնական պարտկազմակերպությանը: Այս կարգի խախտումներ են նկատվել նաև Ժողտնտխորհի Լեռնամետալուրգիական գիտա-հետազոտական ինստիտուտում:

Երևանի Սպանդարյանի շրջանի սկզբնական պարտկազմակերպությունների կարևորագույն խնդիրն է՝ ամեն կերպ աջակցել և ճիշտ ընթացք տալ պարտիական վերահսկողության հանձնաժողովների աշխատանքին, սիստեմատիկաբար ընդհանրացնել և տարածել նրանց աշխատանքի փորձը, հետևել, որ ձեռնարկությունների, սովետական մյուս կազմակերպությունների ղեկավարները ջանք չխնայեն հայտաբերված թերությունները վերացնելու համար:

Վ. ՇԱՀԲԱԶՅԱՆ
ՀԿՊ Երևանի Սպանդարյանի
շրջկոմի քարտուղար

## ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԿՐԹՈՒԹՅԱՆ ԿԱՐԵՎՈՐԱԳՈՒՅՆ ԲՆԱԳԱՎԱՌԸ

Երիտասարդության ընդհանուր-կրթական ու տեխնիկական մակարդակի բարձրացման գործում լուրջ տեղ են գրավում երեկոյան (հերթափոխային-սեզոնային) հանրակրթական դպրոցները, որոնց համար ստեղծվում են բոլոր պայմանները. կառուցվում են հատուկ շենքեր, որոնք ապահովվում են լաբորատորիաներով, կաբինետներով և ուսումնական պիտույքներով, կոմպլեկտավորվում են առաջավոր մանկավարժական կադրերով:

Որոշ ֆաբրիկաներ ու գործարաններ կառուցում են առանձին շենքեր և



բացում երեկոյան կամ հերթափոխային սեփական դպրոցներ: Այսպես, օրինակ, Երևանում այսպիսի դպրոցներ են բացվել ժամացույցի, ալյումինի, էլեկտրատեխնիկական գործարաններում, կոմվոլային կոմբինատում և այլն: Ներկայումս ռեսպուբլիկայում 176 երեկոյան (հերթափոխային) դպրոց կա. յոթնամյակի վերջում դրանց թիվը հասնելու է 257-ի, որտեղ սովորելու են 42,5 հազար երիտասարդ բանվորներ ու կոլտնտեսականներ:

Բացի հանրակրթական երեկոյան (հերթափոխային) միջնակարգ դպրոցներից, գործարաններին ու ֆաբրիկաներին կից ստեղծվում են նաև միջնակարգ մասնագիտական տեխնիկական դպրոցներ, ինչպես նաև տեխնիկական ԲՈՒՀ-երի ֆիլիալներ:

Երևանի Ձերժինսկու անվան դազգահաշինական գործարանում 103 երիտասարդ բանվորներ առանց արտադրությունից կտրվելու սովորում են ԲՈՒՀ-երում, տեխնիկումներում և բանվոր երիտասարդության դպրոցներում: Վերջին երկու տարում այստեղ առանց արտադրությունից կտրվելու բուհերն ավարտել են 33, տեխնիկումները՝ 42, միջնակարգ հանրակրթական դպրոցները՝ 55 բանվոր: Հայէլեկտրագործարանի կոլեկտիվում բարձրագույն կրթությամբ 400 մարդ կա, 270 բանվոր սովորում են տեխնիկական բուհերում ու տեխնիկումներում, իսկ 600 մարդ՝ հերթափոխային միջնակարգ հանրակրթական դպրոցներում: Մեր մայրաքաղաքի գործարաններից ու ֆաբրիկաներից այդպիսի օրինակներ շատ կարելի է բերել: Բայց այս երկու օրինակն էլ բավական են ցույց տալու, թե գործարանների ու ֆաբրիկաների բանվորական կոլեկտիվներում ինչպիսի մեծ ձգտում կա դեպի կրթությունը և, մասնավորապես, տեխնիկական գիտելիքները:

Առանց արտադրությունից կտրվելու 9—10-րդ դասարաններում սովորող բանվորների համար օրենքով սահմանված է կրճատ բանվորական շաբաթ: Բացի կիրակի օրից, նրանք մի լրացուցիչ հանգստի օր էլ ունեն իրենց պարապմունքների համար: Ավարտական դասարաններում սովորողներին 20 օրից մինչև մեկ ամիս արձակուրդ է տրվում, որպեսզի պատրաստվեն և հանձնեն ավարտական քննությունները: Վերջերս կառավարության որոշմամբ բարձրացավ երիտասարդական երեկոյան դպրոցների դասատուների աշխատավարձը:

Երևան քաղաքում 1959—60 ուսումնական տարում գործում էին բանվոր երիտասարդության 30 երեկոյան (հերթափոխային) հանրակրթական դպրոց և գյուղական երիտասարդության 3 դպրոց (Շահումյանի շրջանում): Այս դպրոցներում սովորում էին 4580 բանվոր, ծառայող ու կոլտնտեսական: Դպրոցները սերտորեն կապված էին արտադրության հետ. գործարանների ներկայացուցիչներն ակտիվ մասնակցում էին մանկավարժական խորհուրդների աշխատանքին. դպրոցներն ունեն կահավորված լաբորատորիաներ և հարուստ գրադարաններ:

Դրական շատ բան կա Շահումյանի շրջանի № 31 դպրոցի աշխատանքում, որի դիրեկտորն է Սարգսյանը: Այս դպրոցը հիմնականում սպասարկում է Ստալինի անվան ֆաբրիկայի բանվորներին: Ֆաբրիկայի դիրեկցիան լավ է օգնում դպրոցին, խրախուսում է բանվորներին՝ լավ սովորելու համար, դպրոցում գերազանցիկները միաժամանակ կոմունիստական աշխատանքի բրիգադաների անդամներ են: Այդպիսիք են 9-րդ դասարանում սովորողներ Աղավելյանը, Մնեյանը, 8-րդ տրեստի բանվոր Գրիգորյանը և ուրիշներ: 26 կոմիսարների շրջանի № 4 դպրոցը իր գործունեության ընթացքում տվել է

866 շրջանավարտ, որոնցից 14-ը արժանացել են ոսկե և արծաթե մեդալների։ Դպրոցի 1958—1959 ուսումնական տարվա 61 շրջանավարտներից 27-ը սովորում են քաղաքի բարձրագույն ուսումնական հաստատություններում, մյուսները շարունակում են աշխատել ժամացույցի գործարանում և հեռակա կարգով սովորում են բուհերում։ Դպրոցն ունի լավ կահավորված լաբորատորիա, կաբինետներ։ Գովելի շատ բան կա նաև №№ 14, 1, 22 դպրոցներում։

Կոմվոլային կոմբինատի սկզբնական պարտիական կազմակերպությունը № 24 երեկոյան դպրոցի դիրեկտոր Օհանջանյանի հետ միասին խոշոր աշխատանք է կատարել. նրանք ստեղծել են դպրոցին օգնող խորհուրդ, որի մեջ մտնում են գործարանի, մանկավարժական խորհրդի և դեպուտատական ակտիվի ներկայացուցիչները. դպրոցում անհարգելի պատճառներով բացակայություններ համարյա չկան. աշակերտական կազմակերպությունը լավ է աշխատում, աշակերտի ամեն մի սխալ քայլ խարազանվում է, քննադատվում «Ոզնի» պատի թերթում, որը լույս է տեսնում ամեն շաբաթ։ Կազմակերպված են ինքնագործ գեղարվեստական խմբակներ, բարձր է առաջադիմությունը։

Բայց, ցավոք սրտի, այդպիսի դրական ցուցանիշներ ունեցող դպրոցների կողքին կան նաև դպրոցներ, որոնք չեն ապահովում ուսման պահանջվող առաջադիմությունը։ Ամենից առաջ առանձին դպրոցներում աչքի է ընկնում սովորողների թվի փոքրությունը։ Միջին հաշվով ամեն մի դպրոցում սովորում են մոտ 140 հոգի։ Դժբախտաբար կան դպրոցներ, որոնց սովորողների թիվը հարյուրի էլ չի հասնում։ Այսպես, Շահումյանի շրջանի № 33 դպրոցում սովորում են 65 մարդ, № 3-ում՝ 90, № 28-ում՝ 94 և այլն։ Երևանի երեկոյան դպրոցների յուրաքանչյուր դասարանում սովորողների թիվը միջին հաշվով կազմում է 15—16 մարդ, իսկ 5-րդ—6-րդ դասարաններում՝ 13-ից ոչ ավելի։

Երեկոյան (հերթափոխային) դպրոցների մեծ մասում եղած հիմնական թերությունն այն է, որ սովորողների կազմը կայուն չէ, տարեցտարի շարունակ փոխվում է։ Այդ տեսակետից դրությունը փոքր-ինչ լավ է 10-րդ դասարաններում։

1959—1960 ուսումնական տարում սովորողների կոնտինգենտը փոխվել է 6-րդ դասարաններում 90 տոկոսով, 7-րդում՝ 80, 8-րդում՝ 79, 9-րդում՝ 76, 10-րդում՝ 45 տոկոսով։

Ինչպե՞ս է տեղի ունենում այդ պրոցեսը։ Տարվա սկզբին սովորողների կոմպլեկտավորման պլանը կատարում են մոտավորապես 90—95 տոկոսով։ Ուսումնական տարվա առաջին քառորդում կորցնում են կոնտինգենտի 20—25 տոկոսը, տարվա վերջում սովորողների թիվն ավելի է նվազում, իսկ նոր ուսումնական տարվա սկզբին հներից, այսինքն՝ նախորդ տարվա ավարտողներից մնում է 30—32 տոկոսից ոչ ավելի։ Ի՞նչ է ստացվում։ Ամեն տարի մեր դպրոցները հիմնականում կորցնում են սովորողների նախորդ տարվա կոնտինգենտը և աշխատանքն սկսում նորերի հետ։ Այսպիսով տեղի է ունենում պետական միջոցների անիմաստ ծախսում։

Սովորողները խիստ անկանոն են հաճախում պարապմունքներին։ Շատ դպրոցներում կարգապահությունն ու հաճախումների տոկոսը խիստ ցածր են։ Ժողովրդական կրթության բաժնի պաշտոնական տվյալներով 30 դպրոցներում 1959—1960 ուստարվա առաջին քառորդում ամեն մի սովորող բաց է թողել միջին հաշվով 35 ուսումնական ժամ։ Դժբախտաբար այս տվյալներն այնքան



էլ լրիվ չեն արտացոլում իրական վիճակը, որովհետև սովորողների հաճախումների հաշվառումը դպրոցներում վատ է դրված։

Միջին առաջադիմությունը 1959—1960 ուս. տարվա առաջին քառորդում կազմել է 66,1 տոկոս. շատ դպրոցներում՝ դրանից էլ պակաս։ Այսպես, օրինակ, № 6 դպրոցում այն կազմել է 59,5, № 1-ում՝ 55,7, № 12-ում՝ 61,1 տոկոս և այլն։ Երբ ավելի մոտիկից ես ծանոթանում երեկոյան դպրոցների սովորողների առաջադիմության թվերին, պարզվում է, որ շատ դպրոցներում գնահատականները չեն համապատասխանում սովորողների գիտելիքներին։ Շատ հաճախ սովորողները պարապմունքի են գալիս առանց դասերը պատրաստելու։ Հաճախ պարապմունքներին պատրաստված են գալիս միայն երկու-երեք աշակերտ (№ 12 դպրոց)։

№ 2 դպրոցում քիմիայի, հայոց լեզվի և ռուսաց լեզվի դասերին ոչ մի աշակերտ տրված հարցերին պատասխանել չկարողացավ, թեև այստեղ էլ բավարար գնահատականների թիվը փոքր չէ։ Կան նույնիսկ դպրոցներ (№ 12), ու՛ր 9-րդ և 10-րդ դասարաններում սեպտեմբեր և հոկտեմբեր ամիսներին դասամատյաններում ոչ մի գնահատական չի դրված ֆիզիկայից, մաթեմատիկայից, աշխարհագրությունից, ռուսաց գրականությունից և այլ առարկաներից։

Այսպիսի փաստեր կան քաղաքի շատ երեկոյան դպրոցներում։

Շրջսովետների գործկոմների ժողկրթբաժիններին, դպրոցների մանկավարժական խորհուրդներին քիչ է անհանգստացնում սովորողների առաջադիմության անմխիթար վիճակը և, ընդհանրապես, երեկոյան (հերթափոխային) դպրոցների ուսուցման պրոցեսի վիճակը։ Իսկ պարտիայի շրջանային կոմիտեները, չնայած ամեն տարի իրենց բյուրոյի նիստերում քննության են առնում բանվորի դպրոցների աշխատանքի վիճակը, բայց հետևողական չեն իրենց որոշումների կատարման բնագավառում։

Որոշ երեկոյան դպրոցներում առանձին մանկավարժներ փորձում են սովորողների անբավարար առաջադիմությունը բացատրել ոչ թե իրենց վատ աշխատանքով, այլ սովորողների զբաղվածությամբ։ Սակայն հարցն այդպես դնել՝ նշանակում է չհասկանալ բանվոր երիտասարդության երեկոյան դըպրոցների խնդիրները։

Բանվոր երիտասարդության երեկոյան դպրոցներն, իհարկե, ունեն իրենց հատուկ դժվարությունները։ Այստեղ պետք է հաշվի առնել, որ գործ ունենք ոչ թե երեխաների, այլ հասունացած, գիտակից երիտասարդ քաղաքացիների հետ։ Բացի այդ, պետք է նկատի ունենալ, որ նրանց մեծ մասն աշխատում է ու ծառայում, հատկապես ուսմանը կարող է հատկացնել սահմանափակ ժամանակ։ Այս յուրահատկությունները հաշվի առնելով էլ պետք է կառուցվի ուսուցման պրոցեսը։ Ուսման ծանրության կենտրոնը պետք է տեղափոխվի դպրոց. հենց դասարանում, դասի ժամին էլ սովորողը պետք է յուրացնի հիմնական նյութը։ Այստեղ ավելի խիստ պահանջ է առաջանում՝ օգտագործելու դիտողական նյութերը, լրիվ կատարելով բոլոր լաբորատոր աշխատանքները, դասն ավելի կազմակերպված ու աշխույժ պետք է լինի։

Սակայն երեկոյան դպրոցների մեծ մասում դասերն անց են կացվում հին ձևով՝ գիտելիքները ստուգում են և վերջին 5 րոպեում տալիս տնային առաջադրանքներ. կան ուսուցիչներ, որոնք պարապմունքի են գալիս առանց դասի պլանի, առանց նախապատրաստվելու, ֆիզիկայի, քիմիայի, եռան-

կրաչափության դասերն անցնում են առանց դիտողական պարագաների. ոմանք, նույնիսկ, հնարավոր են համարում աշխարհագրության դասը վարել առանց քարտեզի (12-րդ բաներիտ դպրոց)։ Պարապմունքներն անցնում են տաղտկալի, պասսիվ, սովորողները գրեթե ոչինչ չեն ստանում։

Սրան պետք է ավելացնել և այն, որ որոշ դպրոցներ անհրաժեշտ կաբինետներ ու լաբորատորիաներ չունեն, իսկ եղածներն էլ ապահովված չեն համապատասխան կահավորումով։ Մասսայական հանրակրթական դպրոցների շենքերում տեղավորված երեկոյան դպրոցներն էլ ի վիճակի չեն նորմալ ձևով օգտվելու այդ դպրոցների լաբորատորիաներից ու կաբինետներից։ Մասսայական դպրոցի դիրեկտորները զանազան պատճառաբանություններով նրանց զրկում են դրանցից օգտվելու հնարավորությունից, իսկ սկզբնական պարտիական կազմակերպությունները չեն պայքարում այդպիսի վերաբերմունքի դեմ։

Յուրաքանչյուր դպրոցի առաջավոր օղակը մանկավարժական խորհուրդն է։ Բայց պետք է ընդգծել, որ առանձին երեկոյան դպրոցների մանկավարժական խորհուրդներ վատ են աշխատում։ Նրանք չեն քննարկում դպրոցական կյանքի հիմնական հարցերը—սովորողների կոմպլեկտավորումը, մշտական կոնտինգենտի պահպանումը, հաճախումների հարցը, չեն զբաղվում դաստիարակչական խնդիրներով և այլն։ Ոչ բոլոր դպրոցների մանկավարժական խորհուրդներում են ընդգրկված այն գործարանների ու ֆաբրիկաների ներկայացուցիչները, որոնց բանվորները սովորում են տվյալ դպրոցում։ Մանկավարժական խորհուրդները համարյա չեն քննարկել և ոչ մի բան չեն արել սովորողների պրոֆեսիոնալ պատրաստության ուղղությամբ, չեն զբաղվել սովորողների արտադրական որակի բարձրացման հարցերով։ Եվ իզուր չէ, որ երեկոյան դպրոցներում սովորողները գանգատվում են, թե դպրոցն ավարտելուց հետո իրենց մասնագիտության գծով առաջ չեն գնում. այդ ցույց է տալիս, որ դպրոցում ուսուցումը վատ է զուգակցվում արտադրության, սովորողների մասնագիտության հետ։

Սակայն ճիշտ չէր լինի այս թերությունների պատճառները որոնել միայն դպրոցներում։ Երեկոյան դպրոցների վիճակի համար մանկավարժական կոլեկտիվներին հավասար պատասխանատվություն է կրում նաև գործարան-ֆաբրիկայի կոլեկտիվը և, առաջին հերթին, սկզբնական պարտիական կազմակերպությունը։

Ինչպես վերն ասացինք, երեկոյան դպրոցներում 1959—1960 ուսումնական տարում սովորում էին մոտ 4400 մարդ, որ կազմում է Երևան քաղաքի հիմնարկ-ձեռնարկություններում աշխատող և միջնակարգ կրթություն չունեցող երիտասարդ բանվոր-ծառայողների ընդհանուր թվի մի փոքր մասը։ Քաղաքի գործարաններում և ֆաբրիկաներում աշխատող և ժամանակին միջնակարգ կրթություն չստացած երիտասարդներից շատ շատերը դուրս են մնացել դպրոցներից։ Այդպիսի կարևոր գործով չեն զբաղվում շատ ֆաբրիկաների ու գործարանների պարտիական ու կոմերիտական կազմակերպությունները։ Մինչև այժմ վատ է կազմակերպված երեկոյան դպրոցներում սովորողների հաշվառումը։ Հենց միայն էլեկտրալամպերի գործարանում աշխատող երիտասարդներից մոտ հազար հոգի ութնամյա կրթություն չունեն, մինչդեռ այդ գործարանի երեկոյան դպրոցում սովորում են ոչ ավելի քան հարյուր մարդ։

Երեկոյան դպրոցներում մեծ մասամբ սովորում են կոմերիտականներ,



բայց կոմերիտական կազմակերպությունները չեն հետաքրքրվում, թե նրանք ինչպե՞ս են հաճախում դպրոց և ի՞նչ առաջադիմություն ունեն։ Շատ հաճախ մանկավարժները դիմում են գործարանների, ֆաբրիկաների պարտիական, պրոֆեսիոնալ և կոմերիտական կազմակերպություններին, ահազանգում, որ սովորողների հաճախումներն անկանոն են, բայց այդ ամենն անուշադրության է մատնվում։ Նույնիսկ դեպքեր են լինում, որ ցեխերի վարիչները կամ վարպետները երիտասարդ բանվորներին ասում են. «Թե՛ դպրոց ես գնալու, ուրեմն աշխատանքդ թող»։

Մինչդեռ կան գործարաններ, որոնք իրենց սովորող երիտասարդ բանվորներին լավ առաջադիմության համար խրախուսում են զանազան ձևերով, ինչպես և այդ բանը հաշվի են առնում բանվորների որակավորումը բարձրացնելիս։ Այս միջոցառումները նպաստել են, որ բանվորները դպրոցում մնան մինչև ավարտելը (Կիրովի անվան գործարան, Կանազ, կոնվոլային կոմբինատ և այլն)։

Բանվոր երիտասարդության ուսման գործում վերը նշված թերությունները հեշտությամբ կարող են վերացվել, եթե անհրաժեշտ կապ ստեղծվի երեկոյան դպրոցների և գործարանների, ֆաբրիկաների, կոլտնտեսությունների ու սովխոզների պարտիական ու կոմերիտական կազմակերպությունների միջև։ Բայց կան նաև մի շարք կազմակերպական հարցեր, որոնք պետք է արմատապես լուծել։

Երևան քաղաքում ունենք 33 երեկոյան (հերթափոխային) դպրոց, որտեղ մանկավարժների մի խոշոր կազմ է պահվում։ Արդյո՞ք միջոցների և հնարավորությունների ցրում չէ՞ սա։ Արդյունաբերական խոշոր քաղաքների փորձը ցույց է տալիս, որ այնտեղ, որտեղ այդպիսի դպրոցներ ավելի քիչ կան, բայց ավելի շատ դասարաններով ու սովորողներով, լավագույն լաբորատորիաներով ու կաբինետներով, այնտեղ ավելի հեշտ է լինում կազմակերպել սովորողների ուսուցումն ու առաջադիմությունը։ Այնպիսի մի խոշոր արդյունաբերական կենտրոնում, ինչպիսին է Մագնիտագորսկը, կա ընդամենը 11 երեկոյան (հերթափոխային) դպրոց՝ մոտ 10 հազար սովորողներով։ Ամեն մի դպրոց ունի իր շենքը՝ 230 սովորողի համար։ Այդ դպրոցներում յուրաքանչյուր դասարան բաղկացած է 25—30 սովորողից։

Երևան քաղաքում կան խոշոր գործարաններ, որոնք ի վիճակի են նույն նախագծով կառուցելու իրենց երեկոյան դպրոցների շենքերը։ Այդպիսի 6—7 դպրոցում մենք կկարողանայինք կենտրոնացնել ներկայիս 33 դպրոցներում սովորողներին։ Միաժամանակ այդ դպրոցները կունենային իրենց արհեստանոցները, լաբորատորիաները և առարկայական կաբինետները. այդ մեծ չափով կբարձրացներ ուսման որակը և հնարավորություն կտար ճիշտ կենսագործելու պարտիայի և կառավարության որոշումը՝ կյանքի հետ դպրոցի կապն ամրապնդելու մասին։

Վերոհիշյալ թերությունները չէին լինի, եթե պարտիայի շրջանային կոմիտեները, ժողովրդական կրթության օրգանները երեկոյան դպրոցների մասին էլ հոգային այնպես, ինչպես հոգում են մասսայական դպրոցների մասին։ Գործարաններն ու ֆաբրիկաները, որտեղ մեծ թվով երիտասարդություն է աշխատում, ժողտնտխորհի իրավասության տակ են, հետևաբար նա ևս պետք է լրջորեն մտահոգվի երիտասարդության ուսուցման խնդրով։

Սկզբնական պարտիական կազմակերպությունները պետք է ուշադրության կենտրոնում պահեն բանվորների կրթության գործը:

Ժամանակն է, որ անհրաժեշտ միջոցառումներ մշակվեն բանվորական ու գյուղական երիտասարդության դպրոցներում 1960—61 ուսումնական տարին կազմակերպված դիմավորելու համար: Անհրաժեշտ է օգնել մեր փառապանծ երիտասարդությանը: Այսօր մեր երիտասարդությունը մեծ արշավի է ելել գիտելիքներ ձեռք բերելու, միջնակարգ, տեխնիկական կրթություն ստանալու համար, որովհետև նա լավ գիտի, որ նոր հասարակության՝ կոմունիզմի կառուցման համար հարկավոր է ունենալ պայծառ միտք, հմուտ ձեռքեր:

Մ. ՄԵԼԻՔՅԱՆ

## ԽՆԱՅՈՂԱԲԱՐ ՎԱՐՎԵԼ ՊԵՏԱԿԱՆ ՄԻՋՈՑՆԵՐԻ ՀԵՏ

Վ. Ի. Լենինի առաջարկությամբ Սովետական իշխանության ընդունած դեկրետներից մեկը եղել է աշխատունակությունը կորցրած աշխատավորներին և ծերերին պետության հաշվին ապահովելու դեկրետը:

Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը նորանոր միջոցառումներ են իրականացնում ժողովրդի բարեկեցության բարձրացման ուղղությամբ: Դրա վառ արտահայտությունն է հանդիսանում ՍՍՌՄ Գերագույն Սովետի հինգերորդ սեսիայի կողմից ընդունված օրենքը՝ բանվորներից և ծառայողներից գանձվող հարկերի վերացման, ինչպես նաև ընթացիկ տարում բոլոր աշխատավորներին և ծառայողներին յոթժամյա և վեցժամյա աշխատանքային օրվա փոխադրելու մասին օրենքը:

Ինչպես ամբողջ երկրում, այնպես էլ մեր ռեսպուբլիկայում տարեցտարի ավելանում է ազգաբնակչության սոցիալական ապահովագրության նպատակներին հատկացվող միջոցները: Աշխատունակությունը կորցրած և ծերացած բանվորների, ծառայողների համար ստեղծվում են հանգստյան տներ և առողջարաններ, որոնցում նրանք բուժվում են պետության հաշվին, ստեղծվում են աշխատանքի անհրաժեշտ պայմաններ ժամանակավորապես աշխատունակությունը կորցրած աշխատավորների համար: Կառուցված են հարմարավետ, անհրաժեշտ սպասարկումով ապահովված տներ՝ միայնակ ծերունիների համար և այլն:

Մեր երկրի ազգաբնակչության սոցիալական ապահովությունն ավելի լավացավ վերջին տարիների ընթացքում: 1956 թվականի հոկտեմբերին կենսաթոշակների չափերն ավելացնելու մասին ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընդունած օրենքը մեծապես բարելավեց կենսաթոշակ ստացողների նյութական վիճակը: Մեր ռեսպուբլիկայում այդ օրենքի կիրառմամբ կենսաթոշակների համար հատկացումներն ավելացան 3 անգամ: Այսպես, 1955 թվականին ռեսպուբլիկայում կենսաթոշակների համար հատկացված 135 միլիոն ռուբլու դիմաց, 1960 թվականին հատկացված է 432 միլիոն ռուբլի, որը կազմում է ռեսպուբլիկայի ամբողջ բյուջեի 12 տոկոսը:

Յուրաքանչյուր տարի պետության հաշվին թոշակառուներին բաշխվում է միութենական և ռեսպուբլիկական նշանակություն ունեցող առողջարանների հազարավոր ուղեգրեր, որոնց վրա ծախսվում է ավելի քան 2 միլիոն ռուբլի:

Հայրենական Մեծ պատերազմի հաշմանդամների համար լրիվ ապահով-



ված է պետության հաշվին պրոտեզավորումը և մոտո-սայլակների բաց թողումը: Սահմանված են արտոնություններ վտանգավոր արդյունաբերության մեջ աշխատողների համար (անհատական կենսաթոշակներ՝ բարձրացված չափերով) և այլն:

Բնակչության կենսաթոշակների և սոցիալական-կենցաղային այլ նպատակների համար պետության կողմից հատկացվող այդ հսկայական միջոցները պետք է օգտագործվեն նպատակահարմար, ճիշտ և խնայողաբար, խստիվ պահպանելով սահմանված պետական օրենքները:

Սակայն ստուգումները ցույց են տվել, որ սոցիալական ապահովագրության և տեղական սովետական օրգաններում հաճախ անհոգություն, երբեմն էլ անպատասխանատվություն կա պետական միջոցների ծախսման նկատմամբ, որն արտահայտվում է կենսաթոշակներ նշանակելու հարցում:

Պետական կենսաթոշակների վերաբերյալ օրենքի համաձայն կենսաթոշակ նշանակելու իրավունք ունեն միայն շրջանային Սովետների գործադիր կոմիտեներին կից հանձնաժողովները, իսկ շրջսովետների սոցիալ-ապահովագրության բաժինները կոչված են նախապատրաստելու թոշակավորման ենթակա քաղաքացիների գործերը, ներկայացնելու հանձնաժողովներին, որոնց որոշմամբ էլ նշանակվում է թոշակը: Այս օրգաններից է կախված կենսաթոշակների մասին օրենքների անխախտ կիրառումը: Սակայն կենսաթոշակ նշանակող հանձնաժողովների անփութության պատճառով և տեղական սոցիալ-ապահովագրության օրգանների աշխատողների ոչ պետական վերաբերմունքի և անպատասխանատվության հետևանքով հաճախակի տեղերում խախտվում են օրենքները, որով պետությունը նյութական լուրջ վնասներ է կրում:

Իբրև ապացույց բերենք մի քանի փաստեր: Այսպես, 1959—1960 թվականների ընթացքում ռեսպուբլիկայում միայն 15000 թոշակավորման գործերի ստուգումից պարզվել է, որ 520 քաղաքացի ճիշտ չեն թոշակավորվել, որի պատճառով այդ անձանց ավելի է վճարվել 1 200 հազար ռուբլի: Միայն Կամոյի շրջանի գործադիր կոմիտեի հանձնաժողովի մեղքով և սոցիալական ապահովագրության բաժնի նախկին վարիչ Թադևոսյանի հանցագործ վերաբերմունքի պատճառով ավել է վճարվել 455 հազար ռուբլի: Բանն այնտեղ է հասել, որ Թադևոսյանը կեղծ գործեր է կազմել և թոշակավորման ներկայացրել իր բարեկամներին՝ հորը, եղբորը և այլն, որոնց ստացած գումարը 65 հազար ռուբլուց ավելի է: Այս շրջանի հանձնաժողովի խարդախությունը պետական միջոցների նկատմամբ հասցրել է այն բանին, որ թոշակ են նշանակել բանտարկության մեջ եղած անձնավորության, որի հարազատները մինչև թոշակի դադարեցնելը պետությունից կորզել են 10600 ռուբլի գումար:

Կենսաթոշակներ նշանակելու հարցում այդպիսի վերաբերմունք կա և Կիրովականում, որտեղ 1959 թվականին 27 քաղաքացիներին սխալ թոշակ նշանակելու հետևանքով ավելի է վճարվել 120 հազար ռուբլի, Ղափանում 58 հոգու՝ 102 հազար ռուբլի, Ալավերդում՝ 25 հոգու՝ 108 հազար ռուբլի և այլն: Ավելի վատ է վիճակը Լենինականի քաղաքային սոցիալ-ապահովագրության բաժնում, Մեղրիի, Էջմիածնի, Աշտարակի, Արտաշատի շրջանային բաժիններում: Թվում է այսքանն էլ բավական է համոզվելու համար, թե առանձին տեղերում ինչպիսի դատապարտելի վերաբերմունք կա պետական գործի նկատմամբ:

Անհրաժեշտ է, որպեսզի պարտիական, սովետական օրգանները սոցիա-

լական ապահովագրության օրգանների աշխատողների պատասխանատվությունը բարձրացնելու նպատակով միջոցներ ձեռք առնեն, իսկ պետական միջոցների նկատմամբ անհոգություն, շռայլություն ցուցաբերողներին ենթարկեն խիստ պատասխանատվության:

Շրջանային Սովետների գործադիր կոմիտեներին կից հանձնաժողովներն անվերապահորեն չպետք է ընդունեն և հաստատեն սոցիալ-ապահովագրության բաժինների կողմից ներկայացված կենսաթոշակների գործերը. այն պետք է փաստական քննության ենթարկեն, ծանոթանան թոշակավորվողի տնտեսական պայմանների, նրա կենցաղի և աշխատանքի պայմանների հետ, որը հանձնաժողովին հնարավորություն կտա ավելի ճիշտ որոշումներ կայացնել:

Պետական կենսաթոշակներ նշանակելու օրենքի ճիշտ կատարման համար մեծ անելիքներ ունեն հասարակական կազմակերպությունները, հատկապես աշխատավորների դեպուտատների շրջանային Սովետներին կից առողջապահության և սոցիալ ապահովագրության մշտական գործող հանձնաժողովները: Բայց ուղղակի կարելի է ասել, որ այդ հանձնաժողովների մեծ մասը անգործության է մատնված և սոցիալ-ապահովության օրգանների աշխատանքները, թողնված են առանց հասարակական հսկողության:

Ժամանակն է, որպեսզի շրջանային գործադիր կոմիտեները գործի կոչեն այդ հանձնաժողովները, որոնց ամենօրյա ճիշտ աշխատանքի դեպքում չափազանց կնվազեն պետական կենսաթոշակներ նշանակելու գործում թույլ տրվող սխալները:

Պետական միջոցների խնայողության և ճիշտ կենսաթոշակներ նշանակելու հարցում անհոգի, երբեմն էլ հանցավոր վերաբերմունք են ցուցաբերում սովետական, տնտեսական հիմնարկների որոշ ղեկավարներ, նրանց կադրերի գծով աշխատողներ, ֆաբրիկա-գործարանային տեղկոմների, ֆաբկոմների նախագահներ: Նրանք հաճախ առանց հիմքերի (արխիվային տվյալների, հրամանագրերի), իսկ երբեմն էլ կեղծ տեղեկանքներ են տալիս քաղաքացիներին նրանց աշխատանքային ստաժի, աշխատավարձի չափի, աշխատանքի վտանգավորության մասին, ակտեր՝ դժբախտ պատահարի մասին և այլն: Այդ ընկերները, ինչպես հարկն է, հաշիվ չեն տալիս իրենց, որ տրված այդ «փաստաթղթերը» հիմք են ծառայում սոցիալական ապահովագրության օրգանների համար՝ քաղաքացիներին կենսաթոշակ նշանակելու: Այսպես, օրինակ, Երևանի «պոլիվինիլացետատ» գործարանի կադրերի բաժնի վարիչ ընկ. Ջուլհակյանը և գործարանի դիրեկտոր ընկ. Խուդոյանը գործարանի 4 բանվորների տեղեկանք են տվել այն մասին, որ 1947—1950 թվականներին նրանք աշխատել են վտանգավոր ցեխերում, որի հիման վրա սոցապբաժինը նրանց նշանակել է արտոնյալ կենսաթոշակ, ավելի վճարելով 18 հազար ռուբլի, այդ այն դեպքում, երբ ընկ. ընկ. Խուդոյանին և Ջուլհակյանին քաջ հայտնի էր, որ 1947—1950 թվականներին «պոլիվինիլացետատ» գործարանը վտանգավոր ցեխեր առհասարակ չի ունեցել:

Լուսավորության մինիստրության կադրերի բաժնի վարիչ ընկ. Անդրեասյանի բարեհոգության պատճառով Հոկտեմբերյանի շրջանի 5 ուսուցիչներ առանց հիմքի ոչ ճիշտ տեղեկանքներ են ստացել, իբր իրենց նախկին աշխատանքի մասին, որի հետևանքով նրանք ստացել են 17600 ռուբլի ավելի թոշակ:



Երբեմն ոչ ճիշտ տեղեկանքներ են տալիս նաև գյուղական Սովետների գործադիր կոմիտեները, որոնցով կոլտնտեսականներին արհեստականորեն դարձնում են ծառայողներ, բանվորներ և դրանով իսկ պատճառ դառնում կեղծ կենսաթոշակներ նշանակելու համար: Կամոյի շրջանի Կարմիր գյուղի, Լճափի, Նորադուզի գյուղսովետների գործադիր կոմիտեները կեղծ տեղեկանքներ են տվել մի շարք կոլտնտեսականների (Մովսիսյանին, Քյարիմովին, Բիրոյանին, Հակոբյանին և մյուսներին), որ իբր թե նրանք անցյալում եղել են ծառայողներ, որի հիման վրա Կամոյի շրջանի սոցիալ-ապահովագրության բաժինը վերը նշված ընկերներին անօրինական թոշակ է նշանակել և վճարել 38 հազար ռուբլի: Այս փաստերը հայտաբերելուց հետո էլ շրջանային գործադիր կոմիտեն համապատասխան միջոցներ չձեռնարկեց նշված գյուղսովետների աշխատողների նկատմամբ:

Ապարանի շրջանի «Զագոտսկոտի» ղեկավարության կողմից կեղծ ակտ է կազմված չորս բանվորների նկատմամբ, որ նրանց հաշմանդամությունն առաջացել է դժբախտ պատահարից՝ կապված արտադրության հետ: Այդ կեղծիքի պատճառով նշված չորս ընկերները պետությունից 25 հազար ռուբլի ավել թոշակ են ստացել և այլն:

Անհրաժեշտ է, որ հիմնարկ-ձեռնարկությունների ղեկավարները, նրանց կադրերի բաժինների աշխատողները պետական մոտեցում և զգոնություն ցուցաբերեն այն փաստաթղթերի նկատմամբ, որոնք հիմք են հանդիսանում պետական կենսաթոշակներ նշանակելու համար: Այս հարցում չափազանց մեծ է պրոֆմիութենական կազմակերպությունների դերը: Տեղկոմները և ֆաբկոմները պետք է ուժեղացնեն հսկողությունը աշխատավորներին տրվող փաստաթղթերի նկատմամբ, դրանք մանրակրկիտ ստուգեն և սխալների դեպքում արգելակեն այդպիսիք տալու:

Աշխատավորների կենսաթոշակի անցնելու հարցը, ինչպես հաշմանդամության, այնպես էլ ծերության պատճառով, պետք է տեղկոմները և ֆաբրիկա-գործարանային կոմիտեները վերցնեն իրենց ձեռքը՝ վաղօրոք նախապատրաստելով անհրաժեշտ փաստաթղթերը և տվյալները՝ կենսաթոշակ նշանակելու համար: Դրանով նրանք կթեթևացնեն իրենց աշխատողների վիճակը և ճշտված գործեր կհանձնեն սոցիալ-ապահովագրության օրգաններին: Այսպիսի պրակտիկա կիրառվում է Ռուսաստանի ֆեդերատիվ ռեսպուբլիկայի մի շարք մարզերում, Մոսկվայում, որը տալիս է իր չափազանց դրական արդյունքները, մինիմումի է հասցնում կենսաթոշակավորման հարցում եղած սխալները և պետական միջոցների շռայլումները: Վերջին ժամանակներս այդպիսի մեթոդով են աշխատում Երևան քաղաքի Ստալինյան և Լենինյան շրջանների սոցիալ-ապահովագրության բաժինները, որոնց աշխատանքի նախնական արդյունքը նույնպես լավ է:

Սոցիալ-ապահովագրության օրգանների հիմնական ֆունկցիան է՝ անսխալ կիրառել պետական օրենքները ազգաբնակչության կենսաթոշակների նշանակման և վճարման հարցերում: Անհրաժեշտ է բարձացնել սոցիալ-ապահովագրության տեղական օրգանների աշխատողների պատասխանատվությունն իրենց հանձնարարված խոշոր պետական գործի նկատմամբ:

Առողջապահական օրգաններն այս հարցում կոչված են անմիջապես օգնելու սոցիալ-ապահովության օրգաններին, հատկապես այն թոշակառուների հարցում, որոնք թոշակ են ստանում աշխատունակությունը ժամանակավորա-

պես կամ մշտապես կորցնելու դեպքում։ Այդ հարցում հիմնական դերը պատկանում է բժշկական հսկողական կոմիսիաներին, որոնք գործում են առողջապահական հիմնարկներին կից և բժշկական աշխատանքային էքսպերտ հանձնաժողովներին՝ սոցիալական ապահովության օրգաններին կից։

Տարիներ շարունակ բժշկական հսկողական և բժշկական աշխատանքային էքսպերտ հանձնաժողովներն օգտվելով սոցիալ-ապահովության օրգանների և Առողջապահության մինիստրության հսկողության բացակայությունից, հաշմանդամության խմբերի սահմանման հարցում թույլ են տվել օրենքների աղավաղումներ, սխալներ, որով և ռեսպուբլիկայում արհեստականորեն ավելացվել են հաշմանդամների և ոչ ճիշտ թոշակավորվածների թիվը։

Նախկինում ոչ ճիշտ, բարձր հաշմանդամության խումբ ստացած 200 քաղաքացի, որոնք հիմա ճանաչված են աշխատունակներ և հանված են թոշակավորումից, վերջին չորս տարվա ընթացքում պետությունից ավելի են ստացել 400000 ռուբլի։

Քիչ սխալներ չեն կատարվում նաև անհատական թոշակների նշանակման հարցում։ Վերջին ժամանակներս պրակտիկա է դարձել ամենաաննշան ծառայությունների դեպքում դիմելու՝ անհատական թոշակ ստանալու համար։ Տեղական պարտիական և սովետական օրգաններն ընդունելով այդ դիմումները, հաճախակի առանց խորանալու դիմում տվողի անցյալում կատարած գործունեության մեջ, երբեմն էլ առանց ուսումնասիրելու անհատական կենսաթոշակ սահմանելու օրենքները, առատաձեռնությամբ որոշումներ են կայացնում միջնորդելու անհատական թոշակ նշանակող հանձնաժողովների առաջ՝ նրանց անհատական թոշակ նշանակելու համար։ Այս հանգամանքը չափազանց ծանրացնում է ռեսպուբլիկական և տեղական նշանակություն ունեցող հանձնաժողովների աշխատանքները մեկ կողմից, և մյուս կողմից՝ մերժման դեպքում, որը, ի դեպ, վերջին ժամանակներս հաճախ է կրկնվում՝ ոչ ճիշտ միջնորդությունների պատճառով, առաջացնում է բազմաթիվ բողոքներ Միության և ռեսպուբլիկական տարբեր օրգաններում՝ մերժվածների կողմից։ Ժամանակն է վերջ դնելու այդ բարեհոգության պրակտիկային և մինչև միջնորդության վերաբերյալ որոշում կայացնելը, մանրազննին ծանոթանալ գործի հետ և լրիվ համոզվելու դեպքում, որ դիմողն ունի արժանի ծառայություններ Հայրենիքի և պետության հանդեպ, կայացնել որոշում՝ միջնորդելու նրան անհատական թոշակ նշանակելու համար։

Վերջերս Հայաստանի Կոմպարտիայի Կենտրոնական Կոմիտեի բյուրոն քննեց «Ռեսպուբլիկայում կենսաթոշակների նշանակման հարցում պետական օրենքի կիրառման պրակտիկան»։ Բյուրոն այդ գործում բացահայտեց ռեսպուբլիկայի սոցիալ-ապահովության օրգաններում տեղ գտած թերությունները և այդ օրգանների ղեկավարների ուշադրությունը հրավիրեց՝ կարճ ժամանակամիջոցում ձեռք առնելու բոլոր միջոցները՝ թոշակավորման հարցում տեղ գտած սխալները շտկելու համար։

Պարտավորեցվեց Սոցիալ-ապահովագրության մինիստրությունը և շրջանային Սովետների գործադիր կոմիտեներին՝ վերանայելու սոցիալ-ապահովագրության բաժինների կադրերը և դրանք կոմպլեկտավորել գործիմաց, պետական միջոցների նկատմամբ ազնիվ աշխատողներով։

Ս. ԳԱԼՍՏՅԱՆ

---

# ՏԱՆԻՔԸ ՍՅՈՒՆԵՐՈՎ Է ԿԱՆԳՈՒՆ

(Ակնարկ)

Դեռևս շատ երիտասարդ էր Գուրգեն Պետրոսյանը, երբ ընկերները նրան ընտրեցին կոլտնտեսության կոմերիտական կազմակերպության քարտուղար։ Այդ մեծ վստահությունից նա իրեն չկորցրեց, չմեծամտացավ։ Ժողովից տուն դառնալիս և ամբողջ գիշերը, ինչպես և հետևյալ օրերին, նրան մտատանջում էր նույն հարցը. կկարողանա՞ աշխատել, կկարողանա՞ արդարացնել վստահությունը։ Գլխավորել ամբողջ մի կազմակերպություն, դա հո դյուրին գործ չէ։ Ամեն մեկն ունի իր բնավորությունը, իր նախասիրությունները, իր թերություններն ու առավելությունները։ Ուշիմ ու ձեռներեց պատանին կռահում էր, որ եթե մենակ մնա, չի կարող աշխատել, կդառնա ծիծաղելի։ Ուղեղում մեխվել էր հենց ժողովում կոմունիստ ընկերների տված խորհուրդը.

— Պետք է աշխատել կոմիտեով, կոմերիտական ակտիվ հավաքել կոմիտեի շուրջը…

Ահա թե որն է միակ ճիշտ և հուսալի ճանապարհը։ Չէ՞ որ հնուց եկող խոսք է, թե՝ մի սյունի վրա տանիք չես կապի։

Անցան ամիսներ, անցան տարիներ և նա համոզվեց, որ երբեք տանիքը սյուներով է կանգնում։ Նա իր աշխատանքով ո՛չ միայն գյուղում, այլև շրջանում աչքի ընկավ, և հենց շրջանային ակտիվն էլ նրան ընտրեց ԼԿԵՄ շրջկոմի բյուրոյի անդամ։ Այն ժամանակ նա դեռ չէր երազում պարտիական աշխատանքի մասին, իրեն հասուն չէր համարում դրա համար։ Սակայն գյուղի պարտիական ակտիվն ավելի լավ գիտեր, թե ինչ աշխատող է դաստիարակել իր շարքերում։ Եվ ահա շուտով Գուրգենն ընտրվեց պարտիական կազմակերպության բյուրոյի քարտուղար։ Արդեն չորրորդ տարին է, որ նա գլխավորում է Տանձուտ գյուղի կոլտնտեսության պարտիական կազմակերպությունը և շատ բան է արել այն կազմակերպորեն ամրապնդելու, մարտունակ դարձնելու համար։

Տանձուտի կոլտնտեսությունը մեծ չէ. այն ունի 132 հեկտար բամբակենի, 62 հեկտար խաղողի այգի, մի քանի հեկտար բանջարա-բոստանային կուլտուրաներ. ահա ամբողջը։ Սակայն չե՞ք զարմանա, արդյոք, եթե ասենք, որ այդքան փոքր կոլտնտեսության եկամուտը 1959 թվականին կազմել է մեկ միլիոն 260 հազար ռուբլի։ Եվ դա շնորհիվ այն բանի, որ ամեն մի հեկտարից ստացվել է 24 ցենտներ բամբակի հումք և 167 ցենտներ ընտիր խաղող։

Տարեցտարի աճում են Տանձուտի կոլտնտեսության եկամուտները։ Հենց միայն մեկ տարվա՝ 1959 թվականի եկամուտները, նախորդ տարվա համեմատությամբ, աճել են մեկ միլիոն 140 հազար ռուբլով։ Եվ դա միանգամայն օրինաչափ է։

Գյուղատնտեսության զարգացման և անասնաբուծական մթերքների շեշտակի վերելքի վերաբերյալ պարտիայի ու կառավարության որոշումներից հետո այստեղ շատ բան է փոխվել։ Միանգամայն այլ բնույթ է ստացել կոլտնտեսության ղեկավարումը։ Չկա այլևս նախկինում սովորույթ դարձած այն պրակտիկան, երբ ղեկավարը հանդես էր գալիս լոկ կարգադրողի, հրամայողի դերում։ Տանձուտում ղեկավարը շարքային կոլտնտեսականի խորհրդատուն և ընկերն է, նրա առաջին օգնականը։ Հենց իր՝ Գուրգեն Պետրոսյանի օրինակը դրա ամենավառ ապացույցն է։ Տարիներ շարունակ նա ղեկավարում է այգեգործական մի բրիգադա և կարողացել է ապացուցել, որ «լավ» ու «վատ» այգիներ չկան, վատ աշխատողներ չկան, այլ կան վատ ղեկավարներ։ 1957 թվականին այդ բրիգադան իր մշակած այգիների ամեն մի հեկտարից ստացել էր ընդամենը 57 ցենտներ բերք։ Պետրոսյանը ինքնակամ աշխատանքի անցավ ետ մնացող տեղամասում և մեկ տարի անց խաղողի բերքատվությունը հասցրեց 107 ցենտների։ Իսկ արդեն անցյալ տարի այս բրիգադայում մեկ հեկտարից ստացվեց 192 ցենտներ բերք։ Այս տարի Գուրգեն Պետրոսյանը որոշեց, որ ինքն այլևս անելիք չունի իր բրիգադայում և ցանկություն հայտնեց փոխադրվել այլ տեղ։

Սակայն պարփակվել միայն մեկ բրիգադայի աշխատանքը կազմակերպելու և գլխավորելու սահմաններում, նա չի կարող։ Նրա օգնությունն են ստանում կոլտնտեսության վարչությունը,

ամբողջ աշխատավորությունը։ Եվ աշխատանքի այս մեծ ու դժվարին ճակատամասում նա արդեն միայնակ չէ, ունի իր ակտիվը, իր օգնականները։

Երբ ծանոթանում ես պարտիական բյուրոյի գործերին, արձանագրություններին, շատ բան է պարզվում։ Բազմապիսի, բազմազան հարցեր են քննարկում պարտիական կազմակերպությունն ու նրա բյուրոն՝ սկսած դաշտային աշխատանքների ընթացքից մինչև կոլտնտեսականների գաղափարական ինքնագործունեության բարելավման հարցերը։ Եվ ակամա զարմանում ես նույնիսկ, որ բյուրոյի ու նրա քարտուղարի տեսադաշտից ոչ մի հարց, նույնիսկ առաջին հայացքից մանր թվացող հարց չի վրիպել։ Ուրախալի չէ՞ արդյոք, որ պարտիական բյուրոն պլանավորել և գյուղի տնային տնտեսուհիների հետ զրույց է կազմակերպել նույնիսկ այն մասին, թե ինչպես պետք է կահավորել սենյակները, որպեսզի դրանք լինեն մաքուր, գեղեցիկ և հաճելի։

Երեկոյան ժամերին պարտիական բյուրոն մարտական շտաբի տպավորություն է թողնում։ Ցերեկը այստեղ ոչ ոք չկա, իսկ հենց որ երեկոյանում է, այն դառնում է մարդաշատ։ Բոլոր հարցերով կարելի է մտնել այստեղ և բավարարված դուրս գալ։ Սակայն Գուրգեն Պետրոսյանը երբեք վարչական ֆունկցիաներ չի բարդում բյուրոյի վրա։ Այդպիսի սխալ, նա լավ գիտե, նախկինում եղել է և լավ հետևանքների չի հասցրել։ Ընդհակառակը՝ ամեն կերպ նպաստել կոլտնտեսության վարչության հեղինակության ամրապնդմանը, օգնել նրան՝ աշխատանքային ու կազմակերպական հարցերը խելացիորեն լուծելու գործում՝ այս է բյուրոյի գործունեության հիմնական ոճը։

Եվ այսպես, բյուրոյի անդամների և քարտուղարի երեկոն անցնում է բազմաբովանդակ ու աշխույժ։ Իսկ երբ աշխատավորները ցրվում են, Գուրգեն Պետրոսյանը մի պահ գլուխն առած ափերի մեջ հանգստանում է, ապա դառնում բյուրոյի անդամներին։

— Վաղվա աշխատանքը պետք է պլանավորել, ինձ թվում է, որ գյուղի բարեկարգման վիճակը վատ է։ Վերջին օրերի անձրևները քանդել են ճանապարհներն ու քայքայել առուների հունը։ Անհրաժեշտ է հավաքել երիտասարդությանը։ Ի՞նչ եք կարծում, ընկեր Հայրապետյան։

Շարքային կոլտնտեսուհի Արփենիկ Հայրապետյանը, որը բյուրոյի անդամ է և զբաղվում է գյուղի բարեկարգման հարցերով, շտկվում է տեղում, մի պահ լռում։

— Անշուշտ, ժամանակն է, եթե կուզեք՝ դեռ ուշացել ենք։ Բայց ես կարծում եմ, որ այդ հարցով պետք է զբաղվենք ես և Վարդանյանը։ Դե երիտասարդությունը հո նրա բանակն է...

Վարդանյանը ժպտում է. անշուշտ դա և՛ իր գործն է, քանի որ բյուրոյի հանձնարարությամբ ինքը զբաղվում է հասարակական կազմակերպությունների և, հատկապես, երիտասարդության հարցերով։ Իսկ երիտասարդության հետ նա լեզու գտել է, դարձել նրա սիրելին։

Եվ երբ ցերեկվա աղմուկից, աշխատանքից հոգնած ու արդեն խոր քուն մտած գյուղի փողոցներով նրանք դառնում են տուն, արդեն վաղվա անելիքը պարզ է բոլորի համար։ Ոչ ոք չի կարող ասել, թե բացի հիմնական, կոլտնտեսային աշխատանքից, այդ լրացուցիչ ծանրաբեռնվածությունը դյուրին է տանել։ Բայց սովորույթի ուժը, մարդկանց և հասարակական-պարտիական աշխատանքի նկատմամբ ունեցած պարտքի զգացումը ավելի ուժեղ է, քան հոգնածությունը։ Ուստի բյուրոյի ամեն մի անդամ սիրով է կատարում ամեն մի հանձնարարություն։

***

Տունդարձի ճամփին Գուրգեն Պետրոսյանի ուշադրությունը գրավեց մի խումբ տղաների ու աղջիկների՝ զուսպ ծիծաղը։ Նա դուրս եկավ ճանապարհից և մոտեցավ մոտակա ծիրանենիների պուրակին։ Տեսնելով քարտուղարին, կանաչի վրա անհոգ նստած ջահել աշխատավորները մի պահ լռեցին ու հարգալից բարևեցին նրան։

— Այս ի՞նչ է, տուն գնալ չե՞ք ուզում,— աչքերում անթեղելով հրճվանքի չարաճճի, կայծկլտող կրակը՝ հարցրեց քարտուղարը։ Նա սիրում էր այդ աշխատասեր, իրենց գործին նվիրված երիտասարդներին և, ցերեկվա աշխատանքից հետո, նրա համար հաճելի էր նստել, զրուցել նրանց հետ։

— Հենց նոր վերջացրինք ու խորհրդակցում ենք, ընկեր Պետրոսյան,— ասաց տղաներից մեկը,— մտածում ենք՝ ո՞ւր գնալ։ Ամեն օր հո կինո գնալ չի լինի...

— Շրջկենտրոն գնալու համար էլ ուշ է արդեն,— աչքերը խորամանկորեն կկոցելով և կարծես թե անտարբեր՝ ասաց մի ուրիշը։

«Նրանք իրավունք ունեն.— ինքն իրեն մտածեց Գուրգենը,— տեղն է մեզ»։ Բանն այն է, որ իսկապես աշխատավորների հանգստի կազմակերպման գործը հատկապես գարնան և ամառան ամիսներին դժվարանում է։ Աշխատանքը շատ է, ուշ է ավարտվում, մարդիկ հոգնում են։ Ակումբում տարվող աշխատանքն էլ միօրինակ է դեռ, չկա բազմազանություն... Վատ է, վատ է ինքնագործունեության վիճակը, պետք է ավելի լրջորեն մտածել այս մասին, այլապես ինչի՞ է նման։ Մարդիկ ազնվորեն աշխատում են, տքնում, հոգնում, բայց, ա՛յ, հաճույքներ դեռ քիչ են վայելում...



Նույնն է անասնաբուծական ֆերմայում աշխատողների վիճակը։ Ջահել աղջիկներ են, ամեն ամիս գերակատարում են կաթնատվության նախատեսված պլանը, բայց երբ ավարտում են աշխատանքը, արդեն գնալու և զվարճանալու տեղ քիչ ունեն։ Հենց այս օրվանից, այսօրվանից զբաղվել այդ գործով. մարդկանց կյանքը պետք է դառնա ավելի հաճելի և ուրախ։

***

Մտնելով այգի, նա խնամքով բարձրացրեց որթատունկի դալար մի ճյուղ և թեքվելով ցած՝ ուշադիր զննեց.

— Մեկ, երկու, հինգ, յոթ...,— քանի թվերը մեծանում էին, այնքան ժպիտը պայծառանում էր նրա դեմքին,— ոչի՛նչ, ոչի՛նչ, այնքան էլ վատ չէ։

Ճյուղը բաց թողեց, անցավ մյուս վազին։ Խաղողը ծաղկել էր արդեն։ Ապագա ողկույզները ծածկվել էին նուրբ, աղվամազի տպավորություն թողնող ճերմակ, փոքրիկ ծաղիկներով, որոնք, ասես թե թաթախվել էին ալրափոշու մեջ։

Վերջերս, ամեն անգամ այգի մտնելիս, նա ուշադրությամբ զննում էր վազերը և ուրախությամբ խորհում, որ այս անգամ էլ գյուղի բազմափորձ, ծեր այգեգործները սխալվեցին։ Անցյալ տարվա աշնանը, բերքահավաքի օրերին, նրանցից շատերը բազմանշանակալից դիտում էին ողկույզների ծանրությունից կքած վազերը և տագնապահար շշնջում.

— Եկող տարվա բերքն էլ ենք հավաքում. է՛հ, մյուս տարի էլ խաղող ոչ տեսնես...

Հիրավի անցյալ տարվա բերքը զարմանալի առատ էր և, թվում էր, այս տարի վազը պետք է «հանգստանա»։ Սակայն գարունը եկավ, այգիները բացվեցին ու փորվեցին, վազերին լրացուցիչ սնունդ տրվեց և նրանք նորից կկքեն ոսկեգույն ողկույզների ծանրությունից։ Գիտությունը հաղթո՛ւմ է բնությանը։ Բայց քնքուշ է որթատունկը։ Ցուրտն ու հիվանդությունը շուտ են կպչում նրան։ Որքա՞ն ջանք ու եռանդ, որքա՞ն ուշադրություն ու խնամք է հարկավոր, մինչև այն ծաղկի ու պտղաբերի։

Եվ չգիտես ինչու նա այդ պահին հիշեց Գեորգին, այն տրակտորիստ Գեորգին, որը մեծ հոգատարությամբ ու խնամքով, ինչպես ասում են, մարդ դարձավ։ Այսօրվա պես պարզ հիշում է նա այդ օրը։ Փողոցով, լացակումած անցնում էր Հռիփսիկը՝ Գեորգի կինը։ Համագյուղացիները կարեկցանքով նայում էին երիտասարդ կնոջը և գլուխներն օրորում։ Հապա ի՞նչ. ամուսինը հեռացել է տնից՝ թողնելով կնոջն ու երկու երեխաներին։ Հարևանների հորդորներն ու խրատները ոչնչով չէին կանխել երիտասարդ ընտանիքի քայքայումը՝ մինչև որ գործին միջամտեց պարտիական բյուրոն։ Ինքն ինչպե՞ս կարողացավ լեզու գտնել Գեորգի հետ, մտնել նրա սիրտը, համոզել, հիմի նա դժվար թե կարողանա ամենայն մանրամասնությամբ հիշել ու պատմել։ Չէ՞ որ մարդու հետ լեզու գտնելու համար ոչ մի դեղատոմս չկա։ Նայած հանգամանքներին, տրամադրությանը, նայած մարդու հոգեբանությանը։ Ժամանակ կա, որ խստությունն ու պատիժն են օգնում, ժամանակ էլ կա՝ քաղցր խոսքն ու ուշադրությունը։ Դրան համապատասխան էլ ծնվում է վերաբերմունքը։ Օրինակ՝ հենց այդ Գեորգի հետ չէր կարելի խիստ վարվել, սպառնալ, պատժել։ Ինչո՞ւ։ Չէ՞ որ նա իր երեխաներին սիրում էր հայրական ջերմ սիրով ու ամեն անգամ, երբ խոսք էր բացվում նրանց մասին, արտաքուստ կոպիտ, անզիջում թվացող այդ տրակտորիստի սիրտը փափկում էր նոր ջրած հողակտորի պես, փխրվում, ու աչքերը մշուշվում էին ինքնաբերաբար հորդացող աղի արցունքից։ Ոմանք խորհուրդ էին տալիս նրա հարցը քննել ընկերական դատարանում, «պոչը ձգել», ինչպես ասում են, սակայն ինքը՝ Գուրգեն Պետրոսյանը, դեմ էր դրան։ Նա ավելի շատ սիրում էր Գեորգի հետ խոսել երեխաների ու ընտանիքի մասին, քան քարոզ կարդալ, կամ սպառնալ։ Այդ օրերին նա լավ էր հասկանում, որ իր խնդիրը միայն կոլտնտեսության վարչությանն օգնելը չէ, որ բարձր բերք ստանալու համար մարդկանց ուժերի մոբիլիզացումը իր աշխատանքի մի մասն է միայն։ Չէ՞ որ աշխատանքի տակ պետք է տեսնել մարդո՛ւն, օգնել նրան ապրելու, իր կյանքի ճանապարհն անցնելու ազնիվ ու մաքուր սրտով, որպեսզի մարդը նույնքան ազնիվ ու մաքուր ձեռքով կպչի առօրյա աշխատանքին։ Այնժամ աշխատանքը կդառնա ոչ թե բեռ, այլ հաճույք և անհրաժեշտություն։

Սակայն մարդու սիրտն ինչպե՞ս մաքրել առօրյա մանր խծրծանքներից ու վտանգավոր կրքերից, այն բոլոր անառողջ ձգտումներից, որոնք ի վերջո աշխատավորին շեղում են ճիշտ ու ազնիվ ճանապարհից։ Տրակտորիստ Գեորգ Խաչատրյանը վատ աշխատող չէր եղել երբեք, սակայն ընտանիքից հեռանալով, փոխվել, տարօրինակ էր դարձել։ Նրա մեքենան խափանումներ էր տալիս. մարդը ցրված էր ու անուշադիր։ Դե, ինչ զարմանալու բան կա. մեքենան էլ իր սիրտն ունի, իր մոտորը։ Եթե սրտացավ չես նրա նկատմամբ, եթե քո սիրտը ցավով չի բաբախում նրա համար, պարզ է, որ նրա լեզուն լավ չես հասկանա։

Հենց այս մասին խոսեց նա պարտիական բյուրոյի նիստերից մեկի ժամանակ, և ուրախությամբ նկատեց, որ ընկերները հավանու-

թյան տվին։ Ուրեմն ինքը չի սխալվել, այո, բոլորն էլ այդպես են մտածում։ Հետագա օրերին տրակտորիստ Գևորգը զարմանքով նկատում էր, որ իր նկատմամբ եղած սառն ու խորթ վերաբերմունքը աստիճանաբար փոխվում է, որ իրեն վերաբերվում են առաջվա պես։

Այնպես եղավ, որ տրակտորիստը սկսեց ավելի շատ մտածել իր և ընկերների հարաբերությունների մասին, ավելի լրջորեն անդրադառնալ ու վերլուծել այն ամենը, ինչը նրան հեռացրել էր ընտանիքից։ Իսկ ի՞նչ էր եղել... Հիմա նա հանցանքի մեջ բռնված մարդու պես հիշում էր ամբողջ անցյալը և պարսավում իրեն։ Ինչպե՞ս կարող էր այնքան կույր լինել, չտեսնելու համար իր արարքների ծիծաղելիությունը, ինչպե՞ս կարող էր կնոջ կողմից արված ուժեղ դիտողությունը ընդունել որպես թշնամանքի արտահայտություն և ընտանեկան սովորական մանր վեճերը վերածել կռվի ու ատելության։ Եվ եթե այդ ամենի մասին բարձրաձայն էր ասվում Գուրգենի ու մյուսների մոտ, պարզվում էր, որ կինն ավելի շատ իրավունք ուներ դժգոհելու ամուսնուց։

— Միայն թե խիղճը տանջի իրեն, միայն խղճի խայթ զգա,— այսպես էր մտածում քարտուղարը։

Ամիսներ հետո, երբ ամուսիններն արդեն հաշտվել էին, Գուրգենը զարմանում էր տրակտորիստի մեջ տեղի ունեցած փոփոխությունից։ Նա անսովոր կերպով եռանդուն ու գործունյա էր դարձել, զարմանալի ուշադիր ո՛չ միայն երեխաների, այլև կնոջ նկատմամբ։ Երևում է, միայնակ ապրած օրերին շատ լավ էր հասկացել կնոջ և ընտանիքի իմաստը։

Անցնելով վազից-վազ, թմբից-թումբ և խորհելով այս ամենի մասին, Գուրգեն Պետրոսյանը մեխանիկորեն չէ, որ մարդու նկատմամբ տածած ուշադրությունն ու խնամքը համեմատում էր բույսի հետ։ Բնությունն ինքը նրա մեջ ծնեց այս պարզ համեմատությունը և նա բնականաբար չէր կարող չխորհել այն մարդկանց մասին, որոնք մաքուր սրտով ու ձեռքով պետք է մոտենան իրենց աշխատանքին, աճեցնեն ահա այսպիսի բերք։

Օրը կիսվում էր արդեն։ Մինչկեսօրյա թեթև անձրևից հետո արևն այրում էր անխնա, հողից գոլ էր բարձրանում։ Մեկ-մեկ միայն, չգիտես որտեղից, փչում էր հովի թեթև մի ալիք, իր հետ բերելով բացատներում փռված դառնածաղկի ու ծոթրինի մեղրաբույրը։ Եվ այդ պահին զվարթ խշշում էին որթատունկի հուռթի տերևները, ապա կրկին անշարժանում։ Նորից տապն էր չոքում իր անշարժության մեջ խմստացող, պտղաբարձվող այգիների վրա։ Սակայն հողի աշխատավորի համար այդտեղ լռություն ու անշարժություն չկա։ Ահա նա պարզ լսում է, թե ինչպես է շնչում որթատունկը, տեսնում է, թե հողի ավիշն ինչպես է շիթ առ շիթ ներծծվում արևի տապից այրվող, բայց ամեն վայրկյան ուռճացող ողկույզների մեջ։

Ծառերի ստվերները երկարում, ձգվում են հեռու, ձուլվում են երեկոյացող օրվա մթնաշաղին, որը, թվում է մոտենում է քայլ առ քայլ։ Եվ այդ պահին, երբ շատերը հավանաբար զմայլանքով վերջալույսն են դիտում և ունկնդրում աղջամուղջում ճախրող թռչունների երգը, հանկարծ բարձրաձայն երազեց տրակտորիստ Գևորգ Խաչատրյանը.

— Է՜խ, ե՞րբ պիտի մեզ մոտ էլ փոխվի թմբային սիստեմը...

Պետրոսյանը զարմանքով եա նայեց։ Գևորգը շուրջն էր դիտում և անխոս քայլում առաջ։ Նա, հավանաբար, մտածում էր խաղողի այգիների մշակումը մեքենայացնելու, ընկերների աշխատանքը թեթևացնելու մասին։ Բայց այդ ե՞րբ հասցրեց նա աճել ու լրջանալ այն աստիճան, որ սկսեց մտածել հասարակայնորեն օգտակար միջոցառումների մասին։ Ինչ-որ հաճելի զգացում խլրտաց Պետրոսյանի սրտում, հուզմունքից շողացին աչքերը.

— Անպայման կփոխվի, չենք թողնի որ մեր մարդիկ աշխատեն պապենական բահերով։ Եվ այն ժամանակ դու շատ գործ կունենաս անելու, Գևորգ...

Այն ժամանակ ո՛չ միայն Գևորգը, շատերը ուրիշ մարդ կդառնան։ Կփոխվի ամբողջ գյուղը, կփոխվեն մարդիկ, կդառնան ավելի մեծ ու սիրելի։ Եվ այն ժամանակ դու, Գուրգեն Պետրոսյան, այլևս չես բավարարվի այն ամենով, ինչ ունես այսօր։ Պարտիական աշխատանքի քո սահմանները կընդլայնվեն ու կմեծանան։ Կկարողանա՞ս արդյոք արդարացնել ընկերների վստահությունը, ուժ կգտնե՞ս քո մեջ այնքան, որ ինչպես այսօր, այն ժամանակ էլ կարողանաս քո հետևից տանել մարդկանց։ Անկարողանաս քո շուշա, կկարողանաս. այդ ուժը ո՛չ միայն քո մեջ է, այլև քո ընկերների. չէ՞ որ տանիքը սյուներով է կանգուն։

Ռ. ԱՐԱԼՅԱՆ

---



## ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՅԻ ՎԵՏԵՐԱՆՆԵՐԸ

# ԱՆՁՆՎԵՐ ԼԵՆԻՆՅԱՆԸ

### ՌԵՎՈԼՅՈՒՑԻՈՆ ՄԿՐՏՈՒԹՅՈՒՆ



Ամենից շատ մոր կարոտն էր տանջում նրան։ Հաճախ էր հիշում արցունքով ու թախծով լցված նրա աչքերը, ժամանակից շուտ թորշոմած դեմքը, և սիրտը կսկծում էր կարոտից ու ցավից. տեսնես ի՞նչ է անում հիմա, ի՞նչ են անում փոքրիկները...

Հիշեց մոր խոսքերը, որ նա ասաց գիշերը, երբ տանը բոլորն արդեն քնած էին և կապել-պատրաստել էր ճանապարհի բոխչան՝ մի քիչ ուտելիք, մի շապիկ ու կարկատած շալվարը։

— Հիմա դո՛ւ ես տան մեծը, որդիս,— ասում էր մայրը,— քեզ մեծավարի կպահես։ Բաքուն մեր Շուշին չի, Բաքուն մեծ քաղաք է, կգույշ կաց։ Խելոք եղիր, բալքի մի արհեստ էլ դու սովորես, էս որբերին ուտելու հաց է հարկավոր...

Իսկ որդու սիրտը ճմլվում էր։ Ինչքա՜ն է փոխվել մայրը հոր մահից հետո, վերջին երկու տարում։ Շա՜տ էր տանջվում խեղճը, էլի ծայրը ծայրին չէր հասցնում։ Երբ դեռ հայրը՝ դերձակ Միրզոն, կենդանի էր, մի կերպ պահում էր տունը, իսկ հիմա՞... Հիմա հարկավոր է հաց հասցնել որբերին։ Եվ այդ հոգսն էր, որ նրան բերել էր Բաքու։ Կիսատ էր թողել ուսումը, որ այլևս երբեք շարունակելու հնարավորություն և ժամանակ չէր ունենալու։

Աշխատանքի տեղավորվելը շուտ գլուխ եկավ. հոր վաղեմի ընկերոջ միջնորդությամբ աշկերտ ընդունվեց մի կահույքագործի մոտ։

Բայց շուտով Բաքուն իր բուռն հորձանքի մեջ առավ պատանի Սահակին։ Թշվառությունն ու ցեխությունը այստեղ ապրում էին կողք-կողքի՝ ավելի ընդգծելով կյանքում եղած անարդարությունը։ Նա նոր ընկերներ ունեցավ, շփվեց աշխատանքի մարդկանց հետ, հաղորդակից եղավ նրանց հոգսերին ու ցավերին...

Եվ փոքրիկ արհեստանոցը նեղ ու անձուկ թվաց նրան։ Շուտով կապվեց անլեգալ սոցիալ-դեմոկրատական բանվորական խմբակի հետ. հավաքվում էին, կարդում արգելված գրքեր, կրռւցում էին ու վիճում։ Այստեղ էր, որ նա առաջին անգամ լսեց Մարքսի անունը, կարդաց «Կոմունիստական Մանիֆեստը», իմացավ Իլյիչի ու Պլեխանովի մասին։

1902 թվականի գարնանամուտին տասնվեցամյա Սահակը ընդունվեց ՌՍԴԲՊ շարքերը, երդվելով մինչև վերջ հավատարիմ մնալ ճնշումից ու շահագործումից աշխատավոր մարդու ազատագրության սրբազան գործին։ Պայքարն սկսվել էր արդեն, կազմակերպիչներ էին հարկավոր, հարկավոր էին խիզախ դրոշակակիրներ. և դրանցից մեկը եղավ Սահակ Տեր-Գաբրիելյանը՝ դերձակ Միրզոյի ավագ որդին, կահույքագործի երբեմնի աշկերտը...

Բանվորական ցույցին մասնակցելու համար նա ձերբակալվեց և կարճատև բանտարկությունից հետո քաղաքից արտաքսվեց այնտեղ, որտեղից եկել էր...

Մի տարի անց նա նորից Բաքվում էր: Այս անգամ աշխատանքի անցավ Բալախանիի նավթահանքերում: Պրոլետարական միջավայրը հարազատ էր նրան:

Նույն՝ 1903 թվականին, ՌՍԴԲՊ երկրորդ համագումարից հետո, Սահակ-Տեր-Գաբրիելյանը, որն արդեն աչքի էր ընկել իր ագիտացիոն-պրոպագանդիստական աշխատանքով, կազմակերպչական ընդունակություններով, հաստատ ու աներեր կանգնում է բոլշևիզմի դիրքերում:

Սահակ Տեր-Գաբրիելյանի կազմակերպչական տաղանդն ու քաղաքական ղեկավարի հմտությունը փայլուն կերպով դրսևորվեցին ռուսական առաջին ռևոլյուցիայի տարիներին: Նա մեծ հեղինակություն, պրոֆեսիոնալ ռևոլյուցիոների համբավ էր վաստակել նավթաշխարհի բանվորների մեջ, ակտիվորեն մասնակցում էր բոլշևիկյան պարտիայի աշխատանքներին:

Ռուսական առաջին ռևոլյուցիայի պարտությունից հետո, 1907 թվականի վերջին, ՌՍԴԲՊ Բաքվի կոմիտեի նիստի ժամանակ, ցարական իշխանություններին հաջողվում է մի խումբ ընկերների հետ միասին ձերբակալել նաև Սահակ-Տեր-Գաբրիելյանին: Ութ ամիս բանտում պահելուց հետո որոշում են նրան արտաքսել Անդրկովկասի սահմաններից: Սակայն շատ չանցած, նա նորից պայքարի առաջին գծում էր:

Ընդհատակում աշխատելու տարիներին, մինչև 1917 թվականի փետրվարյան բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիայի հաղթանակը, Սահակ Տեր-Գաբրիելյանը բոլշևիկյան պարտիայի Բաքվի շրջանային և քաղաքային կոմիտեների անդամ էր: Նա դառնում է վարպետ կոնսպիրատոր, լարում իր ջանքերը՝ բանվորների հոգում վառ պահելու պայքարի կայծերն ու հաղթանակի անկոտրում հավատը:

## ԼԵՆԻՆԻ ՄՈՏ

— Ընկեր Տեր-Գաբրիելյան, հինգ րոպե հետո ընկեր Լենինը կընդունի Ձեզ,— հայտնեց քարտուղարը:

Տեր-Գաբրիելյանը շնորհակալություն հայտնեց և վեր կենալով տեղից՝ սկսեց ետ ու առաջ քայլել ընդունարանում: Հուզմունքը պաշարել էր նրա հոգին. վերջապե՞ս նորից կտեսնի սիրելի առաջնորդին: Ո՞րքա՞ն նորություն կա հայտնելու Վլադիմիր Իլյիչին...

Ասես ներքին, ինքնաբուխ ջերմությունից մի թեթև, քնքուշ ժպիտ բոցավառվեց նրա նիհարավուն դեմքին: Լենին... Առաջին անգամը չէր, որ տեսնելու էր նրան:

Վլադիմիր Իլյիչի առանձնասենյակում զրույցը երկար տևեց, մոտ երեք ժամ: Այն սկսվեց միանգամից: Ռևոլյուցիոն Բաքվի ներկայացուցչին Լենինը դիմավորեց սրտաբաց, դեմքին և կկոցած աչքերի մեջ՝ գրավիչ, մտերմիկ ու ձգող մի ժպիտ:

— Բարև Ձե՛զ, ընկեր Տեր-Գաբրիելյան, ինչպե՞ս են գործերը, ինչպե՞ս է Շահումյանը...

Վլադիմիր Իլյիչն ավելի շատ հարցեր էր տալիս, քան թե խոսում: Ամեն, ամեն բան հետաքրքրում էր նրան: Եվ Ս. Տեր-Գաբրիելյանը, որ պարտիայի Բաքվի կոմիտեի որոշմամբ եկել էր Մոսկվա՝ Անդրկովկասի գործերի մասին զեկուցելու և Բաքվին ռազմական օգնություն հասցնելու համար, առաջնորդին մանրամասնորեն պատմում էր Անդրկովկասում ծավալվող ռևոլյուցիոն իրադարձությունների, սովետական իշխանության համար մղվող պայքարի, բոլշևիկների հաստատակամության մասին, խորհուրդներ էր հարցնում Բաքվի նավթարդյունաբերության ազգայնացում իրագործելու վերաբերյալ:

Վլադիմիր Իլյիչը խրախուսեց Բաքվի սովետական իշխանության ձեռնարկումները նավթարդյունաբերության ազգայնացման ուղղությամբ: Զրույցի ընթացքում Սահակ Տեր-Գաբրիելյանը խորապես զգաց, թե ինչ խոշոր նշանակություն է տալիս Իլյիչը նավթի հանույթին ու բաշխմանը:

— Անձամբ հանձնարարում եմ Ձեզ՝ ամբողջովին զբաղվել նավթ հայթայթելու և փոխադրելու գործով: Դա խիստ անհրաժեշտ է ռևոլյուցիայի հաղթանակի համար,— ասաց Լենինը:

«Ինչ էլ լինի, պետք է անհապաղ նավթ հասցնել Սովետական Ռուսաստանին»,— այս հաստատ վճռականությամբ նա զրույցի վերջում վեր կացավ և հրաժեշտի համար սեղմեց Իլյիչի ձեռքը:

— Ջերմ ողջույն կտանեք Շահումյանին, Ջափարիձեին, Բաքվի բոլոր ընկերներին,— հրաժեշտի պահին ասաց Վլադիմիր Իլյիչը:— Մենք ամբողջ հոգով պաշտպանում ենք նրանց քաղաքական ու տնտեսական գործունեությունը: Որքան էլ կատաղորեն մոլեգնի ռեակցիան, հաղթանակը մերն է լինելու, պրոլետարիատինը: Հաջողությո՛ւն Ձեզ, ընկեր Տեր-Գաբրիելյան:

Սահակ Տեր-Գաբրիելյանի միջոցով մեծ քանակությամբ ռազմամթերք ուղարկվեց Բաքվի մարտնչող պրոլետարիատին: Ժողկոմսովետը, Լենինի առաջարկով, 12 հազար փութ հացահատիկ բաց թողնելու որոշում կայացրեց... Ամենամեծ օգնությունը, սակայն, առաջնորդի ցուցումներն ու խորհուրդներն էին:

Մոսկվայից Բաքու վերադառնալիս Ս. Տեր-Գաբրիելյանն իր հետ բերում էր երկու կարևոր փաստաթուղթ. մեկը Լենինի նամակն էր՝ ուղղված Ստեփան Շահումյանին, մյուսը՝ հետևյալ վկայականը.

«Սույնը ներկայացնող ընկ. Տեր-Գաբրիելյանը գործուղվում է Բաքու՝ ձեռք առնելու բոլոր միջոցները Բաքվից Վոլգայի վրայով նավթը անհապաղ փոխադրելու համար: Բոլոր սովետական



կազմակերպությունները պարտավոր են նրան լրիվ աջակցություն ցույց տալ և նրա տրամադրության տակ դնել իրենց տնօրինության ներքո գտնվող բոլոր ուժերն ու միջոցները՝ այդ առաջադրանքը կատարելու համար:

Ժողովրդական Կոմիսարների Սովետի Նախագահ՝
Վ. Ի. ԼԵՆԻՆ

Ժողկոմսովետի գործերի կառավարիչ՝
Վ. ԲՈՆՉ-ԲՐՈՒԵՎԻՉ»:

Վլադիմիր Իլյիչը մտահոգված էր, որ Տեր-Գաբրիելյանը, այդ եռանդուն, ռևոլյուցիայի համար խիստ օգտակար երիտասարդը բարեհաջող տեղ հասնի: Եվ այն ժամանակ միայն հանգստացավ, երբ ստացավ ու կարդաց Ստեփան Շահումյանի պատասխան-նամակը. «Թանկագի՛ն Վլադիմիր Իլյիչ,— գրում էր Շահումյանը,— այսօր, վերջապես, եկավ Տեր-Գաբրիելյանը և մեզ բերեց 4 պրահամեքենա, 13 օդանավ և ուրիշ շատ բարիքներ: Այս ամենի համար շատ ու շատ շնորհակալություն: Մենք ստացանք այն, ինչ մեզ պակասում էր և որը մեզ այժմ անգնահատելի ծառայություն է մատուցելու»:

«Լավ է, ուրեմն, ամեն ինչ բարեհաջող է անցել»,— ժպտաց Վլադիմիր Իլյիչը:

Մինչև հուլիսի վերջերը Բաքվից Աստրախան փոխադրվեց 80 միլիոն փութ նավթամթերք: Լենինի առաջադրանքը կատարված էր...

## ՍՈՒՐ ԱՉՔ, ԿՏՐՈՒԿ ՁԵՌՔ

Նոր աշխատանքն ամբողջովին կլանել էր նրան: Մթնոլորտը շիկացած էր: Հակառակորդը միջոցների մեջ խտրություն չէր դնում, միայն թե հասներ նպատակին:

Ահռելի վտանգ էր կախվել Բաքվի Սովետական իշխանության վրա, մենշևիկներն ու էսեռները հարմար առիթի էին սպասում՝ դրության տերը դառնալու համար. դաշնակցականները գործի էին դրել դեմագոգիայի ու շանտաժի բոլոր միջոցները. մուսավաթիստները խռովություն էին նախապատրաստում ադրբեջանական գավառներում և պինդվում ռուս պինվորներից հափշտակած զենքով. մի կողմից արշավում էին գերմանոթուրքական հրոսակախմբերը, մյուս կողմից՝ անգլիական զորքերն էին մոտենում Բաքվին...

Մահացու վտանգ էր կախվել Կոմունայի գլխին:

Սուր աչք և կտրուկ ձեռք էր պետք կոնտրռևոլյուցիայի սև կծիկը քանդելու համար: Ամենահարմար թեկնածուն Սահակ Տեր-Գաբրիելյանն էր: Նրա կամքի ուժը, հնարամտությունն ու վճռականությունը լավ հայտնի էին Կոմունայի ղեկավարներին: Եվ ահա, 1918 թվականի հունիսի սկզբին նա նշանակվեց կոնտրռևոլյուցիայի ու լրտեսության դեմ պայքարող Բաքվի արտակարգ հանձնաժողովի նախագահ:

Կոմունայի ներքին գործերի կոմիսար Ալյոշա Ջափարիձեի հետ սերտորեն համագործակցած՝ նա գտնում և ճզմում էր կոնտրռևոլյուցիայի որջերը, ձերբակալում ու չեզոքացնում վտանգավոր տարրերին, զգոնության ու վճռականության կոչ անում պրոլետարական մասսաներին: Պատահում էր, օրերով գլուխը չէր դնում բարձին, բայց գերագույն ճիգով հաղթահարում էր հոգնությունը: Նրա հոգին վառվում էր պայքարի տենչով. ժամանակը քիչ է, գործը՝ շատ, թշնամին ուժեղ է, խորամանկ ու դարանակալ...

Հետագայում հաճախ էր հիշում ծանր, բայց հերոսական գոտեմարտի այդ օրերը. հիշում էր պայքարի ընկերներին, և ամեն անգամ մի խոր թախիծ էր իջնում նրա հոգում. չկար Շահումյանը, չկային Ջափարիձեն ու Ազիզբեկովը, Բաքվի փառապանծ կոմիսարները: Նրանք իրենց արյունն էին տվել կոմունիզմի գործի համար, և կոմունիզմը ապրում ու հաղթանակում է...

***

Բաքվի Կոմունայի անկումից հետո, 1918 թվականի աշնանը, Սահակ Տեր-Գաբրիելյանը եկավ Մոսկվա: Այս անգամ պարտիան նրան վստահեց վառելիքի հայթայթման գործը, որն այնքան կենսական էր սոցիալիստական Հայրենիքի համար քաղաքացիական կռիվների և օտարերկրյա ինտերվենտների դեմ մղվող պայքարի այդ ծանր տարիներին: Տեր-Գաբրիելյանը նշանակվեց Սովետական Ռեսպուբլիկայի վառելիքի բոլոր տեսակների հայթայթման կոմիսար և գլխավոր նավթային կոմիտեի կոլեգիայի անդամ: Նա իր բոլոր ընդունակություններն ու ռևոլյուցիոն անսպառ եռանդն ի սպաս դրեց Կարմիր Բանակն ու պրոլետարական կենտրոնները վառելիքով ապահովելու գործին:

1918 թվականի դեկտեմբերին, Ս. Մ. Կիրովի հետ միասին, հատուկ էքսպեդիցիայով Սահակ Տեր-Գաբրիելյանը գալիս է Աստրախան, այստեղից Գրոզնի գնալու և բենզինի փոխադրումը կազմակերպելու համար: Հաջորդ տարվա գարնանամուտին նա Դոնբասում էր. հարկավոր էր ածուխ հասցնել երկրի քայքայված տնտեսությանն ու տրանսպորտին:

Կես տարի անց Սահակ Տեր-Գաբրիելյանը պատասխանատու աշխատանքի է անցնում Կարմիր Բանակի մատակարարման գլխավոր վարչությունում, ապա նշանակվում է Համառուսական արտակարգ հանձնաժողովի հատուկ բաժնի պետ. նա վայելում էր Ֆելիքս Ձերժինսկու լիակատար վստահությունը և իր անձնվեր գործունեությամբ աչքի ընկավ ներքին կոնտրռևոլյուցիայի, պրովո-

կատորների ու լրտեսների դեմ մղվող անողոք պայքարում, Հոկտեմբերյան ռևոլյուցիայի նվաճումների պահպանման սրբազան գործում:

## ՆՈՐ ՄԱՐԴՈՒ ՏԻՊԱՐԸ

Տնեցիները վաղուց էին քնել: Լուսամփոփի կանաչավուն լույսը ավելի էր ընդգծել աշխատասենյակի անդորրությունը. գրասեղանի վրա թափված թերթերն ու թղթերը, կողքի պահարանում շարված գրքերը ասես ծածկվել էին կապտականաչավուն շղարշով, դարձել միագույն: Գտնելով ձեռագրի առաջին էջը, նա վերջին անգամ գրիչը թաթախեց թանաքամանի մեջ ու էջի վերևում հատ-հատ տառերով գրեց՝ «Զեկուցում Հայաստանում Սովետական կարգերի հաստատման 10-րդ տարեդարձի առթիվ»:

Երբ նստեց աշխատելու, կարծում էր թե ավելի շուտ կգրի-կվերջացնի զեկուցումը: Բայց հաճախ ընդհատում էր գրելը: Հիշողությունները «խանգարում» էին...

...Մոտ տասը տարի առաջ էր, քսան թվականի փետրվարին, պարտիայի Կենտրոնական Կոմիտեն իրեն ուղարկեց Կովկասյան ռազմաճակատ: Դենիկինի կորքերը նահանջում էին: Կարմիր Բանակը մոտենում էր Կովկասի մատույցներին, Անդրկովկասում հասունանում էր ռևոլյուցիան: Անհրաժեշտ է կարմիր զորամասերի անմիջական օգնությունը զոտեմարտի պատրաստվող աշխատավոր մասսաներին: Եվ շուտով Ադրբեջանի վրա ծածանվեց Սովետների ազատաբեր դրոշը...

Իրեն ետ կանչեցին Մոսկվա: Երկար չմնաց այնտեղ: Ուղարկեցին Հայաստան՝ դիվանագիտական աշխատանք կատարելու ՌՍՖՍՌ լիազոր-ներկայացուցչությունում: Դաշնակցական Հայաստան... «Ազգի փրկիչների» ստեղծած «դրախտը» կործանման եզրին էր հասցրել հայ ժողովրդին:

Երբ Հայաստանում հաղթանակեց Սովետական իշխանությունը, ինքը նշանակվեց Ռազմա-ռևոլյուցիոն կոմիտեի անդամ: Ասքանազ Մռավյանի հետ միասին ձեռնամուխ եղան Սովետական Ռուսաստանի կողմից Հայաստանի աշխատավորներին օգնության կարգով հատկացված դրամական ու նյութական միջոցները փոխադրելու գործին:

Դեկտեմբերին կրկին Մոսկվայում էր՝ իբրև ՌՍՖՍՌ կառավարությանը կից Սովետական Հայաստանի լիազոր-ներկայացուցիչ, 1923 թվականից Անդրֆեդերացիայի լիազոր-ներկայացուցիչն էր: Հինգ տարի մնաց այդ պատասխանատու պոստում... բոլոր ուժերը ներդրել էր Անդրկովկասյան ռեսպուբլիկաների տնտեսության, կուլտուրայի զարգացման ու բարգավաճման գործին:

...Եվ ահա, երկու տարի է, ինչ աշխատում է իբրև ՀՍՍՌ Ժողկոմսովետի նախագահ: Մի քանի օր հետո զեկուցելու է Հայաստանի սովետականացման 10-րդ տարեդարձին նվիրված հանդիսավոր նիստում: Զեկուցման պլանը պատրաստ է արդեն, բայց խոհերը հանգիստ չեն տալիս նրան. ինչքա՜ն գործ կա կատարելու, ինչքա՜ն բարձունքներ, որ պետք է նվաճի աշխատասեր հայ ժողովուրդը՝ Սովետական Միության եղբայրական ընտանիքում: Հարկավոր է կառուցել նոր գործարաններ ու ջրանցքներ, դպրոցներ ու գրադարաններ է պետք բանալ, հարկավոր է բարելավել աշխատավորների բնակարանային պայմանները, արագացնել բանվորական ավանների բարեկարգման գործը... Շա՜տ բան կա անելու, իսկ աշխատելու եռանդը անսպա՜ռ է, ավյուն ու սրբազան է նվիրվածությունը նոր աշխարհի կառուցման պայքարին:

***

Յոթ տարի Սահակ Տեր-Գաբրիելյանն աշխատեց Հայաստանի Ժողկոմսովետի նախագահի պոստում, և այդ տարիներին լիովին դրսևորվեցին պետական խոշոր գործչի, հմուտ տնտեսավարի ու տաղանդավոր կազմակերպչի նրա փայլուն ընդունակությունները:

1931 թվականին Սովետական պատվիրակության կազմում Ս. Տեր-Գաբրիելյանը եղավ Փարիզում. նրա հետ ունեցած հանդիպումների տպավորության տակ Հանրի Բարբյուսը գրել է, որ Սահակ Տեր-Գաբրիելյանը արտակարգ կազմակերպչական ձիրքով և անսպառ եռանդով օժտված մարդ է, նրա անունը հռչակված է բազմազգ Սովետական երկրի եղբայրական ընտանիքում: 1934 թվականին ֆրանսիական գրող Ժան Ռիշար Բլոկն այցելեց Սովետական Հայաստան: Գրողների հետ ունեցած հանդիպման ժամանակ, խոսելով այն բացառիկ տպավորության մասին, որ իր վրա թողել էին սոցիալիստական երկրի մարդիկ, նա ասաց. «Երբ մեր սերունդները խոսեն վերածնության մասին, ապա դա կվերաբերի ոչ թե XVII դարին, այլ XX դարին. նոր վերածնության հերոսը կլինի Լենինը... Սովետական դարաշրջանի նոր մարդը հենց միանգամից, իր ստեղծման պահից, կապիտալիստական հասարակարգի մարդուց առաջ անցավ: Երբ ես վերադառնամ Ֆրանսիա, կասեմ, որ այդ նոր մարդն արդեն գոյություն ունի, նոր մարդու տիպը, որին ես տեսա Սովետական Հայաստանում, ընկեր Սահակ Տեր-Գաբրիելյանն է»:

Համեստության, ազնվության ու խոհեմության, անխոնջ աշխատասիրության և ժողովրդին անձնվեր ծառայելու տիպար էր նա, կոմունիզմի եռանդուն կառուցողի տիպար: Այդպես էլ ապրում է նա ժողովրդի հիշողության մեջ:

Հ. ՖԵԼԵՔՅԱՆ

# ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՅԻՆ ՉԵՄ ԴԱՎԱՃԱՆԻ

Ուսումնասեր ու աշխատասեր էր Սարուխանյան ընտանիքը, նախառևոլյուցիոն հայ բացառիկ գավառական ընտանիքներից մեկը, որ գրագետ էր և տվել էր երեք ուսուցիչ: Հովհաննեսն էլ, ավարտելով ծննդավայրի՝ Նոր Բայազեդի պետական քաղաքային և ապա Երևանի ուսուցչական սեմինարիան, դարձավ ուսուցիչ: Սակայն հետաքրքրասեր, պրպտող մտքի տեր երիտասարդը ամենից ավելի ինքն էր սովորում, ջանում խորանալ կյանքի երևույթների մեջ, պատասխան գտնել իրեն տանջող հարցերին: Իսկ այդ հարցերը շատ էին, բազմազան:



Հաճախ էր պատահում, երբ Սարուխանյանների հարկի տակ վեճ էր բացվում այս կամ այն հարցի շուրջը, այն բանի շուրջը, թե ինչու պետք է հողը ջրվի հապարավորների քրտինքով, իսկ բարիքը վայելեն մի քանիսը: Եվ հաճախ էր իր անհաշտ վարքագծով, իր համարձակ մտքերով տոն տալիս երիտասարդ Հովհաննեսը, պնդելով, որ անարդարը պետք է կործանվի, որ աշխարհը գլխիվայր չի կարող մնալ: Այդ մտքերը նրան էին հաղորդվել երևանյան սեմինարիայում, սոցիալ-դեմոկրատ ուսուցիչների միջոցով, որոնք կապված էին մարքսիստական գրականության հետ:

Նորին ձգտող, իրեն տանջող հարցերի պատասխաններին ծարավի երիտասարդը, դյուրավառ հեղուկի նման, բռնկվեց մարքսիստական գաղափարներով, որոնք տվեցին նրան պայքարի նպատակ, անխորտակ հույս իր ժողովրդի լուսաշող ապագայի նկատմամբ: Արժեր ապրել, ապրել հանուն այդ գաղափարների կենսագործման, հանուն փրկարար օրվա մոտեցման:

Ռուսական առաջին ռևոլյուցիայի տարիներն էին. ազատության երգը, ծայր առնելով Պետրոգրադում ու Մոսկվայում, ցոլքի պես տարածվել էր երկրե-երկիր, արձագանքվել կովկասյան լեռներում և թափանցել ցարական Ռուսաստանի ծայրագույն հարավը՝ Հայաստան, նրա ամենախուլ անկյունները: Եվ այդ երգը ամենուր, բոլոր կողմերում իր փոխանցողներն էր գտնում, իր տարածողները՝ ելիր ում կյանքն անիծել է: Իսկ կյանքից անիրավացիորեն ոտնակոխ արվածների, անիծվածների թիվը շատ էր Հայաստանում: Հարկավոր էր լույսի շողը հասցնել բոլորին, ճեղքել դարավոր խավարը:

...Հերթական պարապմունք է Նոր Բայազետի քաղաքային ուսումնարանում: Ուսուցիչը, սակայն, սովորական դասը թողած, աշակերտների հետ զրուցում է ինչ-որ այլ, առավել համակող թեմայի շուրջը: Վառվում են ուսուցչին հառած ջահել աչքերը, և ասես կլանելով նրա յուրաքանչյուր արտահայտությունը, մերթընդմերթ արձագանքում՝

— Ճի՜շտ է...

Ու սկսվում է աշակերտական դասադուլը՝ որպես «արյունոտ կիրակիի» հայկական ղողանջ: Եվ գնալով ավելի ու ավելի բազմաձև, առնական ու բարձրահունչ դարձավ այդ ղողանջը, որ սկիզբ էր առնում Հովհաննես Սարուխանյանի ստեղծած ու ղեկավարած ռևոլյուցիոն կազմակերպությունից: Շատ բան արվեց այն լռեցնելու, Սևանի ջրերում խեղդելու կամ գեղամա քարանձավներում մեկընդմիշտ փակելու համար: Սակայն ազատության ձայնը անհնար էր խլացնել, ինչպես որ անհնար է անտեսանելի դարձնել կայծակը:

Հալածանք, բանտ, արտաքսում, բայց որքան տեղափոխում՝ այնքան ռևոլյուցիոն գաղափարների տարածում, այնքան բոլշևիկյան գործունեության ծավալում: Արտաքսում Իգդիր՝ ՌՍԴԲԿ տեղական կազմակերպության աշխուժացում, Կաղզվան՝ այդ-

պիսի նոր կազմակերպության ծնունդ, Կարս՝ բոլշևիկյան կազմակերպության վերստեղծում և ակտիվացում: Եվ այդպես շարունակ: Հանգույց առ հանգույց կառուցվում էր ուսուցիչ Սարուխանյանի ու նրա ընկերների ռևոլյուցիոն կյանքը:

Մեծ Հոկտեմբերի հաղթանակ... Անդրկովկասյան երկրամասի բազմազգ ժողովուրդների բուռն ոգևորություն՝ մասսայական ժողովներ ու միտինգներ, սովետական Ռուսաստանին միանալու որոշումներ ու բանաձևեր: Կարսի բոլշևիկյան կազմակերպության ղեկավարությամբ ևս զինվորների ու աշխատավորների միտինգում թևածեց ոգեշունչ խոսքը՝ «Պահանջում ենք իշխանությունը հանձնել Սովետներին, և մենք կպաշտպանենք Սովետներն ու նրանց իշխանությունը»:

Թվում էր լուսաշող, այնքան սպասված առավոտը մոտ է, թվում էր թե տանջված մարդը վերջապես լիաթոք շնչելու է հայրենի երկնակամարի տակ: Բայց... նորածին Հոկտեմբերը թշնամիներ ուներ շատ, որոնք ձգտում էին կործանել նրան: Սկսվեց դաժան գոտեմարտը:

Օրը մթնեց հայոց լեռներում. ցրիվ եկող ամպերը կուտակվեցին նորից, իջավ թանձրամութ խավարը և տիրեց խեղդուկ մղձավանջը, որ երբևէ տեսել էր ժողովուրդը:

Հակաբոլշևիկյան տենդով բռնված դաշնակները գերադասեցին անուրդի հանել Հայաստանը Արևմտյան քաղաքական շուկայում: Հայաստանն արյունաքամ էր լինում, քայլ առ քայլ մոտենում վերջնական բնաջնջման անդունդին: Սով ու մահ, բանտ ու աքսոր, մաուզերիստների ալզակործան կամայականություն:

Հայ ժողովուրդը, սակայն, ի հեճուկ դաշնակների, ուներ անդավաճան որդիներ, որոնց վրա կարող էր հենվել, որոնք գործում էին նոր, սոցիալիստական կյանք հաստատելու համար:

...Հովհաննես Սարուխանյանը նորից իր ծննդավայրում է՝ Նոր Բայազետում, բոլշևիկյան ընդհատակում: Այս անգամ արդեն նա վարում է Նոր Բայազետի գավառի դպրոցական տեսչի օգնականի պաշտոնը:

Գիշեր է, խոր գիշեր... լեռներից եկող կովաշունչ քամին սրբելով կապուտաչ Սևանի արցունքները, շնկշնկում է ամենուր, անցնում տնից-տուն, և ասես վախեցած, շշնջում. «ս՜ս, սու՜ս, սո՜ւս...»: Գիշեր է, մթամած գիշեր. գուցե և քունը շատերի դռնից չի կարողանում մտնել, փախչելով օրվա դառնություններից մորմոքող սրտերից, բայց շրջակայքում լուռ է, խուլ:

Խրճիթում, սակայն, աղոտ պլպլում է նավթի ճրագը. մարդաշատ է այդ գիշեր Հովհաննեսի սենյակը. սեղանի շուրջն են ինքը՝ տանտերը և նրա ընդհատակյա ընկերները՝ Բատիկ և Արծվիկ Բատիկյանները, Սարիբեկ Բուդումյանը, Աստղիկ Ղարաբաղցյանը, Հայկ Շուքուրյանը, Խաչատուր Փոշոտյանը, Վանո, Աղաբեկ և Խանաղով Միրունյանները, Ստեփան Թորգոմյանը, Հայկ Մհերյանը, Փառնակ Միքայելյանը և ուրիշներ:

— Դե՜ ինչ. վարանելու հարկ չկա,— ասես լըրացնելով ինչ-որ միտք, շարունակում է Սարուխանյանը,— պետք է օգտվել պաշտոնից, չէ՞: Ճիշտ է, շատերդ ուսուցիչներ չեք, բայց պետք է ստանձնեք այդ դերը: Դե՜, նշանակողը ես եմ և ես էլ ի պաշտոնե հսկելու եմ ձեր ուսուցչական աշխատանքը: Այնպես որ, ամեն ինչ կարգին է: Իսկ կարևորը՝ կարևորը գործն է, որ մեզ է սպասում: Հարկավոր է տեղերում պաշտպանել պայքարի ոգին, բորբոքել, ուժեղացնել այն և ընդլայնել մեր բջիջները: Հարկավոր է...

Ու այդպես. ընդհատակյա որոշմամբ պարտիական ընկերներից շատերը հաջորդ օրն իսկ նշանակվեցին տարբեր գյուղերում «ուսուցչական» աշխատանքի՝ բոլշևիկյան նոր կազմակերպություններ ստեղծելու և եղածների գործունեությունը ակտիվացնելու նպատակով:

Սակայն և դաշնակցությունն էլ իր մեթոդներն ուներ, գործելու իր եղանակները: Տեսնելով, որ բոլշևիզմը ավելի ու ավելի շատ համակրողներ է ձեռք բերում, դաշնակցությունն սկսեց սոցիալիստական ավելի գունեղ փետրազարդման դիմել:

1919 թվականին, իրենց պարտիայի հոբելյանական ժողովին, դաշնակցականների հռետորը, ներկաներին խաբելու և նրանց հավանությանն արժանանալու բոլոր փորձերում ձախողվելուց հետո, հայտարարեց.

— Դաշնակցությունը մարքսիստական աշխատավորական պարտիա է...

— Ահա թե բանն ո՜ւր հասավ,— ներկաների ծիծաղի տակ սարկազմի ենթարկեց իր ելույթում այդ հայտարարությունը Հովհաննես Սարուխանյանը, կրակոտ ճառով մերկացնելով դաշնակցության հակաժողովրդական էությունը:

Օր-օրի, ժամ առ ժամ աճում էր Հայաստանի բոլշևիկյան կազմակերպությունը, աճում էր նաև նրա մարտական ջոկատներից մեկը՝ Նոր Բայազետի կազմակերպությունը, որին ղեկավարում էր Հովհաննես Սարուխանյանը: Մոտենում էին մեծ օրերը. Սովետական Ռուսաստանը հաղթանակ հաղթանակի հետևից էր տանում ինտերվենտների դեմ, եղբայրակից Ադրբեջանը ողողվել էր Սովետական իշխանության լույսով: Ուռճանում էր հայ ապստամբ ոգին ամեն հարկի տակ, ամեն կրծքի տակ: Եվ ոտքի է ելնում աշխատավորը, ազատության դրոշը ծածանելով Հայաստանով մեկ:

...Նորածիլ արտերի մեջ երգում է արտույտը, քնից նոր արթնացած մանկան պես շնչում է ուռենին, ականջը պահած առվակի կարկաչին: Գարուն է, մայիս: Ու գարնան հետ էլ կռիվ է, արյուն հայոց աշխարհում: Վերջնական է վճիռը՝ կա՛մ մահ, կա՛մ ազատություն: Մահվան ուժերը շատ են տակավին. հենվելով ամերիկա-անգլիական իրենց տերերի օգնության վրա, դաշնակցական պառլամենտը «կառավարության դեմ ապըստամբների նկատմամբ մահապատժի օրենք» է ընդունել, որոշելով՝ «բոլոր ուժերով և չթուլացող եռանդով թույլ չտալ բոլշևիկյան շարժումները»:

Ազատության ուժերը սակավ են, բայց և կորեղ են, աճող օրեցօր և որոշել են զինված ու կազմակերպված ապստամբության դիմել:

1920 թ. մայիսի 8... Արմենկոմի անդամ ու լիազոր Հովհաննես Սարուխանյանը Բայազետում զինված ապստամբությունը կազմակերպելու հոգսով է տարված:

Որոշված էր ապստամբությունն սկսել Ներքին Ղարանլուղից և տարածելով այն ամբողջ գավառում, շարժվել դեպի Ղազախ, միանալ այնտեղի ապստամբներից և Կարմիր Բանակից սպասվող օգնական ջոկատների ու մյուս շրջանների ուժերի հետ, շարժվել Երևանի վրա, տապալել դաշնակցական ռեժիմն ու Սովետական իշխանություն հաստատել Հայաստանում: Եվ չնայած նա ծպտըված մտավ իր ծննդավայրը, գիշերով, սակայն դավաճան մատը անմիջապես իր գործն արեց: Իրազեկման մեջ է ընկնում գավառի դաշնակցական կոմիսարը...

Երկու օր հետո խիզախ ռևոլյուցիոներն արդեն Ղարանլուղի (Մարտունի) և Նոր Բայազետի (Կամո) զինված ապստամբության եռուն նախապատրաստման ոլորտում էր: Նորից սպառնալիք՝ այս անգամ դաշնակ գեներալի կողմից և նորից ոգեշունչ պատասխան՝ «Կճոճվենք կախաղանի վրա, բայց ռևոլյուցիային չենք դավաճանի»: Անվեհեր բոլշևիկը շուտով իր արյամբ ստորագրեց սեփական խոսքերը...

Նոր Բայազետի գավառում բարձրացվեց զինված ապստամբության դրոշը՝ Հովհաննես Սարուխանյանի և նրա ընկերների ձեռքերով. ծածանվեց այդ դրոշը՝ անցնելով գյուղից գյուղ, ոտքի հանեց տանջահար աշխատավորներին:

Մայիսի 13—18...

Հինգ օր՝ յուրաքանչյուրը մի հերոսական պատմության էջ հայ ժողովրդի պանծալի վավակի մըտքի, կամքի ու արիության: Անցած ապստամբ զինվորների ու գյուղացիների գլուխը, Սարուխանյանը Ղարանլուղից շարժվում է դեպի Նոր Բայազետ՝ միանալու ընկերներին: Ճանապարհին, քայլ առ քայլ, ստվարանում են նրանց շարքերը, նորանոր մարդիկ են մտնում ապստամբության դրոշի տակ: Անգամ ավանդական դհոլ-զուռնան յուրատեսակ ռևոլյուցիոն շեփորի դեր է խաղում, շեփոր, որի ձայնն այնքա՜ն հասկանալի էր հայ շինականին. այո՛, գյուղացիները աղ ու հացով և դհոլ-զուռնայով են ընդունում ապստամբներին և միանում նրանց: Ամենուրեք միտինգներ, ամենուրեք՝ այլևս շղթայազերծ բողոքի ցույցեր ընդդեմ դաշնակցության: Վերջինս, իր գազազած հոգևարքի մեջ, միջոցի առաջ կանգ չի առնում՝ խեղդելու ծայր առած ապստամբությունը:

Ապստամբները, սակայն, կարճատև արյունալի մարտից հետո գրավում են նոր Բայազետը: Դա 1920 թվականի մայիսի 17-ի երեկոյան էր: Կըրծքեր, չարքաշ ու ծեծկռտված կրծքեր էին ուռչում ճոտալուտ ցնծությունից, սովալլուկ մայրերի կըմախքացած ձեռքեր էին երկինք պարզվում՝ դաժան օրերից փրկվելու լիահույս աղոթքով: Փառավոր էր հաղթանակը, բայց կարճատև՝ ընդամենը մեկ օր: Հաջորդ օրը դաշնակները նոր ուժով, զընդացիրներով ու թնդանոթներով, երեք կողմից շրջապատում են քաղաքը:

Սարուխանյանն ու նրա զինակիցները մարտնչելով թողնում են քաղաքը թշնամու գերազանց ուժի ճնշման տակ: Սկսվում է տեռորը ժողովրդի լավագույն զավակների՝ բոլշևիկների նկատմամբ: Մատնությամբ մարդասպանների ձեռքն է ընկնում նաև Փաշաքենդ գյուղում թաքնված Հովհաննես Սարուխանյանը: Եվ այն, ինչ արվեց նրա նկատմամբ, երբեք չի ջնջվի պատմության էջերից, մնալով որպես անսրբելի թուք դաշնակ ավազակների ճակատին: Արնախում, ազգային ու մարդկային արժանապատվությունը կորցրած մաուզերիստները, երկու ձիերի արանքում երկար պարանով կապկըպված Հովհաննես Սարուխանյանին գյուղից քարշ են տալիս Նոր Բայազետ և, որպես իրենց գարշելի էության մի նոր վկայություն, պտտեցնում քաղաքի փողոցներով: Բանտային երկօրյա խոշտանգում, որի նպատակն էր ստիպել Սարուխանյանին գրավոր հրաժարվել Կոմունիստական պարտիայից: Եվ ահա նրա «հրաժարականը», ասված գնդակահարությունից անմիջապես առաջ՝ «Կճոճվեմ կախաղանի վրա, բայց ռևոլյուցիային չեմ դավաճանի: Դուք անընդունակ եք հասկանալու, որ բնության մեջ գոյություն չունի նման ուժ, որը կարողանա մեզ՝ բոլշևիկներիս, այդպիսի բան գրել տալու: Ինձ գնդակահարելով, կամ կախաղան բարձրացնելով, դուք չեք գնդակահարի՝ ռևոլյուցիան: Հայաստանը սովետական կդառնա, և Հայաստանի աշխատավորները վրեժխնդիր կլինեն: Դուք իմ թափած յուրաքանչյուր կաթիլ արյան համար հազարապատիկ կհատուցեք: Կեցցե՜ Սովետական Հայաստանը, կեցցե՜ բոլշևիկների կուսակցությունը, կեցցե՜ Լենինը»:

...Իջել էր մռայլ գիշերը, փակել գարնանային օրը, որն այս անգամ էլ էր բացվելու հազար տեղից բզկտված հերոսների գետնատարած դիակների վրա...

Այո, այդ գարունն էլ եղավ արյան գարուն, սակայն դա վերջինն էր, հայ ժողովրդի տառապալից գարունների վերջինը:

Գ. ՍԻՄՈՆՅԱՆ

բերական ձեռնարկություններից ամենաերիտասարդը, արդեն ունի 12 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն ֆոնդ (47 բնակարան էլ այս տարի է շահագործման հանձնվելու), իր մանկամսուրը, մանկապարտեզը և Այղըլճի գեղատեսիլ ափին՝ հանգստյան տուն։ Այստեղ բանվորներն ու բանվորուհիները հերթականությամբ հանգստանում են պետության հաշվին։

Մեր լայնարձակ երկրում ինչպես ամենուրեք, այնպես էլ այս գործարանում կադրերը տարեցտարի կատարելագործվում են, հարստացնում իրենց գիտելիքները, համընթաց քայլում կոմունիզմի կառուցման թափի հետ։ Այդ տասնհինգ տարի առաջ էր, երբ Հոկտեմբեր գյուղից Ջեփյուռ Փիլոյանը ոտք դրեց պահածոների գործարանը։ Նա մտավ նոր շրջապատ, նրա առջև բացվեց նոր ասպարեզ։ Առաջին իսկ օրից Ջեփյուռը գիտակցեց, որ մեր օրերում տեղում կանգնել, այդ նշանակում է կյանքից հետ մնալ։ Նա սովորեց քաղաքական ուսուցման ցանցում, զբաղվեց ինքնակրթությամբ ու հարստացրեց իր գիտելիքները, քայլեց կյանքի առաջընթացին հավասար։ Ջեփյուռ Փիլոյանը այժմ հյութերի բաժնի հերթափոխ վարպետն է, Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատ։ Նա իր տարեկան պլանները միշտ կատարում է տասն ամսվա ընթացքում և որպես դեպուտատ ակտիվորեն մասնակցում հասարակական ու քաղաքական կյանքին։

Հոկտեմբերյանում կա նաև ծանր արդյունաբերության օջախ՝ հաստոցաշինական գործարան։ Նրա բազան հանդիսացել է Սարդարաբադի մեքենա-տրակտորային կայանի արհեստանոցը։ Խառատի երկու հասարակ դազգահի փոխարեն այժմ ընդարձակ ցեխերում դասավորված են բազմաթիվ առաջնակարգ հաստոցներ։

Գործարանի դիրեկտոր ընկ. Միքայել Աբգարյանին մենք հանդիպեցինք ցեխերից մեկում։ Հաստոցի մոտ կանգնած՝ նա զրուցում էր բանվորի հետ, զննում նրա պատրաստած մասի որակը։

— Ուշադիր եղեք, մեկ հարյուրերորդական միլիմետրի տարբերությունն էլ կարող է ձգձգել գործը,— նախազգուշացնում էր նա բանվորներին։

Այնուհետև նա անցավ մի ուրիշ ցեխ, դիտեց նոր կոնստրուկցիայով արտադրված հաստոցը, որի սերիական թողարկումն սկսել էին հենց վերջերս։

— Անցյալում մեր գործարանի թողարկած «2135» մոդելի ուղղաձիգ գայլիկոնիչ հաստոցը կշռում էր մեկ ու կես տոննա,— ասաց ընկ. Աբգարյանը,— իսկ առավելագույն արագությունը մեկ րոպեում 500 պտույտ էր։ Մեր օրերում, տեխնիկական առաջընթացի ներկա պայմաններում այդ տիպի հաստոցների թողարկումը շահավետ չէր ժողովրդական տնտեսությանը, դրա պահանջը ոչ ոք չէր զգում։

Մեր դարում գիտությունն ու տեխնիկան առաջ են ընթանում յոթմղոնանոց քայլերով։ Սովետական մարդիկ իրենց գյուտերով, նորարարություններով ու փորձով ակտիվորեն մասնակցում են ժողովրդական տնտեսության կատարյալ զինվածության գործին և ձգտում ավելի շատ ու բարձրորակ արտադրանք տալ։

Հոկտեմբերյանի հաստոցաշինարարներն էլ, ընթանալով այդ ուղիով, ձեռնամուխ են եղել նոր, ավելի կատարյալ հաստոցների թողարկմանը։ Այժմ գործարանը արտադրում է «252» մոդելի շառավղային փոխադրովի գայլիկոնիչ հաստոց, որն անցյալում թողարկած հաստոցի համեմատությամբ տեխնիկա-տնտեսական բարձր հատկություն ունի։ Նոր տիպի հաստոցի քաշը 850—900 կիլոգրամ է, արագությունը մեկ րոպեում՝ 1500 պտույտ։ Հաստոցի առավելություններից է նաև այն, որ կարելի է տեղակայել առանց բետոնի հիմքի. այդ հնարավորություն է տալիս հաստոցը փոխադրել ցանկացած պահին, ցանկացած տեղը, օգտագործել շառավիղով՝ ցանկացած նպատակի համար։ Այս հաստոցով կարելի է մեկ միլիմետրից մինչև 25 մմ. տրամագիծ ունեցող անցքեր բացել։ Գործարանը տարեկան թողարկելու է հարյուրավոր հաստոցներ։

Գործարանում այնքան էլ շատ մարդիկ չեն աշխատում, բայց նրանցից յուրաքանչյուրը չի հանգստանում ձեռք բերած հաջողություններով, այլ անվերջ ձգտում է կատարելագործել իր գիտելիքները, դառնալ իր գործի հմուտ վարպետը, խիզախել, որոնել նորը, ծավալել սոցիալիստական մրցությունը՝ Հայրենիքին ավելի շատ և առաջնակարգ հաստոցներ տալու համար։

Կոլեկտիվում միայն վերջին երկու տարում արվել են գյուտարարական և ռացիոնալիզատորական 35 առաջարկություններ, որոնցից 20-ը արմատավորվել են արտադրության մեջ՝ տարեկան 150 հազար ռուբլի տնտեսական արդյունավետությամբ։

Այստեղ շատ-շատերը գործի են անցել որպես շարքային բանվորներ, բայց շնորհիվ իրենց առաջադիմության ու ջանասիրության, այժմ արտադրության հրամանատարներ են։ Գործարանի դիրեկտոր Մ. Աբգարյանը աշխատում է նրա կառուցման առաջին օրերից։ Փականագործից նա դարձել է այդպիսի կարևոր արդյունաբերական ձեռնարկության ղեկավար։

Բայց դիրեկտորը եզակի չէ։

— Մառլեն Հովհաննիսյանը եղել է խառատ, բայց օր-օրի տիրապետելով արտադրության տեխնիկային՝ դարձել է տեխնոլոգ,— ասում է պարտկազմակերպության քարտուղար Ա. Կարապետյանը։

Միայն Հովհաննիսյանը չէ այդպես առաջ գնացել ու բարձրացել։ Ջ. Սահակյանը խառատից դարձել է հավաքման բաժնի հսկող վարպետ, Ս. Հովհաննիսյանը՝ ֆրեզերագործ վարպետ։ Այսպիսիք շատ են. նրանք պայքարում են յոթնամյակի առաջադրանքները ժամկետից շուտ կատարելու համար։

Արդյունաբերական ձեռնարկությունների կողքին քաղաքում ստեղծվել է բնակչության կուլտուրական և առողջապահական աճող կարիքներն սպասարկող ցանց։

— Այժմ քաղաքում գործում են յոթնամյա ու տասնամյա հինգ և մեկ երաժշտական դպրոցներ,— ասում է շրջանի ժողկրթության բաժնի վարիչ Հ. Աստարյանը,— մեկ տեխնիկում, գյուղատնտեսության մեքենայացման դպրոց և քույրերի մեկ դասընթաց։ Վերոհիշյալ դպրոցներում սովորում են ավելի քան երեք հազար աշակերտ։

Իհարկե, այդ թվերը համեմատել նախասովետական ժամանակաշրջանի հետ անհնար է, որովհետև քաղաքը կառուցվել է մեր օրերում։ Նախառևոլյուցիոն ժամանակաշրջանում Ղուրդուղուլիի (Հոկտեմբերյան) ամբողջ շրջանում գործել են ընդամենը 9 դպրոցներ, որոնցում սովորել են 300 աշակերտ, այսինքն՝ երեք անգամ քիչ, քան այժմ միայն Հոկտեմբերյան քաղաքի առաջին միջնակարգ դպրոցում։

Նախասովետական ժամանակաշրջանի հայ պարբերականների հրատարակիչները երազել են իրենց թերթերի կամ ամսագրերի տպաքանակը հասցնել հազար օրինակի, այն էլ «Համայն հայության» համար։ Նրանց այդ ցանկությունը մնացել է անկատար, որովհետև բնակչության աննշան մասն է գրագետ եղել։ Մեր օրերում հայ աշխատավորության կուլտուրական և հոգևոր պահանջմունքներն այնքան բարձր են, որ հազարավոր տպաքանակները ո՛չ թե երազ է, այլ իրականություն։ Հոկտեմբերյան քաղաքն ունի իր տպարանը՝ սարքավորված լինոտիպներով, ձեռքի գրաշարանոցով ու տարբեր տեսակի տպագրական մեքենաներով։ Այստեղ շաբաթական երկու անգամ տպագրվում է «Դեպի կոմունիզմ» շրջանային թերթը՝ չորս հազար տպաքանակով և կոլտնտեսային բազմատիրաժ թերթեր։

Հրապարակի վրա է քաղաքի մի խումբ բժիշկների գիտական աշխատությունների ժողովածուն։ Այդ չափազանց ուրախալի երևույթ է և արդյունք այն բանի, որ աշխատավորության առողջապահական գործի բարելավման հետ զուգընթաց աճել ու բարձրացել են այդ բնագավառում աշխատող կադրերը, որոնք հրատարակում են իրենց գիտական աշխատությունները։ Այդ ժողովածուում տպագրված վաստակավոր բժիշկ Ա. Կաղզվանցյանի աշխատությունում ընթերցում ենք, որ մինչև սովետական կարգերի հաստատումը ամբողջ շրջանում եղել է ընդամենը մեկ բժիշկ։

Իսկ այժմ, միայն Հոկտեմբերյան քաղաքում գործում են 34 բժիշկ՝ տարբեր մասնագիտությամբ և 105 միջին բուժաշխատող։ Քաղաքն ունի 75 մահճակալով հիվանդանոց, հագեցված ժամանակակից բժշկական սարքավորումներով և լաբորատորիայով. ծննդատուն՝ 40 մահճակալով. պոլիկլինիկա՝ բոլոր մասնագիտական կաբինետներով. մոր և մանկան կոնսուլտացիաներ։

Հիվանդանոցում, պոլիկլինիկայում, կոնսուլտացիայում բժշկական ձրի օգնություն են ստանում բոլորը՝ բանվորն ու կոլտնտեսականը, բանվորուհին ու կոլտնտեսուհին, ծառայողն ու աշակերտը։ Իսկ հիվանդանոցում բուժվողները սնվում են ձրի։

— Գոհ ենք մեր վիճակից, շնորհակալ բժիշկներ Ս. Միքայելյանից, Վ. Քոչարյանից, Ն. Սարգսյանից,— ասում են հիվանդները,— նրանք շատ հոգատար են բուժվողների նկատմամբ։

Մեծ հոգատարություն կա մոր և մանկան նկատմամբ։ Քաղաքում կազմակերպված մանկամսուրներն ու մանկապարտեզները հնարավորություն են տալիս աշխատավոր կանանց՝ հանգիստ աշխատելու գործարանում և հիմնարկում, մտահոգվելու պետական առաջադրանքների կատարմամբ։

Երբ ավարտվում է աշխատանքային օրը, և իջնում է երեկոն, հոկտեմբերյանցիները գիտեն ուր գնալ և ինչպես անցկացնել իրենց հանգիստը։

Գնում են քաղաքային գրադարան՝ նոր գիրք վերցնելու ընթերցանության համար։ Քաղաքային գրադարանը հարուստ է քաղաքական, գեղարվեստական ու տեխնիկական գրքերով, նրա գրապահարաններում, գրադարակներում կան տասնյակ հազարավոր գրքեր։ Գրադարանն ստանում է շուրջ 80 անուն լրագիր և ամսագիր։

Համաքաղաքային այս գրադարանից բացի կա նաև շրջանային գրադարան, իսկ յուրաքանչյուր արդյունաբերական ձեռնարկություն, ուսումնական հաստատություն ունի իր գրադարանը։

— Այս երեկո կուլտուրայի տան դահլիճում ժողովրդական թատրոնը բեմադրում է «Ռուզան»-ը, գնանք ներկայացումը դիտելու,— առաջարկում է ամուսինը կնոջը։

— Կինոթատրոնում ցուցադրվում է «Սերը պետք է թանկ գնահատել», գնանք այնտեղ այդ նկարը դիտելու,— իր ցանկությունն է հայտնում մեկն իր ընկերոջը։

— Լավ կլինի, որ մյուս կինոթատրոնը գնանք, այնտեղ ցուցադրում են «Լենինը Հոկտեմբերին» կինոֆիլմը, ես ցանկանում եմ կրկին դիտել ա-

# ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

## ՃԻՇՏ ՕԳՏԱԳՈՐԾԵԼ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅԱՆ ԱՐՏԱԴՐԱԿԱՆ ԲԱԶԱՆԵՐԸ

Լ. ԵՐԶՆԿՅԱՆ

Մեր ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանով նախատեսվում է կառուցել ավելի քան 150 արդյունաբերական նոր խոշոր ձեռնարկություններ, վերակառուցել և ընդլայնել հարյուրավոր գործարաններ ու ֆաբրիկաներ, շահագործման հանձնել մեծ քանակությամբ կուլտուր-կենցաղային օբյեկտներ և ավելի քան 2,3 միլիոն քառ. մետր բնակելի տարածություն։

Յոթնամյակում պետական կապիտալ ներդրումների ընդհանուր ծավալը կազմում է 12,5 միլիարդ ռուբլի, այսինքն՝ 2,3 անգամ ավելի, քան նախորդ յոթնամյակում։

Կապիտալ շինարարության ծավալի այդպիսի խիստ մեծացումը կպահանջի զգալիորեն ընդլայնել ինդուստրիալ կոնստրուկցիաների, դետալների, շինվածքների և էֆեկտիվ շինանյութերի արտադրության կարողությունը։ Այդ կապակցությամբ շատ կարևոր է նախագծել շինարարության արտադրական բազաների ճիշտ տեղաբաշխման և զարգացման ուղիները։

Արտադրական բազաների ստեղծման խոշոր թերությունն այն է, որ շատ հաճախ նրանց կազմն ու կարողությունը որոշվում են առանձին կառուցների կարիքների համեմատ։ Այդ պատճառով էլ խիստ անբավարար են հաշվի առնվում ձեռնարկությունների խոշորացման, մասնագիտացման ու կոոպերացման, ռացիոնալ տեղաբաշխման պահանջը, տեխնոլոգիական պրոցեսների ինտենսիվացման, ինչպես նաև առանձին շրջանների բնական ռեսուրսների կոմպլեքսային օգտագործման հնարավորությունները։

Անհրաժեշտ է ստեղծել շինարարական ինդուստրիայի ձեռնարկությունների և տնտեսությունների միասնական սխեմա։ Շինարարական ինդուստրիան պետք է նախատեսված լինի տվյալ տնտեսական շրջանի շինարարության կարիքների համար, հաշվի առնելով միջշրջանային կապերի տնտեսական նպատակահարմարությունը։ Այդ դեպքում, մեր կարծիքով, պետք է շինարարական նյութերի ու կոնստրուկցիաների արտադրության ֆունկցիան որոշակիորեն անջատել շինարարական-մոնտաժային աշխատանքներ կատարող կազմակերպություններից, ենթարկելով նրանց Հայկական ՍՍՌ Ժողտնտխորհի Շինանյութերի արդյունաբերության վարչությանը։ Դա հնարավորություն կտա լրիվին օգտագործելու ռեսպուբլիկայի ամբողջ բնական հումքային ռեսուրսները և անհրաժեշտ պայմաններ կստեղծի հումքի էժանացման, փոխադրական ծախսերի կրճատման, շինանյութերի ինքնարժեքի իջեցման, շինվածքների ստանդարտացման ու միասնականության համար։



Դրա հետ միասին, այժմ արդեն անհրաժեշտ է արմատապես փոխել շինարարության արտադրական բազայի պլանավորման ու նախագծման գոյություն ունեցող կարգը։ Հայկական տնտեսական շրջանում պետք է իրագործել շինարարական ձեռնարկությունների զարգացման կոմպլեքսային պլանավորում անկախ այն բանից, թե դրանք ենթակա են ռեսպուբլիկայի Ժողտնտխորհի շինարարական կազմակերպությունների՞ն, Հայկական ՍՍՌ Շինարարության մինիստրությա՞նը, Հայհիդրոէներգոշինի՞ն, թե՞ ռեսպուբլիկայի որևէ այլ շինարարական կազմակերպության։ Ռեսպուբլիկայի պետպլանը սխալ կերպով ցրում է շինարարական ինդուստրիայի և շինարարական նյութերի արդյունաբերության համար հատկացվող կապիտալ ներդրումները առանձին շինարարական կազմակերպությունների միջև։ Դրա հետևանքով էլ, ելնելով զուտ տեղական նեղ շահերից, միջոցներն օգտագործվում են ոչ ճիշտ ու աննպատակ։ Մի՞թե թույլատրելի է Երևանում կառուցել տարբեր գերատեսչությունների իրավասության ենթակա, բայց և միատեսակ ծրագիր ունեցող երկաթ-բետոնե կոնստրուկցիաների տասնյակ գործարաններ ու պոլիգոններ։

Միայն Զանգախի շրջանում գործող երկաթ-բետոնե կոնստրուկցիաների ձեռնարկությունները գտնվում են ռեսպուբլիկայի Շինարարության մինիստրության, Ժողտնտխորհի Շինարարության վարչության, Հայհիդրոէներգոշինի և Հայաստանի Ջրային տնտեսության մինիստրության սիստեմում։

Շինարարության արտադրական բազայի ռացիոնալ զարգացումն ու տեղաբաշխումը տալիս են տնտեսական հետևյալ շահավետ արդյունքները. արտադրական բազայի շինարարության վրա կատարվող կապիտալ ծախսումների պակասեցում ձեռնարկությունների խոշորացման և համակցման, նրանց կարողությունների լավագույն ընտրության և լրիվ օգտագործման հաշվին. ձեռնարկությունների արտադրանքի ինքնարժեքի իջեցում առաջավոր տեխնոլոգիայի կիրառման, մասնագիտացման, ամորտիզացիոն հաշվումների և վերադիր ծախսերի փոքր չափերի հաշվին. փոխադրումների և պահեստային օպերացիաների ինքնարժեքի իջեցում ձեռնարկությունների ավելի ճիշտ տեղաբաշխման, ավելի թեթև շինանյութերի և կոնստրուկցիաների արտադրության, տրանսպորտի և նյութա-տեխնիկական մատակարարման կենտրոնացման հաշվին։

Շինարարական ինդուստրիայի կարևոր խնդիրը դեռ շարունակում է մնալ հավաքովի երկաթ-բետոնի արտադրության լայն զարգացումը։ Մեր ռեսպուբլիկայում հավաքովի երկաթ-բետոնի արտադրության մակարդակը զգալի չափով բարձրացել է, բայց դրա հետ միասին համեմատաբար քիչ են թողարկված ամբանավորված լարված նրբապատ ամենաէֆեկտիվ կոնստրուկցիաներ, և հավաքովի երկաթ-բետոնի արժեքը դեռևս բարձր է։ Այլևս չի կարելի ձվաձև դատարկություններով բազմասնամեջ վրաքաշը համարել բարձրագույն տեխնիկական նվաճում։ Դա ռեսպուբլիկայում երկաթ-բետոնե կոնստրուկցիաների թողարկման գործում արդեն անցած էտապ է։

Մեր նախագծողներն ու կոնստրուկտորները, ինչպես նաև գիտության և արտադրության աշխատողները մեծ անելիքներ ունեն շինարարական ինդուստրիայի բնագավառում, նրանք դանդաղ են մշակում և արմատավորում պրոգրեսիվ կոնստրուկցիաները։

Երկաթ-բետոնե կոնստրուկցիաներ ստեղծելիս հատուկ նշանակություն է ստանում շենքերի քաշի իջեցման պրոբլեմը։ Ռացիոնալ կոնստրուկցիաների պայմաններում էֆեկտիվ թեթև շինանյութերի կիրառումը կարող է զգալիորեն նպաստել այդ գործին։

Այդ տեսակետից մեզ մոտ մեծ հնարավորություններ կան, քանի որ հրաբխային ծագում ունեցող ծակոտկեն լցանյութերը կենտրոնացված են հիմնականում Հայկ. ՍՍՌ տերիտորիայում։ Այստեղ գոյություն ունեն բնական ծակոտկեն լցանյութերի գրեթե բոլոր տարատեսակները, ինչպես, օրինակ՝ տուֆ, պեմզա, հրաբխային խարամ, որոնք թույլ են տալիս ստանալ 600-ից մինչև 1800 կգ/մ$^3$ ծավալային քաշով բետոն, համապատասխանորեն 10-ից մինչև 200 կգ/սմ$^2$ ամրությամբ։

Լցանյութերի պաշարները հսկայական են. դրանք հասնում են միլիարդավոր խոր. մետրերի, տեղավորված են փոքր բերուկների տակ և մեծ կապիտալ ներդրումներ չեն պահանջում։ Ներկայումս Հայաստանում հետախուզված են տուֆի 70 և պեմզայի ու հրաբխային խարամի 40 հանքավայր։

Շինարարական ինդուստրիայի և շինանյութերի ինչպիսի՞ խոշոր ձեռնարկություններ են ստեղծվելու առաջին հերթին և որտե՞ղ են կենտրոնացվելու կապիտալ ներդրումները։ Ամենից առաջ անհրաժեշտ է արագ տեմպերով կառուցել Կարմրաշենի թեթև շինանյութերի կոմբինատը։ Որմնաբլոկներում և պանելներում թեթև բետոնների կիրառումը զգալիորեն կթեթևացնի շենքերի կոնստրուկցիաների ընդհանուր քաշը, իսկ թեթև բետոնի ջերմատեխնիկական հատկությունները հնարավորություն կտան պակասեցնելու բնակելի, հասարակական և արդյունաբերական շենքերի արտաքին պատերի հաստությունը։ Ելնելով դրանից, խիստ նպատակահարմար է ֆրակցիոնված ծակոտկեն լցանյութի արտադրությունը առաջին հերթին կազմակերպել Կարմրաշենի շրջանում, որտեղ կա 450—460 կգ/մ$^3$ ծավալային քաշ ունեցող ամենաթեթև հրաբխային խրամ։ Անհրաժեշտ է նշել Կարմրաշենի նախագծվող կոմբինատի առաջընթաց խոշոր դերը շինարարական արդյունաբերության համար, քանի որ այն շատ արժեքավոր բնական լցանյութի օգտագործման առաջին մեծ ձեռնարկությունն է։

Ժողտնտխորհը քննարկել և հաստատել է Կարմրաշենի թեթև շինանյութերի կոմբինատի նախագիծը, որ կազմել է Արմգիպրոցվետմետ նախագծային ինստիտուտը։ Նախագծի համաձայն կոմբինատում նախատեսվում է արդյունահանվող հումքից ստանալ բետոնների ֆրակցիոնացված թեթև լցանյութեր և երեք ֆրակցիայի ավազ ու խիճ, ընդամենը մեկ միլիոն խոր. մետր քանակությամբ։ Այդ լցանյութերի մի մասը օգտագործվելու է տեղում թեթև բետոնների խոշոր որմնաբլոկների արտադրության համար, օրական 120 հազար խոր. մետր ծավալով։ Լցանյութերի մնացած մասը կարտադրվի արտահանման համար։

Կոմբինատում, բացի նշված հիմնական շինանյութերից, որպես ապրանքային արտադրանք, կթողարկվի զուգընթացաբար արդյունահանվող տուֆը՝ կանոնավոր բնական քարերի ձևով (նախնական տվյալներով տարեկան ելունքը կկազմի մոտ 40 հազար խոր. մետր)։ Այդ կօգտագործվի նույն կոմբինատի շինարարության, բանվորական ավանի և Մասսարա կայարանի մոտակա շրջանների բնակարանային շինարարության կարիքների համար։

Նախագծվող կոմբինատը խիստ շահութաբեր ձեռնարկություն է։ Նրա



արդյունաբերական շինարարության արժեքը կազմում է 52 միլիոն ռուբլի. կատարված կապիտալ ծախսումները կծածկվեն երեք տարվա ընթացքում։

Ուշադրության արժանի է գործող հանքավայրերի բազայի վրա տնաշինարարական խոշոր գործարանի կառուցման առաջարկությունը, որը մտցրել է Հայկ. ՍՍՌ Գիտությունների ակադեմիայի էկոնոմիկայի ինստիտուտը։ Այդ առաջարկությունը ներկայումս քննարկվում է և պետք է ենթադրել, որ դրական լուծում կստանա։

Երկրորդ ձեռնարկությունը, որը նույնպես պետք է արագ տեմպերով կառուցվի, դա Արթիկի տուֆաբետոնե բլոկների գործարանն է։ Ներկայումս Արթիկում իրագործվում է 250 հազար խոր. մետր կարողությամբ տուֆաբետոնե որմնաբլոկների և 250 հազար խոր. մետր կարողությամբ տուֆե ապրանքային խճի գործարանի շինարարությունը, որ նախագծել է Գիդրոստրոյմատերիալի Համամիութենական նախագծային ինստիտուտը։ Կառուցվող ձեռնարկության տեխնոլոգիական սխեման թույլ է տալիս ցանկացած ժամանակ անցնելու պանելների կամ ավելի կատարելագործված կոնստրուկցիաների մյուս տեսակների պատրաստման։

Հայաստանի տուֆաբետոնե բլոկների արտադրության կազմակերպումն արժեքավոր է նրանով, որ հնարավորություն է տալիս օգտագործելու տուֆի մի քանի տարվա ընթացքում կուտակված և մշակման ժամանակ նորից առաջացող մնացուկների հսկայական քանակությունը։

Կանոնավոր ձևով թողարկվող բլոկները դուրս կմղեն այժմ դարավող կոպիտ, կոտրտված քարե շարվածքը։ Բացի նրանից, որ կոպիտ կոտրտված քարե միդխայի շարվածքի որակը խիստ ցածր է, այդ եղանակի դեպքում շինարարական հրապարակներում քարի մշակման ժամանակ դրա 25 տոկոսը կորչում է մնացուկների ձևով։

Անցումը պատերի միդխային շարվածքից կանոնավոր ձևի բլոկների շարվածքին՝ երկաթ-բետոնե կոնստրուկցիաների կիրառումով, հնարավորություն է տալիս արմատավորել շինարարության ինդուստրիալ մեթոդները, որոնք նպաստում են կառույցի վրա կատարվող աշխատանքային ծախսումներն իջեցնելուն և կառուցվածքների շահագործման հանձնելն արագացնելուն։

Հաշվումները ցույց են տալիս, որ խոշոր բլոկներից 4-հարկանի բնակելի տուն կառուցելիս աշխատանքային ծախսումները կազմում են 830 մարդ-օր, իսկ միդխ կոպիտ կոտրտված տուֆե քարերից՝ ֆասադը լավ հղկված Արթիկի տուֆով երեսպատելու դեպքում պահանջվում է 4300 մարդ-օր, այսինքն՝ 5 անգամ ավելի։ Մեկ խոր. մետր տուֆաբետոնե բլոկների ծավալային քաշը կազմում է 1,4 տոննա, այսինքն՝ մի քիչ ավելի ծանր է Կարմրաշենի հանքավայրերից ստացվող բլոկներից։

Կառուցվող տուֆաբլոկների գործարանը խիստ շահութաբեր ձեռնարկություն է, նրա արդյունաբերական շինարարության արժեքը որոշվել է 40 միլիոն ռուբլի գումարով. կապիտալ ծախսումները կծածկվեն 2 տարուց մի քիչ ավելի ժամանակում։

Երրորդ կարևոր ձեռնարկությունը, որի շինարարությունը պետք է անհապաղ սկսվի, դա Լուսավանի լիթոիդային պեմզայի արտադրության գործարանն է՝ մեկ միլիոն խոր. մետր կարողությամբ և այնտեղ, այդ նույն բազայի վրա կառուցվող տնաշինարարական գործարանը՝ 200 հազար քառ. մետր կարողությամբ։ Լիթոիդային պեմզայի միջոցով կարելի է ստանալ բարձր որա-

կի բետոն, որպիսին հնարավոր չէ ստանալ Կարմրաշենի խարամի օգտագործմամբ։ Լիթոիդային պեմզայի կուտակումները իրենց շահավետությամբ խիստ տարբերվում են լայնորեն օգտագործվող Անի-պեմզայից, որը, համեմատաբար, փոքր ծակոտկենության դեպքում զգալի չափով գերազանցում է նրան իր ամրությամբ։ Այդ հնարավորություն է տալիս ստանալ շատ ամուր երկաթ-բետոնե կոնստրուկցիաներ, որոնք միանգամայն պիտանի են ամենապատասխանատու կոնստրուկցիաներում օգտագործելու համար։

Լուսավանի լիթոիդային պեմզան լայնորեն կիրառվել է Գյումուշի հիդրոէլեկտրակայանի շինարարության ժամանակ, լայնորեն օգտագործվել է նաև հիդրոտեխնիկական կառուցվածքների համար։ Լիթոիդային պեմզայի կտորների ծավալային քաշը 1300—1400 կգ/մ³ է, այսինքն՝ զգալիորեն ծանր է սովորական պեմզայից և հրաբխային խարամից։ Որպես լցանյութ նրա ծավալային քաշը մոտ 100 կգ/մ³ է։ Միևնույն ծավալային քաշի դեպքում լիթոիդային պեմզան իր ամրությամբ գերազանցում է Հայաստանում լայնորեն կիրառվող տուֆերից ու կրաքարերից։ Լիթոիդային պեմզան հիանալի շինանյութ է և անթույլատրելի է այլևս ձգձգել շինարարության մեջ նրա լայն օգտագործման հարցը։

Ստեղծվող նոր ձեռնարկությունների հետ միասին անհրաժեշտ է կատարելագործել նաև գործող ձեռնարկությունները։ Ժողտնտխորհը կազմել է Անի-պեմզայի ձեռնարկությունների վերակառուցման նախագիծը, որով ծրագրվում է նրա կարողությունը ընդլայնել և հասցնել մոտ մեկ միլիոն խոր. մետրի, կատարելագործել պեմզանյութերի ստացման տեխնոլոգիան և մեքենայացնել աշխատատար պրոցեսները։ Անի-պեմզայի ձեռնարկությունների արտադրանքի նկատմամբ արժանի պահանջարկ գոյություն չուներ, որովհետև այն չէր ֆրակցիոնվում։ Այժմ պեմզանյութերը մտնում են ջարդման-տեսակավորման գործարան, որտեղ տեսակավորվում են (ֆրակցիոնվում ըստ ամրության) և ուղարկվում սպառողներին։

Ապրանքային արտադրանքի իրացումից վերակառուցված ձեռնարկությունը կստանա 4,6 անգամ ավելի շահույթ, քան այժմ։ Այդ բացատրվում է արտադրանքի ինքնարժեքի իջեցմամբ և միայն ֆրակցիոնված պեմզանյութեր թողարկելով։ Բաց հանքերի մշակման ժամանակ ստացվում է դեղնագույն Անի-տուֆ հիանալի քարը, որը շինարարության մեջ կօգտագործվի որպես երեսապատման նյութ։ Ձեռնարկության կապիտալ ներդրումները կծածկվեն 6 տարվա ընթացքում։

Շինարարության ինդուստրացման գործում վճռական նշանակություն ունի հավաքովի և հատկապես նախալարված երկաթ-բետոնի կիրառության հետագա ընդլայնումը։ Անհրաժեշտ է ավելի արագ ավելացնել հավաքովի երկաթ-բետոնի արտադրության կարողությունը։ Սովետական Միությունում հավաքովի երկաթ-բետոնի արտադրության արագ զարգացումը, զանազան երկաթ-բետոնե շինվածքների լայն նոմենկլատուրայի յուրացումը խիստ փոփոխություններ մտցրին շինարարության պրակտիկայում և էկոնոմիկայում։ Ներկայումս շինարարական հրապարակները դառնում են ավելի ու ավելի մոնտաժային, որտեղ շենքն ու կառուցվածքները հավաքվում են գործարանային արտադրության պատրաստի շինարարական էլեմենտներից։ Հավաքովի երկաթ-բետոնի արդյունաբերության ստեղծումը հանդիսացավ շինարարության ինդուստրացման կայուն բազան։



Մեր ռեսպուբլիկայում երկաթ-բետոն արտադրող ձեռնարկությունների շինարարությամբ բոլորովին չարդարացված կերպով զբաղվում են առանձին շինարարական գերատեսչություններ։ Այդ ձեռնարկությունները փոքր են և, հետևաբար, քիչ շահութաբեր։ Դրանք թողարկում են հսկայական նոմենկլատուրայի շինվածքներ, սկսած հիմնաբլոկներից մինչև շենքերի ճարտարապետական ձևավորման դետալները։ Առանձին շինարարական կազմակերպությունների սպասարկող յուրաքանչյուր գործարանում թողարկված բազմաթիվ շինվածքները առաջացնում են սարքավորումը սիստեմատիկաբար կարգի բերելու անհրաժեշտություն։ Այդ ամենը հանգեցնում է ձեռնարկությունների կարողությունների թերօգտագործման և շինվածքների բարձր ինքնարժեքի, քանի որ դրանք շահագործվում են հիմնականում հետամնաց տեխնիկայով և ձեռքի աշխատանքի գերակշռությամբ։ Նրանք թողարկում են անբավարար որակի երկաթ-բետոնե շինվածքներ, խախտվում են շինվածքների սահմանված չափերը, վատ են վերամշակվում մակերեսները։ Այդ պատճառում է անարտադրողական ծախսումներ թե՛ հավաքովի երկաթ-բետոնի գործարաններում և թե անմիջապես կառույցներում։

Սովետական Միության խոշոր քաղաքներում՝ Մոսկվայում, Լենինգրադում, Կիևում և այլուր վաղուց է, ինչ հրաժարվել են առանձին գերատեսչությունների գծով գաճաճ ձեռնարկությունների ստեղծման արատավոր պրակտիկայից և անցել են մասնագիտացված ու կոոպերացված երկաթ-բետոնե խոշոր գործարանների կառուցման, դրանք ենթարկելով միայն մեկ գերատեսչության։ Դա հնարավորություն տվեց արտադրությունը վարել նոր, առաջավոր տեխնիկայով, օգտագործել հոսքային տեխնոլոգիա, ժամանակակից նոր մեքենաներ ու մեխանիզմներ։

Մոսկվայի երկաթ-բետոնե ձեռնարկությունների խոշորացման ու մասնագիտացման շնորհիվ «Մոսգլավժելեզբետոն»-ի տվյալների համաձայն, դեռ 1958 թվականին, երբ արտադրության ծավալն աճել էր ավելի քան 3 անգամ, բանվորների թիվն ավելացել էր միայն 28 տոկոսով, իսկ մեկ բանվորին ընկնող արտադրանքը մեծացել էր 2,5 անգամ։ 1000 ռ. հիմնական ֆոնդերին ընկնող արտադրանքն ավելացել էր 1,5 անգամ. այդ նույն ժամանակաշրջանում 23 տոկոսով իջել էր արտադրանքի ինքնարժեքը։

Անհրաժեշտ է, որպեսզի մեր ռեսպուբլիկան ևս ընդօրինակի այդ դրական փորձը։ Հայկ. ՍՍՌ Ժողտնտխորհի Շինարարական նյութերի արդյունաբերության վարչության սիստեմում պետք է ստեղծել հավաքովի երկաթ-բետոնի խոշոր, լավ մեքենայացված ու մասնագիտացված գործարաններ, յուրաքանչյուրը 50—100 հազար խոր. մետր և ավելի կարողությամբ։

Այդ ձեռնարկությունները պետք է կառուցվեն ռեսպուբլիկայի մի քանի շրջաններում, փոխադրումների համար մեծ հեռավորություններից խուսափելով։ Առաջին հերթին՝ դրանք պետք է կազմակերպվեն, բացի Երևանից, Լենինականում (Արթիկի, Աղինի, Ամասիայի, Ախուրյանի և մյուս մոտակա շրջանները սպասարկելու համար), Կիրովականում (Դիլիջանի, Սպիտակի, Ստեփանավանի, Կալինինոյի և մյուս մոտակա շրջանները սպասարկելու համար), Վեդու շրջանում Արարատի ցեմենտ-շիֆերի բազայի վրա (նաև Արտաշատի շրջանը սպասարկելու համար) և Ալավերդում (Նոյեմբերյանի շրջանը սպասարկելու համար)։

Պեմզայի, հրաբխային խարամի ու երկաթ-բետոնի բազայի վրա շինա-

նյութերի թողարկման նոր ձեռնարկությունների ստեղծումը բոլորովին էլ չի նշանակում, թե պետք է ավելի քիչ հետաքրքրվենք բնական քարերի թողարկումով։ Հայաստանի բնական քարանյութերի, մասնավորապես տուֆի, շինարարական-դեկորատիվ հատկությունները հանրահայտ են և հազարամյակների ընթացքում հաստատվում են պատմական հուշարձանների ու կառուցվածքների անվնասությամբ։ Տուֆն օժտված է բավականին բարձր ամրությամբ, ցրտակայունությամբ, լավ ֆրեզվում, գայլիկոնվում, հղկվում է, և հարակցվում շաղախների հետ, որի շնորհիվ էլ ոռմնակապեր չի պահանջում։ 1200—1400 ջերմաստիճանում տուֆի որոշ տարատեսակներ կրակայուն են և այդ պատճառով կարող են փոխարինել հրահեստ նյութերին։

Հետևաբար, բացահայտ սխալ կլիներ հրաժարվել տուֆի բաց հանքերի հետագա զարգացումից, նման բնական հարստության անսպառ պաշարների պայմաններում. պետք է ընդլայնել և կատարելագործել քարամշակման ձեռնարկությունները։ Հարկավոր է միայն հրաժարվել կոպիտ կոտրված տուֆի արդյունահանումից և անցնել մեքենայական մշակման կանոնավոր ձևի քարերի թողարկման։ Համապատասխան ֆինանսական միջոցներով և սարքավորմամբ ապահովելու դեպքում կանոնավոր ձևի տուֆի արտադրությունը կարելի է հասցնել տարեկան մոտ 2 միլիոն խոր. մետրի, այսինքն՝ մոտ մեկ միլիարդ պայմանական աղյուսի։

Անհրաժեշտ է նաև լայնորեն կազմակերպել տուֆե սալերի արտադրությունը պատերի երեսվածքի համար։ Դրանք կարող են լիովին փոխարինել լայնորեն կիրառվող կերամիկական սալերին։ Հայաստանից նույնիսկ Մոսկվա արտահանելու դեպքում տուֆե սալերը ավելի էժան են նստում կերամիկական սալերից, չխոսելով այն մասին, որ տուֆե սալերով կատարված երեսպատումը ավելի երկարադիմացկուն է։ 2—3 տարվա ընթացքում կարելի է կազմակերպել շենքերի մեկ միլիոն քառ. մետր պատի երեսվածքի համար տուֆե սալերի արտադրությունը։ Ոռմնանյութերի նկատմամբ Սովետական Միության պահանջը անչափ մեծ է. այն բավարարելու համար անհրաժեշտ է օգտագործել ինչպես արհեստական, այնպես էլ բնական, տեղական արտադրության կամ ներմուծվող շինանյութեր։ Այդպիսի մատակարարման պայմաններում Հայաստանի տուֆը, պեմզան, հրաբխային խարամը, գրանիտն ու մարմարը կարող են արտահանվել ո՛չ միայն սահմանակից ռեսպուբլիկաներն ու երկրամասերը, այլև ընդհանրապես ՍՍՌՄ հարավային շրջանները, մոտակա Միջին Ասիական երկրները։

Անհրաժեշտ է անհապաղ լուծել Հայաստանի բնական ոռմնանյութերն օգտագործող ձեռնարկությունների նպատակահարմար տեղաբաշխման հարցը, քանի որ այստեղ է թաքնված պետական միջոցների հսկայական տնտեսման աղբյուրը։

---

# ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԿՅԱՆՔ

## ԱՖՐԻԿԱՅԻ ՆՈՐ ԱՆԿԱԽ ՊԵՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

Ինչպես Կարլ Մարքսն է գրել «արտադրության կապիտալիստական դարաշրջանի արշալույսին» Աֆրիկան սևամորթներին որսալու արգելապաշտի վերածվեց («Կապիտալ», հ. 1, էջ 784)։ Ահա այդ ժամանակվանից գաղութարարները Աֆրիկա հսկայական աշխարհամասը, որն ունի 30 միլիոն քառակուսի կմ տարածություն և 230 միլիոն բնակչություն, դիտում էին որպես իրենց սեփականությունը, այնտեղ անում էին ամեն բան, ինչ ցանկանում էին։ Նրանք աֆրիկացիներին ոչնչացնում էին միայն այն բանի համար, որ նրանք ծնվել են Աֆրիկայում, որ նրանց մաշկը սև գույն ունի։

Գաղութակալությունը Աֆրիկային պատճառել է քաղաքակրթության պատմության մեջ ամենասարսափելի տրագեդիան։ Ոչ լրիվ տվյալներով, այստեղից ստրկության են տարվել ավելի քան 100 միլիոն աֆրիկացիներ։ Մի՞թե այդ չէ պատճառը, որ վերջին երեք հարյուր տարիների ընթացքում չի աճել Աֆրիկայի բնակչությունը։ Գաղութարարները իսկապես որ արյունոտ հետքեր են թողել աֆրիկյան հողի վրա։ Եվ մի՞թե գաղութակալության ուղղակի հետևանքը չէ, որ աֆրիկացիների կենսամակարդակն ամենացածրն է աշխարհում, որ յուրաքանչյուր աֆրիկացու անձնական եկամուտը մոտ հիսուն անգամ պակաս է եվրոպացու եկամտից։ Ավտոմատիկայի, ատոմային էներգիայի, հաշվիչ մեքենաների ու հրթիռաշինության դարում անգրագետ է սև Աֆրիկայի բնակչության 90 տոկոսը։ Աֆրիկայի բնական ու մարդկային հսկայական հարստությունները միշտ ծառայել են միայն արևմտյան գաղութարարների հարստացման նպատակին։ Չէ՞ որ Աֆրիկայում արդյունահանվում է կապիտալիստական աշխարհի ուրանի խոշոր մասը, ալմաստի 90 տոկոսը, կոբալտի՝ 81, ոսկու՝ 60, քրոմի՝ 40, մարգանեցի՝ 42, պղնձի՝ 27, ֆոսֆորի՝ 35 տոկոսը, արտադրվում է կակաոյի և շոկոլադի 70 տոկոսը։ Դրանով էլ շատ տեսակետից պայմանավորված է եվրոպական և ամերիկյան կապիտալիստների տենդագին ձգտումը՝ ամեն կերպ պահպանել գաղութային շահագործման այդ ամենամեծ օջախը։ Ասիայից դուրս վռնդված գաղութարարները կառչում են Աֆրիկայից, փորձում են շա-



բազմ են ապրել, ինչպես օրինակ՝ նավթային կարտելն է» (էջ 31—32)։

Հոդվածում մերկացվում են շուկաների բաժանման այդ յուրահատուկ ձևին անցնելու մի քանի հիմնական պատճառներ, որն արտահայտում է արտադրության ու կապիտալի համաշխարհային նոր կենտրոնացման ընդհանուր տենդենցը, տրեստների ու կոնցեռնների ավելի ու ավելի արագ զարգացման տենդենցը մինչև համաշխարհային մասշտաբները։ Նախ և առաջ ընդգծվում է, որ նոր տենդենցը առաջացրել են փոփոխված պատմական պայմանները՝ համաշխարհային սոցիալիստական սիստեմի առաջացումը, իմպերիալիզմի գաղութային սիստեմի փլուզումը և տեխնիկական պրոգրեսի սոցիալական հետևանքները։

Մոնոպոլիաներից մի քանիսը միասնաբար են հանդես գալիս թույլ զարգացած երկրներում և հյուսիս-ամերիկյան կոնտինենտի, Արկտիկայի, Խաղաղ օվկիանոսի դժվարամատչելի շրջաններում հումքի նոր աղբյուրների բաժանման համար, քանի որ այդ շրջանների յուրացումը պահանջում է այնպիսի վիթխարի ներդրումներ, որոնք առանձին մոնոպոլիստների ուժից վեր են։ Ուրիշները միասնական գործողությունների են ձգտում, որովհետև պատերազմի հետևանքով իրենց դիրքերը թուլացել են։ Երրորդները հույս ունեն օգուտ քաղել թուլացած մրցակիցների հետ գործարքի մեջ մտնելուց։ Բայց համատեղ ձեռնարկատիրական գործունեության մեջ մտնող բոլոր հին գաղութային գիշատիչների համար ընդհանուրն այն է, որ նրանք ձգտում են քողարկել իրենց զավթողական գործողությունների էությունը։

Երկրորդ համաշխարհային պատերազմի հետևանքով եվրոպական կապիտալիզմի խիստ թուլացումը ամերիկյան մոնոպոլիաներն օգտագործեցին Արևմտյան Եվրոպայի երկրների էկոնոմիկայի մեջ թափանցելու համար։ Բայց դա «Եվրոպայի գաղութացման» չհասցրեց։ Արևմտա-եվրոպական մոնոպոլիաներին հաջողվեց պահպանել իրենց վերահսկողությունը ազգային արտադրության մի գերակշռող մասի նկատմամբ։ Դեռ ավելին, քայքայված վիճակից դուրս գալով՝ Արևմտյան Եվրոպայի երկրները վերսկսեցին կապիտալի արտահանումը, որ լրջորեն կրճատվել էր հետպատերազմյան տարիներին։ Եվ այժմ արևմտաեվրոպական մոնոպոլիաները կապիտալ են արտահանում ոչ միայն դեպի թույլ զարգացած երկրները, այլև՝ դեպի Միացյալ Նահանգներ։

Կապիտալի տեղաշարժը ինդուստրապես զարգացած երկրների միջև առավել պարզ արտահայտություն է գտնում օտարերկրյա և տեղական մոնոպոլիաների համատեղ ձեռնարկությունների ստեղծմամբ։ Այդպիսի նորագույն մոնոպոլիստական գոյացումների օրինակ կարող է ծառայել նախատեսվող նավթամուղը Մարսելի, Բազելի և Ստրասբուրգի վրայով մինչև Կարլսրուե, որի շինարարությանը մասնակցում են զանազան երկրների 19 կոնցեռն։

Սակայն այդ բոլոր համաձայնությունները, տեխնիկական փորձի փոխանակման համաձայնությունները, բազմապիսի միջազգային միությունները (մանավանդ ատոմային մոնոպոլիաների միջազգային միությունները, որոնք տասնյակներով ճյուղեր են միահյուսում), որոնք կոչված են մոնոպոլիստներին համախմբելու միջազգային միությունների մեջ, որպեսզի «համագործակցության» ոգին գերակշռի մրցակցության պայքարին, նրանց շահերը ներդաշնակ միասնության չեն բերում, չեն ապահովում եվրոպական ու արևմտյան «ինտեգրացիան»։

Նորանոր միջազգային միավորումների ծագումն ու զարգացումը չեն վերացնում կապիտալիզմի հակասությունները։ Նրանք ավելի ու ավելի ուժեղ են բզկտում ծերունու՝ կապիտալի զառամյալ մարմինը՝ անխուսափելի կործանման մատնելով նրան։

* * *

Ժամանակակից կապիտալիզմի հակասությունների պրոբլեմը ժողովածուի մեջ մեծ տեղ է բռնում։ Եվ այդ բնական է։ Որովհետև կապիտալիզմի հակասությունների գիտական վերլուծությունը կարող է օգնել հասկանալու նրա էկոնոմիկայի ու քաղաքականության էությունը այսօր և վաղը։ Կապիտալիզմի մի շարք հակասությունների քննությանն է նվիրված Ի. Մ. Լեմինի «Կապիտալիստական երկրների միջև եղած արդի հակասությունների բնութագրման շուրջը» խորագրով հոդվածը։

Բնորոշելով հետազոտվող հարցերի նշանակությունը՝ հեղինակն իրավացիորեն ընդգծում է, որ ժամանակակից կապիտալիզմի իսկական գիտական ուսումնասիրությունը անհնար է՝ առանց մանրամասնորեն վերլուծելու կապիտալիստական երկրների միջև եղած տնտեսական ու քաղաքական փոխհարաբերությունները, որոնք անընդհատ փոփոխում են ուժերի տեղաբաշխումը կապիտալիստական լագերում։ Միջկապիտալիստական հակասությունների բնույթի ու նշանակության ուսումնասիրությունը ներկայումս առավել կարևոր է նրա համար, որ բուրժուական իդեոլոգների հետ միասին ռեվիզիոնիստներն ու ռեֆորմիստները ջանք չեն խնայում «ապացուցելու» միջկապիտալիստական անտագոնիզմի վերացումը կամ առնվազն էական թուլացումը։



Համաշխարհային սոցիալիստական սիստեմի առաջացման և նախկին գաղութային ռեժիմների մեջ տեղի ունեցած խոր տեղաշարժերի հետևանքով համաշխարհային կապիտալիստական սիստեմի սֆերայի էական կրճատման պայմաններում իմպերիալիստական երկրների ուժերի փոխհարաբերության փոփոխությունները անհապաղ ազդում են միջիմպերիալիստական հարաբերությունների վրա։ Քանի որ արդի կապիտալիզմի կյանքում Միացյալ Նահանգները հատուկ տեղ են գրավում, այդ երկրի էկոնոմիկայի դերի շարժումը համաշխարհային կապիտալիստական սիստեմի էկոնոմիկայի մեջ ակնառու պատկերացում է տալիս հետպատերազմյան ժամանակաշրջանում կապիտալիզմի զարգացման անհամաչափության մասին։

Կապիտալիստական աշխարհի արդյունաբերական արտադրանքի մեջ առանձին երկրների բաժնի դինամիկան պարզ արտահայտված է ստորև բերված աղյուսակի մեջ.

| Երկրները | 1937 | 1948 | 1953 | 1958 |
|---|---|---|---|---|
| Ա Մ Ն | 41,5 | 56,5 | 53,5 | 46 |
| Անգլիա | 12,5 | 11,5 | 8,5 | 8.5 |
| Գ Ֆ Ռ | 8,5 | 4 | 8 | 15,5 |
| Ֆրանսիա | 6 | 4 | 4 | 5 |
| Ճապոնիա | 5 | 1,5 | 2 | 3 |

Այս աղյուսակից նախ և առաջ երևում է, որ կապիտալիստական աշխարհում արդյունաբերական արտադրանքի մեջ ԱՄՆ-ի տեսակարար կշռի շարժումը եղել է զիգզագաձև՝ երկրորդ համաշխարհային պատերազմի նախօրյակին եղած 2/5-ից մինչև հետպատերազմյան առաջին տարիների 3/5 և 1958 թվականին՝ կեսից պակաս (46 տոկոս)։ Երկրորդ, հետպատերազմյան ժամանակաշրջանում աճման տեմպերը Արևմտյան Եվրոպայում ավելի բարձր են եղել, քան ԱՄՆ-ում, 1948-ից մինչև 1958 թվականները Արևմտյան Եվրոպայի արդյունաբերական արտադրանքը ավելացել է համարյա երկու անգամ, իսկ ԱՄՆ-ում՝ միայն 30 տոկոսով։ Երրորդ. կապիտալիստական երկրների արդյունաբերական արտադրանքի մեջ Անգլիայի տեսակարար կշիռը նախապատերազմյան մակարդակից ցածր է։ Չորրորդ. ԳՖՌ-ի տեսակարար կշիռը նախապատերազմյան մակարդակը գերազանցել է 1/5 անգամ, իսկ 1948 թվականի համեմատությամբ՝ 2,5 անգամ։ «ԳՖՌ արդեն իսկ 1955 թվականներին հասավ Անգլիային, իսկ հետո վճռականորեն ետ մղեց նրան, կապիտալիստական աշխարհի արդյունաբերական արտադրանքով գրավելով երկրորդ տեղը ԱՄՆ-ից հետո։ Անգլո-գերմանական տնտեսական մրցակցությունը նորից խիստ սուր և դրամատիկ ձևեր է ստացել։ Բնորոշ է, որ ԳՖՌ-ն Անգլիային հասել է նույնիսկ առևտրական նավաշինության բնագավառում, որտեղ Անգլիան ինչպես նախապատերազմյան ժամանակաշրջանում, այնպես էլ հետպատերազմյան տարիներին առաջին տեղն էր գրավում, իսկ այժմ մղված է երկրորդ, երրորդ տեղը, առաջին տեղը զիջելով Ճապոնիային» (էջ 357)։

Եթե պատերազմից առաջ ԱՄՆ-ի տեսակարար կշիռը համաշխարհային էքսպորտում կազմում էր 1/7, իսկ հետպատերազմյան առաջին տարիներին հասավ մինչև 1/3-ի, ապա 1958 թվականին այն իջավ 1/5-ի։ Նախ՝ այս։ Երկրորդ. Անգլիայի բաժինը թեպետև նախապատերազմյան մակարդակի համեմատությամբ փոքր-ինչ իջավ, բայց էլի հետպատերազմյան տարիներին շատ թե քիչ կայուն էր մնում։ Երրորդ. եթե համաշխարհային էքսպորտում ԳՖՌ-ի բաժինը համարյա հավասարվել է Անգլիայի բաժնին, ապա համաշխարհային արդյունաբերական էքսպորտում այն արդեն գերազանցել է Անգլիայի բաժնին։ ԳՖՌ որպես արդյունաբերական ապրանքներ արտահանող երկրորդ տեղն է դուրս եկել, ետ մղելով Անգլիային, ընդ որում Արևմտյան Գերմանիայի էքսպորտի աճը տեղի է ունեցել ի հաշիվ ո՛չ միայն Անգլիայի, այլև ԱՄՆ-ի բաժնի նվազման։

Է՛լ ավելի ապշեցուցիչ են միջազգային վալյուտային հարաբերությունների բնագավառում տեղի ունեցած տեղաշարժերը, որոնց մասին վկայում են հետպատերազմյան տարիներին կապիտալիստական երկրների ոսկու և վալյուտայի մասին եղած հետևյալ տվյալները.

(Տարվա վերջին միլիոն դոլարով)

| Երկրները | 1948 | 1953 | 1958 |
|---|---|---|---|
| Ա Մ Ն | 24.400 | 22.100 | 20.580 |
| Անգլիա | 2.000 | 2.550 | 3 070 |
| Գ Ֆ Ռ | 295 | 1.960 | 6 300 |
| Ֆրանսիա | — | 960 | 965 |
| Ճապոնիա | — | 895 | 1.000 |

Այստեղից, նախ, հետևում է, որ սիստեմատիկորեն կրճատվում են ԱՄՆ-ի ոսկու պաշարները (1949 թ. 72 տոկոսից ԱՄՆ-ի ոսկու պաշարը կապիտալիստական երկրներում 1958 թվականին նվազել է մինչև 52 տոկոս) և երկրորդ, որ ԱՄՆ-ի ոսկու պաշարի նվազելուն զուգորդում է ԳՖՌ-ի և Անգլիայի վալյուտային ռեզերվների աճը։ Միջազգային վալյուտային հարաբերություններում տիրող այս դրությունը իլյուզիա է դարձրել այն հույսերը, թե կարելի է դոլարի համար համաշխարհային վալյուտայի միակ մոնոպոլ դեր ապահովել։ ԱՄՆ-ը ի

վիճակի չեղան նույնիսկ կապիտալի միակ մոնոպոլ արտահանողի դերն ապահովել իրենց համար, մի բան, որ այնպես փութաջան կատարում էին նրանք հետպատերազմյան առաջին տարիներին։

Լուրջ տեղաշարժեր են տեղի ունենում նաև հումքի աղբյուրների վիճակի մեջ։

Այլ խոսքով ասած՝ հետպատերազմյան ժամանակաշրջանում ավելի են խորանում համաշխարհային կապիտալիստական տնտեսության զարգացման անհամաչափությունները թուլացած համաշխարհային կապիտալիստական սիստեմի շրջանակներում։ Այստեղից էլ բխում է հակասությունների և մրցակցական պայքարի սրումը։ Եվ այս վերջինը տեղի է ունենում հարաճուն ուժով կապիտալիստական տնտեսության բոլոր բնագավառներում, բոլոր կապիտալիստական երկրներում՝ հանուն բարձր շահույթի ապահովման, հանուն «արևի տակ արժանի տեղ» ապահովելու։

Հետպատերազմյան տարիներին կապիտալիստական լագերում հակասությունների սրումը կապված է ո՛չ միայն տնտեսական ճգնաժամի հետ, շուկաների ու էքսպանսիայի շրջանի համար մղվող պայքարի սրման հետ, այլև ընդհանուր քաղաքական ֆակտորների հետ. դրանք են, առաջին հերթին՝ սոցիալիզմի և կապիտալիզմի միջև ուժերի հարաբերության փոփոխությունը հօգուտ սոցիալիզմի, ամերիկյան «ատոմային դիպլոմատիայի» լիակատար տապալումը, Սովետական Միության փայլուն նվաճումները ատոմային էներգիայի, ռակետային տեխնիկայի և կոսմիկական հետազոտությունների բնագավառում (էջ 362)։ Սոցիալիզմի հաջողությունները և կապիտալիստական աշխարհը «միասնական ամերիկյան տրեստ» դարձնելու ուղղությամբ ԱՄՆ-ի պլանների փլուզումը կանխորոշեցին Միացյալ Նահանգների տեսակարար կշռի նվազումը կապիտալիզմի էկոնոմիկայի ու քաղաքականության մեջ, ուժեղացրին տարաձայնություններն ու կոնֆլիկտները կապիտալիստական լագերում։ Դեռ ավելին. հակասություններն ու մրցակցային պայքարը դարձան ավելի ընդհանուր, բազմակողմանի, բարդ ու խճճված։

Տնտեսական, սոցիալական ու քաղաքական այն պրոցեսները, որոնք համաշխարհային ասպարեզում ուժերի փոխհարաբերությունը փոխեցին հօգուտ սոցիալիզմի, հակասությունների սաստկացումը կապիտալիստական երկրների միջև — սրում են նաև տարաձայնությունները կապիտալիստական երկրների կառավարող շըրջանների միջև՝ արդիականության կենտրոնական հարցի՝ պատերազմի ու խաղաղության հարցի շուրջը։ Սասանելով պատերազմի հողը՝ ուժերի նոր հարաբերությունը ագրեսիվ շրջաններին հարկադրում է միջազգային իմպերիալիստական ռեակցիայի արսենալի շատ «արժեքների» «տանջալից վերագնահատում» կատարել։

Կյանքը պահանջում և ստանում է իրենը։ Ժողովուրդները հավատում են, որ կապիտալիզմն անխուսափելիորեն կտապալվի և կհաղթեն խաղաղությունն ու սոցիալիզմը, որովհետև, Մարքսի խոսքերով ասած՝ միայն սոցիալիզմի հաղթանակով «Մարդկային պրոգրեսը կդադարի նմանվել այն գարշելի կռապաշտական կուռքին, որը չէր ցանկանում նեկտար ըմպել այլ կերպ, քան միայն սպանվածների գանգով» (Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, Երկեր, հատ. 9, էջ 230)։

Բ. ՄԵՀՐԱԲՅԱՆ

## ՀԱՅ ԲՈՒՐԺՈՒԱԿԱՆ ՓԻԼԻՍՈՓԱՅՈՒԹՅՈՒՆԸ ՓԱԿՈՒՂՈՒՄ

ՍՄԿՊ XXI համագումարը, ներկա պայմաններում առանձնահատուկ նշանակություն տալով գաղափարական խնդիրներին, պահանջեց, որ տեսությամբ զբաղվող աշխատողները սկզբունքային և վճռական պայքար ծավալեն թշնամական գաղափարախոսության դեմ՝ մերկացնելով վերջինիս հակաժողովրդական-հակագիտական բնույթը։ Հենրի Գաբրիելյանի՝ վերջերս լույս տեսած աշխատությունը* հետապնդում է հենց այդ նպատակը։

Հեղինակը բավականաչափ հարուստ նյութի հիման վրա քննարկում է գաղութահայ բուրժուազիայի գաղափարախոսության փիլիսոփայական ակունքները, վերլուծում նրա տարբեր ներկայացուցիչների հակագիտական, հետադեմ հայացքները, բացահայտում նրանց սոցիալ-դասակարգային էությունը։ Ինքնին հասկանալի է, որ հեղինակը առանձնապես հանգամանորեն մերկացնում է տեսական հայացքները դաշնակցություն պարտիայի ներկայացուցիչների՝ որոնք մասնագիտացել են սովետական իրականության փաստերը անզուսպ մոլուցքով խեղաթյուրելու անազնիվ արվեստի մեջ։

Սփյուռքահայ բուրժուական փիլիսոփայական միտքն իր ընդհանուր գծերով կրկնում է ժամանակակից փիլիսոփայական ուղղությունները Ամերիկայում և Արևմտյան Եվրոպայում ու սընվում նրանց գաղափարական զինանոցից։ Գաղութահայ բուրժուական իմաստասերները երբեք աչքի չեն ընկել ո՛չ իրենց հայացքների ինքնուրույնությամբ կամ խորաթափանցությամբ, ո՛չ էլ, մասնավորապես, տրամաբանական հետևողականությամբ։ Սրանց շարքերում դուք կգըտնեք և՛ պրագմատիկներ ու պոզիտիվիստներ, և՛ նեոկանտականներ ու բացահայտ սուբյեկտիվ իդեալիստներ, և՛ նեոթոմիստներ ու բերգսոնականներ, մախիստներ, էքզիստենցիալիստներ և այլն։ Փիլիսոփայական ուղղությունների այս անօրինակ խայտաբղետությունը վկայում է միայն բուրժուական մտքի տկարությունն ու անզորությունը։

Հիմնվող ուղղությունները, ըստ էության էպիգոնություն անելով անցյալի ռեակցիոն իդեալիստական սիստեմներից, կարճատև ծաղկում են ունենում և շուտափույթ կերպով անցնում մոռացության գիրկը, արտացոլելով բուրժուազիայի՝ կործանվող դասակարգի դատապարտվածությունն ու անհեռանկար լինելը։ Այդ բոլոր ուղղությունների ջախջախիչ քննադատությունը ամփոփված է ժամանակակից հասարակության և բնագիտության զարգացման մեջ, որը նորից ու նորից հաստատում է մարքս-լենինյան ուսմունքի ճշմարտությունը, այդ ուսմունքը ավելի համակիր դարձնում մասսաների համար։

Ճիշտ է, որ բուրժուական փիլիսոփայությունը ապագա չունի և իր էությամբ ռեակցիոն և հակագիտական է։ Բայց դեռևս այն նշակալից դեր է խաղում մարդկանց մտքերի համար մղվող պայքարում՝ ձգտելով ավելի լայնորեն տարածել ազդեցությունը ինչպես ինտելիգենցիայի, այնպես էլ աշխատավորության շրջանում։ Գաղութահայ բուրժուական իմաստասերները տարբեր ճանապարհներով և եղանակներով նույնպես ձգտում են նվաճել սփյուռքահայության աշխատավոր մասսաներին, փորձելով մթագնել նրանց գիտակցությունը մարդասիրական և ազգասիրական կեղծ շաղակրատանքով։ Հ. Գաբրիելյանի աշխատությունը, ըստ ամենայնի, օգնում է ընթերցողին փիլիսոփայական գաղափարները հանգեցնել դասակարգային հակասությունների գըրսևորմանը գիտության ասպարեզում և ընկալել այն միանգամայն արդարացի միտքը, թե ժամանակակից հայ ռեակցիոն փիլիսոփայությունը «ամբողջությամբ ուղղված է հայ աշխատավոր մարդու, ինչպես դասակարգային, այնպես և ազգային ձգտումների դեմ» (էջ 209)։

* * *

Գրախոսվող աշխատությունը բաղկացած է առաջաբանից, 10 գլուխներից և եզրափակումից։ Աշխատության առաջին հինգ գլուխները հատկացված են փիլիսոփայական սուբստանցիայի։

* Հ. Գ. Գաբրիելյան.— «Ժամանակակից սփյուռքահայ բուրժուական ռեակցիոն փիլիսոփայությունը», Երևանի Պետհամալսարանի հրատարակություն, 1960 թ., 228 էջ։

ները տարփողում են անընդհատ, թե այժմ համահարթվել է հասարակության բևեռացումը, կապիտալիստական տնտեսությունը վեր է ածվում «կարգավորված», «պլանային» տնտեսության, մասնավոր սեփականությունը արմատական փոփոխությունների է ենթարկվել, պետությունը դարձել է ապադասակարգային և այլն, և այլն: Այս բոլոր սնահոդ տեսությունները քարոզում են դասակարգային համագործակցության գաղափարը կապիտալիստական հասարակարգում, համագործակցություն, որն իբր թե այդ հասարակության «ընդհանուր բարեկեցության» հիմքն է հանդիսանում:

Վերլուծելով Վ. Նավասարդյանի, Ռ. Դարբինյանի, Ժ. Պապիկյանի և այլոց հայացքները՝ Հ. Գաբրիելյանը ապացուցում է, որ հայ բուրժուական գաղափարախոսներն իրենց լուման են մտցնում աշխատավորական մասսաներին խաբելու և հիմարացնելու սառր գործում, պատկերացնելով կապիտալիզմը որպես զարգացող արդար հասարակարգ:

Ժամանակակից բուրժուական գաղափարախոսությունը չի կարող հաշվի չնստել այն փաստի հետ, որ մարքս-լենինյան տեսությունը վիթխարի ազդեցություն է գործում միլիոնավոր մարդկանց մտքերի վրա, և այդ տեսակետից նրա հետ չի կարող համեմատվել և ոչ մի բուրժուական ուսմունք: Բուրժուական տեսաբաններից ոմանք փորձում են վիճարկել մարքսիստական դրույթները հասարակական կյանքի երևույթների վերաբերյալ: Բայց դա կատարվում է յուրահատուկ ձևով՝ մարքսիստական դրույթների խեղաթյուրման, ձևափոխման կամ հարմարեցման միջոցով: Այդ տիպի մտածողների թվին է պատկանում Ա. Երեցյանը, որը ձգնում է Պլատոնի փիլիսոփայությունը ներկայացնել որպես դիալեկտիկական մատերիալիզմ, իսկ Լենինին՝ որպես «մի առաջնակարգ պլատոնիստ» (!):

Ըստ Ա. Երեցյանի Պլատոնը «մի տիեզերական ու անբաղդատելի հանճար է», որը մարդկանց «սովորեցրեց կոմունիստական ու մատերիալիստական դիալեկտիկա»: Հ. Գաբրիելյանը մանրամասն վերլուծելով Ա. Երեցյանի մտքի անհեթեթ կառուցվածքը՝ գալիս է այն միանգամայն ճիշտ եզրակացության, որ Ա. Երեցյանը, նույնացնելով մարքս-լենինյան դիալեկտիկան Պլատոնի իդեալիստական ուսմունքի հետ, «մի նպատակ է հետապնդում՝ փոխարինել ճանաչողության արդի գիտական մեթոդը մետաֆիզիկայով, իրական հակասությունների ռևոլյուցիոն լուծման եղանակը՝ դրանց բթացումով» (էջ 107):

Հ. Գաբրիելյանի այս աշխատությունը, լինելով հայ բուրժուական ժամանակակից գաղափարախոսության որոշ չափով սիստեմատիկ քննադատության մի փորձ, անշուշտ խրախուսելի գործ է: Հեղինակին ընդհանուր առմամբ հաջողվել է լուծել իրեն առաջադրված խնդիրը և համոզիչ կերպով ներկայացնել այժմյան հայ բուրժուական մտքի ներկայացուցիչների հակագիտական, ռեակցիոն դեմքը:

Գրքին կցված է ակադեմիկոս Արտ. Կարինյանի «Գաղութահայ բուրժուազիայի ռեակցիոն մոնետիկների իմաստասիրությունը» բովանդակալից առաջաբան-հոդվածը:

Ա. ԲՋՆՈՒՆԻ

ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ

ԱԴՈՆՑ Ա. Գ. (գլխավոր խմբագիր).
ԱՌԱՔԵԼՅԱՆ Ս. Վ., ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ԲԱՐՍԵՂՅԱՆ Խ. Հ., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ., ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ., ՀԱՅՐՅԱՆ Գ. Ա., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս.:

Սրբագրիչ՝ Ա. ԱՍՐՅԱՆ,
թողարկիչ՝ Բ. ՄԽԻԹԱՐՅԱՆ

Խմբագրության հասցեն՝ Երևան
ՀԿԿ Կենտկոմի շենք, հեռ. 2—56—92
Адрес редакции: Ереван, здание
ЦК КП Армении, тел. 2—56—92

ՎՖ 07276 Պատվեր 2134 Տիրաժ 9300

Տպ. 7 մամուլ, մամուլում 68,340 նիշ: Ստորագրված է տպագրության 13/VIII 1960 թ.:

Խմբագրությանը հանձնված ձեռագրերը հեղինակներին չեն վերադարձվում:

Հայկական ՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Հրատարակչությունների և պոլիգրաֆարդյունաբերության Գլխավոր վարչության № 6 տպարան, Երևան:

# ՆՈՐ ԳՐՔԵՐ

## «ԱԹԵԻՍՏԻ ՈՒՂԵՑՈՒՅՑԸ»

Քաղաքական գրականության պետական հրատարակչությունը ռուսաց լեզվով հրատարակել է «Աթեիստի ուղեցույցը» տեղեկագիրքը, որ ընթերցողը շատ տեղեկություններ կքաղի կրոնի ծագման, կրոնական տարբեր ուղղությունների, կրոնական տոների ու ծեսերի մասին, այն մասին, թե գիտությունն ինչպես է հերքում կրոնը:

Գրքի հատուկ բաժնում վերլուծված են Աստվածաշունչը, Թալմուդը և Ղորանը: «Գիտությունը և կրոնը» բաժնում տրված են աթեիզմի ծագման ու զարգացման համառոտ պատմությունը, գիտության պայքարը կրոնի դեմ և առաջինի հաղթանակը:

Տեղեկագիրքն ունի հավելվածներ, որտեղ զետեղված են նշանավոր մարդկանց մտքերը և ժողովրդական ասույթները կրոնի մասին: Հետաքրքրությամբ են կարդացվում տեղեկագրքի «Հրաշքներ առանց հրաշքի» ընդհանուր վերնագիրը կրող հումորիստական ակնարկները, որոնց մեջ սրամիտ կերպով ծաղրվում են կրոնական պոզմաներն ու ծեսերը:

## «ԱՐՀԵՍՏԱԿԱՆ ԱՐԲԱՆՅԱԿՆԵՐ»

Հայպետհրատը թարգմանաբար հրատարակել է Ա. Շտերնֆելդի «Արհեստական արբանյակներ» գիրքը, որը նվիրված է երկնային մեխանիկայի և հրթիռային տեխնիկայի հարցերին:

Գրքում գիտականորեն, բայց և մատչելի ձևով ցույց է տրված, թե մարդու ստեղծագործ միտքը ինչպես կարողացավ իրականացնել Կ. Ե. Ցիոլկովսկու նախագծերը արհեստական արբանյակներ ստեղծելու մասին:

Այնտեղ նկարագրված են սովետական և արտասահմանյան տիեզերագնացների ուսումնասիրություններն ու աշխատանքը, նրանց կատարած զանազան փորձերը: «Մարդը տիեզերական տարածության մեջ» գլխում քննարկված են՝ կյանքը անկշռելիության պայմաններում, մետեորային վտանգի, վնասակար ճառագայթումների, սննդառության ու շնչառության և այլ հարցեր:

## «ՍԿԶԲՆԱԿԱՆ ՊԱՐՏԻԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՔԱՐՏՈՒՂԱՐԻ ՏԵՂԵԿԱԳԻՐՔ»

Քաղաքական գրականության պետական հրատարակչության կողմից ռուսաց լեզվով լույս ընծայած այս սովարածավալ տեղեկագրքի բոլոր նյութերն ընտրված են այնպես, որ սկզբնական պարտիական կազմակերպությունների քարտուղարների համար հարմար լինի իրենց ամենօրյա պարտիական աշխատանքում օգտվել դրանցից:

Տեղեկագիրքը բաղկացած է չորս մասից: Առաջին մասում զետեղված են ՍՄԿՊ XX և XXI համագումարների բանաձևերն ու որոշումները, ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1959—1965 թթ. պլանի կարևորագույն թվերն ու փաստերը, երկրորդ մասում՝ ՍՄԿՊ Կանոնադրությունը և պարտիայի Կենտկոմի հրահանգները. երրորդում՝ պարտիական, սովետական, տնտեսական, պրոֆմիութենական և կոմերիտական աշխատանքին վերաբերող ամենակարևոր հրահանգները. չորրորդ մասում զետեղված են կոնսուլտացիաներ և պարտիական աշխատողների հարցերի պատասխաններ: Տեղեկագրքում հավելվածով տրված է ՍՍՌՄ Մինիստրների Սովետին կից Կենտրոնական վիճակագրական վարչության հաղորդագրությունը՝ 1959 թվականի մարդահամարի և ՍՍՌՄ-ի կազմում մտնող ազգերի կրթական մակարդակի մասին: